ISSN 0130—8114



ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 1981

## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 ՍԵՊՏԵՄԲԵՐ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
Выходит один раз в месяц на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




ԵՐԵՎԱՆ ★ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղբյուրոն քննարկեց 1981 թվականի հուլիս-օգոստոսին Ղրիմում Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՉՍՍՀ-ի պրեզիդենտ Գ. Հուսակի, ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարի, Ռումինական կոմկուսի գլխավոր քարտուղար, ՌՍՀ-ի պրեզիդենտ Ն. Չաուշեսկուի, ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԳԴՀ-ի Պետական խորհրդի նախագահ Է. Հոնեկերի, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԲԺՀ-ի Պետական խորհրդի նախագահ Տ. Ժիվկովի, ՄԺՀԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՄԺՀ-ի ժողովրդական մեծ Խուրալի նախագահության նախագահ Յու. Ցեդենբալի, ԼՄԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Կանյայի, ԼՄԲԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ԼԺՀ-ի Մինիստրների խորհրդի նախագահ և պաշտպանության մինիստր Վ. Յարուզելսկու հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ունեցած հանդիպումների արդյունքները: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն ամբողջովին ու լիովին հավանություն տվեց ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը, նրա վարած զրույցների արդյունքներին և երախտագիտություն է հայտնում եղբայրական կուսակցությունների և երկրների ղեկավարներին, որոնք մասնակցել են այդ զրույցներին:

Հանդիպումների ընթացքում քննարկվում էին սոցիալիստական պետությունների համագործակցության զարգացման կարևորագույն խնդիրները: Ձեռք են բերվել պայմանավորվածություններ, որոնց իրացումը, անշուշտ, կնպաստի համապատասխան երկրների հաջող զարգացմանը, սոցիալիստական ընկերակցության միասնության ու համախմբվածության ամրապնդմանը: Բոլոր բնագավառներում սոցիալիզմի երկրների կապերի բազմապատկումը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների տեղի ունեցած համագումարների առաջադրած ստեղծագործական խնդիրների լիակատար կենսագործման կարևոր նախադրյալներից մեկն է: Այն ծառայել է և ծառայում է ազգային էկոնոմիկաների վերելքին, համագործակցությանը մասնակցող եղբայրական պետություններից յուրաքանչյուրի ազգային բարեկեցության աճին:

Սոցիալիստական երկրների մեծամասնությունը ներկայումս անկյունաքար է համարում էկոնոմիկայի ինտենսիֆիկացման խնդիրը: Այն լուծվում է առաջին հերթին ազգային ջանքերի շնորհիվ: Ընդ որում, անշեղորեն աճում է ինչպես երկկողմ հիման վրա, այնպես էլ ՏՓԽ-ի շրջանակներում սոցիալիզմի երկրների համագործակցության նշանակությունը: Սոցիալիստական պետությունները ամբողջությամբ վերցված հնարավորություններ ունեն լուծելու այնպիսի արմատական ժողովրդատնտեսական պրոբլեմներ, ինչպիսիք են էներգետիկ հզորությունների մեծացումը, մեքենաշինության որակապես նոր մակարդակի նվաճումը, ժողովրդական սպառման ապրանքների և գյուղատնտեսական մթերքների նկատմամբ եղած պահանջարկի լրիվ բավարարումը: Հենց դրան են նպատակամղված սոցիալիստական տնտեսական ինտեգրացման զարգացումը, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման տեղի ունեցող խորացումը:

Ընթացիկ հնգամյակում առանձնապես լայն թափ է ստանում, և դա հաստատում են Ղրիմի 1981 թվականի հանդիպումների արդյունքները, սոցիալիզմի երկրների փոխգործողությունը տնտեսական այն ոլորտներում, որոնք

բազային են թե՛ գիտատեխնիկական առաջընթացի համար և թե ժողովրդի բարեկեցության աճի համար:

Նախատեսված է սոցիալիստական երկրների մասնակցություն գազատարների, ուրիշ կարևոր օբյեկտների շինարարությանը ՍՍՀՄ-ի տերիտորիայում, ինչպես նաև սովետական թեթև ու սննդի արդյունաբերության վերակառուցմանն ու արդիականացմանը:

Սոցիալիստական երկրները բարձր բնագծեր են նվաճել նոր հասարակության կառուցման ասպարեզում: Դրա հետ մեկտեղ, մի շարք պատճառներով, նրանց առաջընթացը զերծ չի եղել դժվարություններից: Ճգնաժամային սուր երևույթների է բախվել ժողովրդական Լեհաստանը:

Սոցիալիստական զարգացման պրակտիկան կրկին ու կրկին համոզում է, թե կոմունիստական կուսակցության համար ինչքան կարևոր է խստիվ ղեկավարվել կուսակցական կյանքի լենինյան նորմերով, հոգ տանել մասսաների հետ կապերն ամրապնդելու, սոցիալիստական դեմոկրատիան կատարելագործելու մասին, վարել ռեալիստական տնտեսական քաղաքականություն, թույլ չտալով անչափ մեծ պարտքեր կապիտալիստական պետություններին, աշխատավորներին դաստիարակել ինտերնացիոնալ ոգով, ցուցաբերել հեղափոխական զգոնություն, ժամանակին և վճռականորեն հակահարված հասցնել հակասոցիալիստական ուժերին:

Սոցիալիստական ընկերակցության երկրների փոխհարաբերություններին բնորոշ է հոգատարությունը ոչ միայն սեփական շահերի, այլև իրենց բարեկամների ու դաշնակիցների շահերի նկատմամբ: Նման ընկերական, եղբայրական մոտեցումը, որին խորթ է ազգային եսամոլությունը, սոցիալիստական երկրներին օգնում է վստահորեն հաղթահարել տնտեսական կամ այլ կարգի ամենաբարդ պրոբլեմները:

Ամրապնդելով համագործակցությունը միմյանց միջև, սոցիալիստական երկրները պատրաստ են զարգացնել փոխօգտակար կապերը աշխարհի մյուս երկրների հետ: Նման կապերը, եթե կառուցվում են իսկական իրավահավասարության ու կողմերի շահերը փոխադարձաբար հարգելու առողջ և կայուն հիմքի վրա, առանց խտրականության ու քաղաքական ճնշման, կարող են ռեալ օգուտ ապահովել բոլոր մասնակիցների համար: Դրանք նաև կենսականորեն անհրաժեշտ են մարդկության առջև ծառացած համապարփակ պրոբլեմների լուծման համար՝ սկսած շրջակա միջավայրի պահպանումից, համաշխարհային օվկիանոսի և տիեզերական տարածության հետազոտումից ու յուրացումից մինչև ընդհանուր խաղաղության ամրապնդումը:

Ղրիմում կայացած հանդիպումները դարձան խաղաղության և ժողովուրդների ազատ, անկախ զարգացման իրավունքների պաշտպանության գործին եղբայրական կուսակցությունների և երկրների աներեր հավատարմության ևս մի համոզիչ հաստատումը:

Իմպերիալիստական, նախ և առաջ ամերիկյան իմպերիալիստական շրջանները, սրելով միջազգային լարվածությունը, դրա մեջ տեսնում են սոցիալիստական երկրների վրա, զարգացող պետությունների վրա ճնշում գործադրելու միջոց: Ամերիկյան միջին հեռավորության հրթիռամիջուկային միջոցներ արտադրելու և դրանք Արևմտյան Եվրոպայում տեղաբաշխելու ՆԱՏՕ-ի հայտնի որոշումը, ԱՄՆ-ի և նրա գործակիցների ռազմական բյուջեների ուռճացումը, նեյտրոնային զենք արտադրելու Ռեյգանի վարչակարգի ընդունած որոշումը, ճգնաժամային իրադրությունները շիկացած վիճակում պահելու մշտական փորձերը, մյուս պետությունների ներքին գործերին միջամտելու ձգտումը, իմպերիալիստների այս բոլոր գործողությունները, որոնք սպառնալիք են ստեղծում սոցիալիստական և բազմաթիվ այլ պետությունների անվտանգության համար, հանգեցրին լարվածության թուլացման պրոցեսի արգելակմանը, վատթարացրին ամբողջ միջազգային քաղաքական կլիման:

Իմպերիալիզմի գծին, որի հետ ավելի ու ավելի սերտորեն է միակցվում Պեկինի քաղաքականությունը, սոցիալիստական ընկերակցության երկրները հակադրում են խաղաղությունն ամրապնդելու, սպառազինությունների մրցա-



վազքը սանձահարելու և դադարեցնելու, ճգնաժամային իրավիճակները բանակցությունների սեղանի շուրջը արդարացիորեն կարգավորելու հստակ, հետևողական կուրսը: Սոցիալիստական երկրներն այն կարծիքին են, որ սոցիալական տարբեր սիստեմների պատկանող պետությունների հարաբերությունները, առավել ևս ներկայիս միջուկային դարում, պետք է կառուցվեն խաղաղ գոյակցության սկզբունքներով, որը նախատեսում է ռազմական դիմակայության մակարդակի իջեցում, մշտական կոնստրուկտիվ երկխոսություն, փոխշահավետ խաղաղ համագործակցության զարգացում:

Հենց այդպիսի քաղաքականություն է նախատեսված ՍՄԿԿ XXVI համագումարի առաջ քաշած 80-ական թվականների խաղաղության ծրագրով, որին համամիտ են եղբայրական սոցիալիստական երկրները և որը համակողմանի ըմբռնում է գտնում քաղաքական տարբեր շրջաններում և միջազգային լայն հասարակայնության կողմից:

Միջազգային վիճելի պրոբլեմների խելամիտ և արդարացի լուծումը հնարավոր է, բայց դրա համար պիտանի չէ ուժի կամ ուժ գործադրելու սպառնալիքի լեզուն: Սոցիալիստական երկրները անհրաժեշտ ամեն ինչ ունեն, որպեսզի պաշտպանեն իրենց կենսական շահերը և այդ առումով անհրաժեշտ ամեն ինչ կձեռնարկեն: Դրա հետ մեկտեղ, նրանք այն կարծիքին են եղել և այն կարծիքին են, որ խաղաղության բարիքները հարկավոր են բոլոր երկրներին, բոլոր ժողովուրդներին: Խաղաղությունն ընդհանուր սեփականություն է, և նրա պաշտպանությունը, նրա ամրապնդումը պետք է լինի բոլոր պետությունների ընդհանուր գործը:

Սոցիալիստական երկրները, և այդ մասին ամենայն հստակությամբ վկայում են Ղրիմի 1981 թվականի հանդիպումների արդյունքները, պատրաստ են երկխոսության ու համագործակցության այն բոլոր ուժերի հետ, որոնք մտահոգված են միջազգային գործերի ներկայիս վիճակով և ձգտում են հասնել միջազգային անվտանգության ամրապնդմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն նշում է, որ Ղրիմի հանդիպումների շնորհիվ իրականացվեց սոցիալիստական ընկերակցության երկրների արտաքին քաղաքականության անհրաժեշտ կոորդինացումը: Դա, անտարակույս, կնպաստի սոցիալիստական պետությունների խաղաղասիրական նախաձեռնությունների առաջընթացին, որոնք վերաբերում են ժամանակակից համաշխարհային քաղաքականության առավել բարդ ու պայթյունալի բոլոր պրոբլեմներին:

Ամրապնդելով ինչպես երկկողմ, այնպես էլ բազմակողմ հարաբերությունները միմյանց հետ, կատարելագործելով Վարշավայի պայմանագրի կազմակերպության և Տնտեսական փոխօգնության խորհրդի գործունեությունը, սոցիալիստական երկրները հաստատակամորեն ընթանում են խաղաղության և ստեղծարար աշխատանքի երթուղիով:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն համապատասխան գերատեսչություններին և կազմակերպություններին պարտավորեցրել է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել Ղրիմի 1981 թվականի հանդիպումների շնորհիվ ձեռք բերված պայմանավորվածությունների իրացման նպատակով:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո կատարման վերահսկման և ստուգման հետագա կատարելագործման մասին»։**

*ՍՄԿԿ XXVI համագումարի կողմից ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում առաջադրված խնդիրների հաջող լուծումը, նշվում է որոշման մեջ, պահանջում է բարձրացնել կուսակցական ղեկավարման արդյունավետությունը, բարելավել կուսակցական կազմակերպությունների գործունեության ոճն ու մեթոդները։ Այդ կապակցությամբ մեծանում է կատարման վերահսկման և ստուգման՝ որպես կուսակցության կազմակերպչական աշխատանքի կարևորագույն բաղկացուցիչ մասի, հետագա կատարելագործման անհրաժեշտությունը։*

*Վերահսկողության ճիշտ դրվածքը Վ. Ի. Լենինը համարում էր սոցիալիստական վերափոխումների անհրաժեշտ պայմաններից մեկը։ Հատուկ նշանակություն ունի լենինյան ցուցումն այն մասին, որ անցկացվի որոշումների ռեալ կատարման ստուգում։ Դա է նախատեսված խնդիրների հաջող իրականացման գրավականը։*

*Կատարման վերահսկման և ստուգման հիմնական քաղաքական նպատակն է կենսագործել կուսակցության գլխավոր գիծը։*

*Աշխատանքում հաստատելով լենինյան ոճը, կուսակցությունը կատարման վերահսկումն ու ստուգումը դիտում է որպես կուսակցական, սովետական և տնտեսական կազմակերպությունների գործունեության բարելավման, ապարատի բոլոր օղակներում կազմակերպվածության և կարգապահության ամրապնդման, հանձնարարված գործի համար կադրերի պատասխանատվության բարձրացման փորձված միջոց։ «Բայց պատասխանատվությունը, դրա կուսակցական, լենինյան ըմբռնմամբ, միշտ զուգակցվում է վերահսկողության հետ»,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը։*

*Կատարման վերահսկման և ստուգման կազմակերպման գործում կուսակցությունը անշեղորեն ղեկավարվում է լենինյան այնպիսի կարևորագույն սկզբունքներով, ինչպիսիք են մասսայականությունը, գործունությունը, հրապարակայնությունը։ Վերահսկողության կազմակերպման մասին լենինյան գաղափարները և դրույթները իրենց ստեղծագործական զարգացումն են ստացել կուսակցության համագումարների, Կենտրոնական կոմիտեի պլենումների փաստաթղթերում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում։*

*Վերջին տարիներս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն մեծացրել է ուշադրությունը ընդունված որոշումների կատարման ստուգման նկատմամբ, սկսել է ավելի հաճախ լսել աշխատանքի որոշակի ուղղությունների համար անհատապես պատասխանատվություն կրող տարբեր աստիճանի ղեկավարներին։ Ընդունված են ՍՄԿԿ Կենտկոմի մի շարք որոշումներ ժողովրդական վերահսկողության մարմինների կուսակցական ղեկավարման ուժեղացման, մի շարք կենտրոնական մինիստրություններում և գերատեսչություններում, տեղական կուսակցական և սովետական մարմիններում կատարման ստուգման բարելավման վերաբերյալ։*

*ՍՍՀՄ նոր սահմանադրությանը համապատասխան, երկրում կարևոր միջոցառումներ են իրականացվում բոլոր վերահսկիչ մարմինների գործունեու-*



*թյունը կատարելագործելու ուղղությամբ։ Մեծ նշանակություն ունեցավ ՍՍՀՄ-ում ժողովրդական վերահսկողության մասին օրենքի ընդունումը։*

*Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն գտնում է, որ կատարման վերահսկման և ստուգման վիճակը լրիվ չափով չի համապատասխանում ՍՄԿԿ XXVI համագումարի ցուցումներին։ Կատարման ստուգումը դեռևս մնում է զգալի թվով կուսակցական կազմակերպությունների աշխատանքի նեղ տեղը։ Տնտեսական գործունեության մեջ շատ թերություններ պայմանավորված են վերահսկողության հստակ սիստեմի բացակայությամբ, ղեկավարման թղթային ոճով։ Մի շարք դեպքերում կատարման ստուգումը էպիզոդիկ բնույթ է կրում, հանգում է միայն բացթողումների և թերությունների գրանցմանը։ Ընդ որում, խորապես չեն բացահայտվում դրանց պատճառները, սկզբունքային գնահատական չի տրվում անկարգապահության և անկազմակերպվածության փաստերին։ Հաճախ ստուգումների ընթացքում գլխավոր ուշադրությունը կենտրոնացվում է ոչ թե ռեալ արդյունքների վրա, այլ անցկացված միջոցառումների արձանագրման վրա։ Սկզբնական կուսկազմակերպություններին, աշխատավորական կոլեկտիվներին միշտ չէ, որ գործնական օգնություն է ցույց տրվում նրանց առջև կանգնած խնդիրների լուծման գործում, կազմակերպչական աշխատանքը հաճախ փոխարինվում է խորհրդակցությունների անցկացումով, բազմաթիվ հաշվետվությունների և ինֆորմացիաների հավաքումով։ Կատարման և վերահսկողության կազմակերպման նկատմամբ ձևական մոտեցումը հանգեցնում է այն բանին, որ որոշ որոշումներ չեն կատարվում կամ կատարվում են ոչ ժամանակին ու ոչ լրիվ։*

*Առանձին կուսակցական կոմիտեներ ընդունում են և կուսկազմակերպություններին ուղարկում չարդարացված մեծ թվով որոշումներ, հաճախ՝ առանց հատուկ անհրաժեշտության։ Դրանով իսկ կաշկանդվում է կուսկազմակերպությունների նախաձեռնությունը, կուսակցական աշխատողների և ակտիվի ուշադրությունը շեղվում է տեղերում կենդանի կազմակերպչական աշխատանքից։*

*Արդյունաբերության որոշ ճյուղերի ետ մնալը, պլանային առաջադրանքների ձախողման, անտնտեսվարության, հավելագրումների և աչքակապության փաստերը զգալի չափով վերահսկողության անբավարար կազմակերպման, կադրերի կատարողական կարգապահության և պատասխանատվության ցածր մակարդակի հետևանք են։*

*Մինչև վերջ արմատախիլ չի արված մեծաթիվ կրկնվող որոշումների ընդունման սխալ պրակտիկան, որը հաճախ վկայում է որոշ կուսակցական կոմիտեների և կենտրոնական գերատեսչությունների ղեկավարների անբավարար պահանջկոտությունը նախորդ որոշումների ձախողման համար մեղավոր անձանց նկատմամբ։ «Ցավոք,— ՍՄԿԿ XXVI համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— մինչև օրս դեռ ոչ բոլորն են յուրացրել այն հասարակ ճշմարտությունը, որ ղեկավարման արվեստը այն չէ, որ ամեն առիթով դիրեկտիվ ցուցումներ հորինեն և շռայլեն։ Ընդունելով որոշում՝ հարկավոր է հասնել դրա անշեղ կատարմանը սահմանված ժամկետում։ Հենց դրան պետք է օգնի վերահսկողության ուժեղացումը»։*

*Տեղական կուսակցական կոմիտեները թույլ են կոորդինացնում և ուղղություն տալիս մասսայական վերահսկողության տարբեր տեսակների գործունեությանը։*

*ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին, սկզբնական կուսակցական կազմակերպություններին առաջարկել է, ելնելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներից, ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումներից, ապահովել կազմակերպչական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացումը, կատարման վերահսկման և ստուգման ուժեղացումը, դրանց ձևերի ու մեթոդների կատարելագործումը։ Խնդիրն այն է, որ ապահովվի վերահսկողության օրգանական միաձուլումը կուսակցության ու կառավարության դիրեկտիվների կատարման գործնական աշխատանքի հետ։*

*Կատարման վերահսկումն ու ստուգումը պետք է լինի կուսակցական և*

պետական ապարատի ամեն մի օղակի, յուրաքանչյուր կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարի, բոլոր կուսակցական կազմակերպությունների ամենօրյա կազմակերպչական աշխատանքի կարևորագույն բաղկացուցիչ մասը:

Կուսակցական կոմիտեները պետք է պլենումներում և բյուրոների նիստերում սիստեմատիկաբար քննության առնեն կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման, սեփական որոշումների իրականացման վիճակը:

Որոշման մեջ նշվում է, որ կուսակցական ապարատի կարևոր խնդիրներից մեկն է ընդունված որոշումների կատարման կազմակերպումը և դրանց կատարման ընթացքի վերահսկումը: Ուշադրություն է հրավիրված այն բանի վրա, որ անհրաժեշտ է կատարման գործում ստուգմանը օպերատիվ և պլանաչափ բնույթ տալ, հասնել կուսակցական ակտիվի, մասնագետների լայն մասնակցությանը այդ աշխատանքին:

ՍՄԿԿ Կենտկոմը ընդգծում է, որ կատարման վերահսկման և ստուգման գործուն բնույթը զգալի չափով կախված է կուսակցական փաստաթղթերի նախագծերի պատրաստման որակից, որոնք պետք է մշակվեն կյանքի երևույթների, կուսակցական աշխատանքի պրակտիկայի բազմակողմանի և խոր ուսումնասիրման հիման վրա, հաշվի առնեն կոմունիստների և անկուսակցականների կարծիքներն ու առաջարկությունները, աշխատավորների նամակները, հենվեն կուսկազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների առաջավոր ձեռնարկումների ու նախաձեռնության վրա: Որոշման յուրաքանչյուր նախագիծ պետք է բովանդակի հստակ դրույթներ և խնդիրներ, ցույց տա դրանց լուծման ուղիներն ու միջոցները, նշի կոնկրետ ժամկետները և նախատեսված միջոցառումների կատարման համար պատասխանատու անձանց:

ՍՄԿԿ Կենտկոմը հատուկ նշանակություն է տալիս կատարման վերահսկման և ստուգման մակարդակի բարձրացմանը սկզբնական կուսակցական կազմակերպություններում, որոնց առաջնակարգ դեր է պատկանում կոմունիստական շինարարության խնդիրների լուծման գործում: Սկզբնական կուսկազմակերպություններում պետք է ստեղծվի բարձր պահանջկոտության և գործարարության, քննադատության և ինքնաքննադատության, թերությունների նկատմամբ անհաշտվողականության մթնոլորտ: Կուսակցական ժողովներում, կուսկոմիտեների և կուսբյուրոների նիստերում կանոնավոր կերպով լսել կոմունիստների հաշվետվություններն ու հաղորդումները ընդունված որոշումների իրագործման ուղղությամբ իրենց կողմից կատարվող աշխատանքի մասին, ակտիվորեն պաշտպանել նրանց նախաձեռնությունը և ստեղծագործական ձեռնարկումները, գործնական առաջարկություններն ու դիտողությունները:

Հանձնարարված է քննության առնել կուսկազմակերպությունների կողմից ադմինիստրացիայի գործունեության վերահսկման իրավունքն իրականացնող հանձնաժողովների գործող կանոնադրության մեջ փոփոխություններ մտցնելու հարցը:

ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին առընթեր կուսակցական հանձնաժողովներին առաջարկված է միջոցառումներ իրականացնել վերահսկողության հետագա ուժեղացման, կուսակցական որոշումների անվերապահ կատարման համար կադրերի կարգապահության և պատասխանատվության բարձրացման նպատակով:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին և շրջկոմներին հանձնարարվում է ժողովրդական դեպուտատների սովետների աշխատանքը նպատակամղել ՍՍՀՄ սահմանադրությամբ նրանց վրա դրված վերահսկիչ ֆունկցիաների է՛լ ավելի ակտիվ իրականացմանը:

Ժողովրդական դեպուտատների սովետները կոչված են ապահովելու սովետական մարդկանց ամենօրյա կարիքների, պահանջմունքների հետ կապված՝ ընտրողների պատվիրանների իրականացումը, խստիվ վերահսկելու սովետական օրենքների, տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարումը:



Որոշումը մինիստրությունների, գերատեսչությունների, տնտեսական մարմինների ղեկավարներին պարտավորեցնում է, ելնելով ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներից, կառավարչական ապարատի բոլոր օղակներում բարձրացնել կադրերի պատասխանատվությունը կուսակցության և կառավարության դիրեկտիվների, հրամանների և կարգադրությունների կատարման համար, միջոցներ ձեռնարկել կատարողական կարգապահությունն ամրապնդելու, վերահսկողության հստակ սիստեմ ստեղծելու նպատակով:

ՍՄԿԿ Կենտկոմը հատկապես ընդգծում է, որ վերահսկողության վիճակի պատասխանատվությունը դրվում է անմիջականորեն մինիստրների, պետական և տնտեսական մարմինների ղեկավարների վրա: Առաջարկված է բարձրացնել կոլեգիաների դերը վերահսկողության ապահովման գործում, նրանց նիստերում սիստեմատիկաբար քննության առնել ընդունված որոշումների կատարման կազմակերպման հարցերը:

Մինիստրությունների, գերատեսչությունների, տնտեսական մարմինների կուսակցական կազմակերպություններին՝ ավելի լրիվ օգտագործել կուսակցության և կառավարության դիրեկտիվների կատարման ուղղությամբ ապարատի աշխատանքը վերահսկելու իրենց վերապահված իրավունքը, վճռականապես պայքարել բյուրոկրատիզմի, քաշքշուկի փաստերի դեմ, բարձրացնել աշխատողների անհատական պատասխանատվությունը պետական պլանների կատարման, ընդունված որոշումների իրագործման համար:

Կուսակցական կոմիտեներին՝ բստ ամենայնի զարգացնել և ակտիվացնել արհմիութենական կազմակերպությունների աշխատանքը կոլեկտիվ պայմանագրերի կատարման, աշխատանքային օրենսդրության կիրառման, սոցիալիստական մրցության զարգացման վերահսկողությունն ուժեղացնելու բնագավառում, աշխատավորների աշխատանքի, կյանքի և կենցաղի բոլոր հարցերի լուծման գործում:

ՍՍՀՄ ժողովրդական վերահսկողության կոմիտեին, ժողովրդական վերահսկողության տեղական մարմիններին հանձնարարված է արտադրական և հասարակական կյանքի բոլոր ոլորտներում վերահսկողության անմիջական իրականացման գործում ավելի լրիվ օգտագործել աշխատավորական լայն մասսաների ներգրավման հնարավորությունները:

Որոշման մեջ ընդգծվում է, որ կուսակցական կոմիտեները կոչված են հմտորեն ուղղություն տալ վերահսկող կազմակերպությունների գործունեությանը և միավորել նրանց ջանքերը, արմատախիլ անել այն պրակտիկան, երբ որոշ ձեռնարկություններ և հիմնարկներ ենթարկվում են բազմաթիվ ստուգումների և վերստուգումների: Առաջարկված է մշակել կոնկրետ միջոցառումներ ստուգումների անցկացման գործում զուգահեռականությունը և կրկնորդումը վերացնելու, ժողովրդական վերահսկողության մարմինների, ժողովրդական դեպուտատների սովետների մշտական հանձնաժողովների, «Կոմերիտական լուսարձակի» շտաբների, արհմիութենական կազմակերպությունների հանձնաժողովների աշխատանքում կապերն ամրապնդելու նպատակով:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն կուսակցական կոմիտեներին պարտավորեցրել է ուժեղացնել մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ուշադրությունը կատարման վերահսկման և ստուգման հարցերի նկատմամբ: Այդ աշխատանքի լայն հրապարակայնությունը դիտել որպես վերահսկողության արդյունավետության բարձրացման, արտադրության, հասարակության բոլոր գործերի կառավարման մեջ աշխատավորների ակտիվ ներգրավման անհրաժեշտ պայման: Կենտրոնական, հանրապետական և տեղական թերթերի ու հանդեսների, հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների խմբագրությունները կոչված են բազմակողմանիորեն լուսաբանել աշխատավորական կոլեկտիվների կողմից կուսակցության և կառավարության դիրեկտիվների, սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, մատչելի ձևով բացահայտել վերահսկողության առավել արդյունավետ ձևերն ու մեթոդները, որոնք կուսակցական կազմակերպությունների պրակտիկայում ծնունդ են առել ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների իրականացման ընթացքում:

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1981 թվականի հուլիսի 24-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց «Կերերի արտադրության հետագա ավելացման և որակի բարձրացման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների և այդ հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումների լույսի ներքո» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Գ. Ռ. Բարիկյանը,** «Հայգյուղտեխսպետկոմի» Հրազդանի շրջանային միավորման բանվոր ընկ. **Վ. Ի. Շուբինը,** ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Մ. Լ. Մկրտչյանը,** Ազիզբեկովի շրջանի Կեչուտի սովխոզի կթվորների բրիգադավար ընկ. **Վ. Ա. Համբարձումյանը,** Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության մինիստրի առաջին տեղակալ ընկ. **Գ. Դ. Սադոյանը,** անասնաբուծության և կերարտադրության գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտոր ընկ. **Վ. Բ. Ոսկանյանը,** ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Շ. Բ. Դավթյանը,** Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտեի նախագահ ընկ. **Ս. Ս. Հովհաննիսյանը,** ՀԿԿ Ղուկասյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Շ. Հ. Ալեքսանյանը,** «Հայգլխջրշինի» պետ ընկ. **Մ. Գ. Գևորգյանը,** Կրասնոսելսկի շրջանի Արծվաշենի գյուղի սովխոզի դիրեկտոր ընկ. **Ա. Ս. Դանիելյանը:**

Քննարկված հարցի առթիվ Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումը քննարկեց նաև «Սկզբնական կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարում կոմունիստների արած քննադատական դիտողությունների և առաջարկությունների կենսագործման ընթացքի մասին» հարցը:

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. **Հ. Մ. Ոսկանյանը:**

Զեկուցման շուրջ ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին ՀԿԿ Շահումյանի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. **Ռ. Ս. Վարդանյանը,** Կիրովականի լուսատեխնիկական գործարանի բանվորուհի ընկ. **Ի. Հ. Հակոբյանը,** ՀԿԿ Լենինականի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. **Ռ. Մ. Գալստյանը,** «Երարդշինի» տրեստի № 31 շինարարական վարչության կուսբյուրոյի քարտուղար, հարդարողների բրիգադավար ընկ. **Գ. Ս. Մարգարյանը:**



Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշում:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. Դեմիրճյանը:**

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի արդյունաբերության բաժնի վարիչ հաստատեց ընկ. **Վ. Հ. Մեհրաբյանին,** Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առևտրի և կենցաղային սպասարկման բաժնի վարիչ՝ ընկ. **Հ. Ս. Իկիլիկյանին,** Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլանային և ֆինանսական մարմինների բաժնի վարիչ՝ ընկ. **Յու. Ե. Խոջամիրյանին:**

«Սովետ Էրմենիստանի» թերթի խմբագիր հաստատվեց ընկ. **Ջ. Հ. Ալիևը:**

Դրանով Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էին ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի սեկտորի վարիչ ընկ. **Վ. Ե. Օդինցովը,** ՍՄԿԿ Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի սեկտորի վարիչ ընկ. **Ն. Մ. Տիշչենկոն:**

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

## ԿԵՐԻ ԲԱԶԱՅԻ ԱՄՐԱՊՆԴՈՒՄԸ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՊԱՅՄԱՆՆ Է

*Ընկերնե՛ր։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը ստեղծագործական հզոր լիցք հաղորդեց կոմունիստներին, բոլոր սովետական մարդկանց։ Նրա ոգեշնչող գաղափարները դառնում են նյութական ուժ, մեր առաջընթացի զորեղ արագացուցիչ։ Սովետական մարդիկ իրենց հարվածային աշխատանքով կյանքի են կոչում համագումարի պատմական որոշումները։ Նրանք միահամուռ հավանություն են տալիս ու ջերմորեն պաշտպանում կոմունիստական կուսակցության և սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականությունը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի գլխավորած քաղբյուրոյի բազմաբեղուն գործունեությունը մեր լենինյան կուսակցության գլխավոր գծի իրականացման ուղղությամբ։*

*80-ական թվականների համար ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած խաղաղության սովետական ծրագիրը խոր արձագանք գտավ մոլորակի բոլոր մայրցամաքների միլիոնավոր մարդկանց սրտերում։ Հանուն խաղաղության և պատերազմի կանխման մեր կուսակցության հետևողական պայքարն իր արտահայտությունն է գտնում արտաքին քաղաքական այն կոնկրետ գործողությունների և առաջարկությունների մեջ, որոնցով միջազգային ասպարեզում հանդես է գալիս սովետների երկիրը։ Դրա նոր վառ օրինակ են հանդիսանում ՍՍՀՄ Գերագույն սովետի նստաշրջանում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթը, աշխարհի պառլամենտներին ու ժողովուրդներին ուղղված՝ Սովետական Միության պետական իշխանության բարձրագույն մարմնի դիմումը, որոնք տոգորված են մարդկության անվտանգությունը պահպանելու և ապահովելու, միջուկային աղետը կանխելու ջերմ ձգտումով։ Խաղաղության ապահովումը եղել և մնում է սովետական պետության արտաքին քաղաքականության գերագույն նպատակը։ Եվ մեր լենինյան կուսակցությունը, սովետական պետությունը ամեն ինչ անում են խաղաղությունը պահպանելու, ժողովուրդներին նոր պատերազմի վտանգից զերծ պահելու, միջազգային անվտանգությունն ամրապնդելու համար։*

*Կուսակցության հոյակապ կանխագծումների իրականացումը սովետական բոլոր մարդկանց կենսական գործն է։ Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները, ինչպես ամբողջ սովետական ժողովուրդը լի են վճռականությամբ՝ է՛լ ավելի լավ աշխատելու ի բարօրություն մեր հայրենիքի, պատվով կատարելու ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման 11-րդ հնգամյակի առաջադրանքները։*

*Կուսակցության XXVI համագումարի առաջադրած տասնմեկերորդ հնգամյակի և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի ծրագրային կարևորագույն ու առաջնահերթ խնդիրներից մեկը պարենային ծրագիրն է։*

*Պարենային ծրագրի ապահովման հիմքը գյուղատնտեսության հետագա*

**) Տպագրվում է համառոտումներով։*



*վերելքն է, որի զարգացման գլխավոր ուղղությունները նախատեսված են ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի և կուսակցության XXVI համագումարի որոշումներում։*

*Կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական կենսագործման, ինչպես նաև Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1977 թվականի ապրիլյան, 1978 թվականի հուլիսյան և 1980 թվականի ապրիլյան պլենումների մշակած՝ գյուղատնտեսական արտադրության զարգացման կոմպլեքսային ծրագրի իրականացման շնորհիվ, կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական քաղաքական մեծ աշխատանքի, գյուղի աշխատավորների անդուլ ջանքերի շնորհիվ մեր հանրապետության գյուղատնտեսությունն զգալիորեն առաջ է շարժվել, վստահորեն դուրս եկել զարգացման ինտենսիվ ուղի։ Բարձրացել է արտադրության արդյունավետությունը, ամրապնդվել է կոլտնտեսությունների և սովխոզների էկոնոմիկան։ Հատկանշական է, որ հանրապետության գյուղատնտեսության առաջընթացը, ընդգրկելով ճյուղի բոլոր բնագավառները, ավելի ու ավելի կայուն բնույթ է ստանում։*

*Զգալիորեն աճել է գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը, անասնապահության մթերատվությունը, ավելացել գյուղատնտեսական մթերքների արտադրության ծավալը։*

*Հանրապետությունում հացահատիկի արտադրությունը 1971—1975 թվականների տարեկան միջին ցուցանիշների համեմատությամբ 1976—1980 թվականներին ավելացավ 11,2 տոկոսով, կարտոֆիլինը՝ 17,7, բանջարեղենինը՝ 34,8, շաքարի ճակնդեղինը՝ 31,9, խաղողինը՝ 30,8, պտուղներինը՝ 38,8, ծխախոտինը՝ 16,6 տոկոսով։ Անասնապահության համախառն արտադրանքի տարեկան միջին ծավալը անցած հնգամյակում 23,2 տոկոսով ավելի բարձր էր, քան նախորդ հնգամյակում։ Տասներորդ հնգամյակի տարիներին մեկ կովի կաթնատվությունը կոլտնտեսություններում և սովխոզներում ավելացավ 277 կիլոգրամով և կազմեց 1973 կիլոգրամ։ Պետությանը վաճառված խոշոր եղջերավոր անասունների միջին քաշն ավելացավ 51 կիլոգրամով և կազմեց 295 կիլոգրամ։ Մսի արտադրությունն այդ տարիներին ավելացավ 29 հազար տոննայով, կաթինը՝ 70,1 հազար տոննայով, ձվինը՝ 111,8 միլիոն հատով և բրդինը՝ 306 տոննայով։*

*Բարելավվեցին անասնապահության որակական ցուցանիշները։ 1980 թվականին հանրապետության տնտեսությունները պետությանը վաճառեցին ավելի քան 55 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասունների մատղաշ՝ 300 կիլոգրամ և ավելի միջին կենդանի քաշով՝ իններորդ հնգամյակում տարեկան միջին հաշվով վաճառված 3,7 հազար գլխի փոխարեն։ Առաջին տեսակի կաթի տեսակարար կշիռը գրեթե կրկնապատկվեց։*

*Այս թվերն արտացոլում են այն մեծ աշխատանքը, որ ակտիվորեն կատարել ու կատարում են հանրապետության կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինները գյուղատնտեսության ինտենսիվացման նպատակով։*

*Դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է ուղղակի ասել, որ ամբողջությամբ վերցրած՝ ճյուղի և հատկապես անասնապահության աճի տեմպերը մեզ դեռևս չեն բավարարում, քանի որ դրանք չեն համապատասխանում տնտեսությունների պոտենցիալ հնարավորություններին։*

*ՍՄԿԿ XXVI համագումարը անասնապահությունը հայտարարեց հարվածային ճակատ գյուղում։ Տասնմեկերորդ հնգամյակում հանրապետության անասնապահների առջև խնդիր է դրված՝ մսի արտադրությունը հասցնել 162 հազար տոննայի, կաթինը՝ 550 հազար տոննայի, ձվինը՝ 575 միլիոն հատի։ Հայաստանի կոմկուսի 1980 թ. ապրիլյան պլենումը, իսկ ապա նաև XXVII համագումարը խնդիր դրեցին՝ արագացնել անասնապահության փոխադրումը ինդուստրիալ ռելսերի վրա, բարձրացնել արտադրության ինտենսիվացման, ճյուղի մթերատվության և արդյունավետության մակարդակը, բարելավել արտադրանքի որակը։*

*Վերոհիշյալ բնագծերի նվաճումը, նախ և առաջ, պայմանավորված է*

անասուններին երաշխավորված կերպով անհրաժեշտ քանակությամբ լիարժեք կերով ապահովելով, կերարտադրությունը արտադրության ինքնուրույն, մասնագիտացված, բարձր արդյունավետ ճյուղ դարձնելով։ Հարկ է նշել, որ անցած հինգ տարում քիչ բան չի արվել կերարտադրության մակարդակը բարձրացնելու համար՝ կերի արտադրության և կուտակման առավել առաջավոր տեխնոլոգիաներ և արտադրության կազմակերպման ձևեր արմատավորելու միջոցով։ Կոլտնտեսություններում ու սովխոզներում աճում են սենաժի արտադրության ծավալները։ Զգալիորեն ավելացել է մամլած և ակտիվ օդափոխման մեթոդով պատրաստված խոտի կուտակումը, լայն տարածում է գտնում քիմիական կոնսերվանտների և սինթետիկ ազոտային նյութերի կիրառմամբ սիլոսի և սենաժի պատրաստումը։ Ներդրվում են կերային կուլտուրաների ավելի բարձր բերքատու սորտեր, կարգավորվում է կերերի վերամշակման գործը։ Ավելանում է համակցված կերերի և սպիտակուցավիտամինային խառնուրդների արտադրությունը պետական ձեռնարկություններում։

Տասներորդ հնգամյակի տարիներին կերի արտադրության տարեկան միջին ծավալը հասավ 618 հազար տոննա կերամիավորի։

Սակայն կերի բազայի զարգացման մակարդակը դեռևս չի բավարարում անասնապահության հարաճուն պահանջմունքները և դրանով իսկ արգելակում է այդ ճյուղի արտադրանքի արտադրության աճի տեմպերը։

Կերարտադրության վերլուծությունը ցույց է տալիս, որ հանրապետության տնտեսությունների 19,1 տոկոսը անասունների մեկ պայմանական գլխի դիմաց կուտակել էր ընդամենը 5 ցենտներ կերամիավոր, տնտեսությունների 68 տոկոսը՝ մինչև 10 ցենտներ։ Հանրապետության տնտեսությունների միայն 3,5 տոկոսն են անասունների մեկ պայմանական գլխի հաշվով կուտակել ավելի քան 20 ցենտներ կերամիավոր։ Անասունների մեկ պայմանական գլխի համար հազիվ 5 ցենտներ կերամիավոր ունեին Գուգարքի շրջանի տնտեսությունների 87 տոկոսը, Թալինի և Սպիտակի շրջանի տնտեսությունների 56 տոկոսը և Սիսիանի շրջանի տնտեսությունների 50 տոկոսը։

Հանրապետության անասնապահության՝ միջին հաշվով 724 հազար տոննա կերամիավոր տարեկան պահանջմունքի դիմաց, ինչպես ասվեց, մթերվել է միայն 618 հազար տոննա կամ պահանջմունքի 85,3 տոկոսը։ Ինչպես տեսնում եք, սեփական արտադրության կերի ամենամյա դեֆիցիտը կազմում է 15 տոկոս։ Միայն կերի բազայի առավել արագ զարգացման հասնելու, ֆերմաներին երաշխավորված կերպով պահանջված քանակության և տեսականու լիարժեք ու էժան կեր մատակարարելու դեպքում լրջորեն կարելի է խոսել անասնապահության մթերատվությունն արագորեն բարձրացնելու, մսի, կաթի և մյուս մթերքների արտադրության ծավալը և պետությանը դրանց վաճառքը մշտապես ավելացնելու, դրանց ինքնարժեքն իջեցնելու մասին։

Թբիլիսի քաղաքում կայացած հանդիսավոր նիստում ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Անասնապահության վերելքի գործում հիմնական խնդիրը կերի բազայի ամրապնդումն է։ Այդ տեսակետից ներկա հնգամյակը զգալի չափով պետք է դառնա կերի հնգամյակ»։

Հետևելով անասնապահության և կերարտադրության զարգացման հրատապ պրոբլեմների լուծման նկատմամբ սկզբունքորեն նոր մոտեցման մասին ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումներին, մենք պետք է հասնենք կերի արտադրության թե՛ քանակական, թե՛ որակական ցուցանիշների էական բարելավման, և այդ հիմքի վրա ապահովենք անասնապահության մթերատվության բարձրացումը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հանձնարարությամբ Հայկական ՍՍՀ պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, պտուղբանջարեղենի տնտեսության մինիստրությունը, մթերումների մինիստրությունը, գյուղտեխպետկոմը, անտառտնտպետկոմը, կուսակցության շրջանային կոմիտեների և շրջսովետների գործկոմների՝ հետ համատեղ, կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների, գիտահետազոտական ինստիտուտների, մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունների և կազմակերպությունների աշխատավորական կոլեկտիվների մասնակցությամբ մշակել են կերարտադրության զարգացման, կերի կայուն և լիարժեք բազայի ստեղծման կոմպլեքսային ծրագիր այն հաշ-



վով, որպեսզի ապահովեն տասնմեկերորդ հնգամյակում անասնապահական մթերքների արտադրության նախատեսվող ծավալների և դրանց մթերումների պլանները։

Ծրագիրն արժանացել է հանրապետության կոմկուսի Կենտկոմի և կառավարության հավանությանը և հանձնված է պլենումի քննարկմանը։ Նրանում նախատեսված են միջոցառումներ, որոնք կոչված են ապահովելու կերարտադրության կոմպլեքսային զարգացումն ու մասնագիտացումը, դրա վերածումը արտադրության արդիական մասնագիտացված ճյուղի, կերարտադրության և կերահայթայթման նյութատեխնիկական բազայի ամրապնդումը, կերերի կուտակման և պատրաստման առաջավոր տեխնոլոգիաների լայն կիրառումը և կազմակերպական-տեխնիկական այլ միջոցառումներ։

Նախատեսվում է, որպես առաջին էտապ, կոշտ և հյութալի կերերի արտադրությունն ավելացնել այնպիսի ծավալներով, որպեսզի հնգամյակի վերջում խոշոր եղջերավոր անասունների մեկ պայմանական գլխի համար տարեկան միջին հաշվով կուտակվի 18—19 ցենտներ կերամիավոր։ Մենք պարզորոշ պատկերացնում ենք, որ սակավահողության և ջրային սահմանափակ ռեսուրսների պայմաններում այդ խնդիրը շատ բարդ է։ Սակայն և լավ հասկանում ենք, որ մենք այլ ուղի չունենք և, որ հանրապետության բնակչությանը անասնապահական մթերքներ մատակարարելու գործի բարելավման շահերը հրամայաբար պահանջում են անվերապահորեն իրականացնել առաջադրված խնդիրը։

Նախատեսվում է 1985 թվականին կուտակել 1500—1600 հազար տոննա կոշտ կեր, այդ թվում՝ 800—840 հազար տոննա խոտ և 450—500 հազար տոննա սենաժ, ինչպես նաև 800—850 հազար տոննա սիլոս, 250—300 հազար տոննա կերի արմատապտուղ, 30 հազար տոննա խոտալյուր և այլ ջրազերծված կերեր։ Կերի կուտակումների ընդհանուր ծավալը կկազմի 2.650—2.750 հազար տոննա (առանց ամառային կանաչ կերի), որը 800—850 հազար տոննայով կգերազանցի տասներորդ հնգամյակում ձեռք բերված տարեկան միջին ցուցանիշը։ Այս բարդ խնդրի հաջող լուծումը կախված կլինի այն բանից, թե կոլտնտեսությունների, սովխոզների, միջտնտեսային ձեռնարկությունների աշխատավորական կոլեկտիվները որքանով լրիվ կկարողանան օգտագործել կերարտադրության ռեզերվները, թե նրանք ինչպիսի արդյունավետությամբ կիրականացնեն դաշտային կերարտադրության և բնական կերահանդակների բերքատվության բարձրացման նպատակով նախատեսվող միջոցառումների կոմպլեքսը։

Ներկայումս կերային կուլտուրաներն զբաղեցնում են ընդհանուր ցանքատարածության 53,5 տոկոսը։ Միջոցառումներով նախատեսվում է այդ թիվը հասցնել 60-ի։ Դրանով փաստորեն սպառվում են ցանքատարածությունների ընդլայնման միջոցով կերերի արտադրությունն ավելացնելու մեր հնարավորությունները։ Դրանց ավելացման միակ իրական ճանապարհը կերարտադրության ինտենսիվացումն է։

Դաշտային կերարտադրության ինտենսիվացման գլխավոր ուղին կերային կուլտուրաների և վարելահողի վրա մշակվող ցանովի բազմամյա և միամյա խոտաբույսերի բերքատվության բարձրացման ագրոտեխնիկական միջոցառումների իրականացումն է։ Շատ տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ նույնիսկ կլիմայական բարդ պայմաններում դաշտային կերարտադրության կուլտուրան բարձրացնելու շնորհիվ կարելի է յուրաքանչյուր հեկտարից, արդեն այսօր, ապահովել 2,5—3 հազար, իսկ յուրաքանչյուր ոռոգելի հեկտարից՝ 5—7 հազար կերամիավոր։

Պետք է նշել, որ վերջին տարիներս գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, տեղական սովետները, սկզբնական կուսակցական շատ կազմակերպություններ քիչ աշխատանք չեն կատարել դաշտային կերարտադրության զարգացման ուղղությամբ։ Ամբողջությամբ վերցրած, դրականապես գնահատելով կատարվածը, պետք է ուղղակի ասել, որ դաշտային կերարտադրության մեջ ձեռք բերված մակարդակը չի համապատասխանում կոլտնտեսությունների և սովխոզների ունեցած հնարավորություններին։ Հանրապետությունում տասներորդ հնգամյակում միամյա խոտաբույսերի բերքատվու-

թյունը յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով կազմել է 26,6 ցենտներ, բազմամյա խոտաբույսերինը՝ 32,5, կերի արմատապտուղներինը՝ 224,4, սիլոսացու եգիպտացորենինը՝ 153, սիլոսացու միամյա խոտաբույսերինը՝ 103 ցենտներ։ Գուգարքի, Ապարանի, Արագածի, Թալինի, Թումանյանի, Սևանի, Մարտունու և այլ շրջաններում «հաջողեցրել» են ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստանալ է՛լ ավելի պակաս քանակությամբ կեր։

Շարունակում է տեղ գտնել այն արատավոր պրակտիկան, երբ առանձին տնտեսությունների և շրջանների ղեկավարներ անպատասխանատու վերաբերմունք են ցուցաբերում սեփական արտադրության կերերի կուտակմանը, փորձում են կերի պրոբլեմը լուծել պետական ռեսուրսներից վերցրած հատիկաֆուրաժի հաշվին։

Ապարանի շրջանի տնտեսությունները (շրջկոմի քարտուղար՝ ընկ. Բ. Անդրեասյան, շրջգործկոմի նախագահ՝ ընկ. Մ. Պողոսյան) տասներորդ հնգամյակում բազմամյա խոտաբույսերի խոտ կուտակեցին 1,6 անգամ պակաս, սիլոսացու եգիպտացորեն՝ 2,5 անգամ, կերի արմատապտուղներ՝ 5,9 անգամ և այլ սիլոսային կուլտուրաներ՝ 7,3 անգամ պակաս, քան պլանավորված էր։ Այլ կերպ էլ լինել չէր կարող, քանի որ շրջանը ոչ մի անգամ չապահովեց հիշյալ կերային կուլտուրաների՝ պլաններով նախատեսված բերքատվությունը։ Սեփական արտադրության կերի պակասը մշտապես կոմպենսացվում էր պետական ռեսուրսների հաշվին, ընդամենը՝ նվազ փոխհատուցմամբ։

Այն մասին, որ սեփական կերի բազա ստեղծելը մատչելի է յուրաքանչյուր շրջանի, յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի համար, վկայում է շատ տնտեսությունների ու շրջանների կուսակցական կազմակերպությունների փորձը։

Գլխավորն է՝ կարողանալ այդ գործը դնել կազմակերպական ճիշտ հիմքի վրա։ Համարձակորեն արմատավորել նորը, առաջավոր փորձը։ Օրինակ, Ստեփանավանի և Թումանյանի շրջանները գտնվում են միատեսակ հողակլիմայական պայմաններում։ Սակայն նրանց աշխատանքի արդյունքները բնավ էլ միատեսակ չեն։ Ստեփանավանի շրջանում, որտեղ կերարտադրությունը հետագա բարելավման կարիք է զգում, յուրաքանչյուր հեկտարից բազմամյա խոտաբույսերի բերքը 30 տոկոսով, եգիպտացորենի կանաչ զանգվածինը՝ 2,2 անգամ, կերի արմատապտուղներինը՝ մոտավորապես 3 անգամ, միամյա խոտաբույսերի բերքը՝ երկու անգամ ավելի է, քան Թումանյանի շրջանում։ Ինչպես տեսնում եք, Թումանյանի շրջանի ղեկավարներ ընկ. ընկ. Ս. Սիմոնյանը և Ս. Վարոսյանը խորհելու շատ բան ունեն, և նրանք պետք է ինչպես հարկն է գործադրեն եղած ռեզերվները։

Կամ Արարատի շրջանի Վանաշեն գյուղի կոլտնտեսությունը անցյալ տարվա պայմաններում յուրաքանչյուր հեկտարից ստացավ բազմամյա խոտաբույսերի 134 ցենտներ բերք, 402 ցենտներ սիլոսացու եգիպտացորեն, իսկ հարևան գյուղերի՝ Այգավանի և Ենգիջայի կոլտնտեսություններում նույն կերային կուլտուրաների բերքատվությունը կազմեց համապատասխանաբար 101 և 202 ցենտներ։ Հոկտեմբերյանի շրջանի Նորակերտ և Հոկտեմբեր գյուղերի տնտեսություններում առվույտի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 85—90 ցենտներ կերամիավոր, իսկ հարևան Նալբանդյան գյուղի տնտեսությունում՝ ընդամենը 29 ցենտներ։ Ցավոք, նման հակապատկերներ բավական հաճախ են հանդիպում նաև շատ ուրիշ շրջաններում։ Դա վկայում է, մի կողմից, տնտեսությունների կուսակցական կազմակերպությունների անբավարար աշխատանքը սեփական արտադրության կերի բազայի ամրապնդման ուղղությամբ և կուսակցության շրջկոմների վերահսկողության բացակայությունն այդ կարևոր գործի նկատմամբ և, մյուս կողմից, կերի արտադրության ավելացման չօգտագործված մեծ ռեզերվների առկայությունը։

Բոլոր գյուղական կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների, սովետական, գյուղատնտեսական մարմինների, տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների պարտքն է՝ որքան կարելի է արագ գործողության մեջ դնել կերային կուլտուրաների բերքատվության բարձրացման բոլոր ռեզերվները, որպեսզի առավել կարճ ժամկետում զգալիորեն ավելացվեն կերերի արտադրության և կուտակման ծավալները։



Կուսակցական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է մելիորացված, հատկապես ոռոգելի հողերի օգտագործման արդյունավետության բարձրացումը։ Անհրաժեշտ է մեկ անգամ ևս նշել, որ հանրապետությունում բնավ էլ լրիվ չեն օգտագործվում բարձրորակ կերերի արտադրության ավելացման ասպարեզում ոռոգելի հողագործության հնարավորությունները։ Վերջին տարիներս այդ հողերում բազմամյա խոտաբույսերի, սիլոսացու եգիպտացորենի, կերի արմատապտուղների տարածությունները փաստորեն չեն ընդարձակվում։ Միևնույն ժամանակ գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության մի շարք շրջկոմներ և ժողովրդական դեպուտատների շրջսովետների գործկոմներ չարդարացված կերպով ընդլայնում են միամյա խոտաբույսերի տարածությունները ջրովի հողերում։ Դրությունը վատթարանում է նրանով, որ ոռոգելի հողերում կերային կուլտուրաների բերքատվությունը գրեթե չի բարձրանում։ Ավելին, Արարատի, Հոկտեմբերյանի, Արթիկի, Գորիսի, Ապարանի, Ամասիայի և Կամոյի շրջաններում մի շարք կուլտուրաների բերքատվությունը իններորդ հնգամյակում ձեռք բերված մակարդակի համեմատությամբ իջել է։

Տասներորդ հնգամյակի տարիներին հանրապետությունում ոռոգելի հողերի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվել է 185 ցենտներ կերի արմատապտուղ, 106 ցենտներ սիլոսացու կուլտուրա, 163 ցենտներ սիլոսացու եգիպտացորեն, 33 ցենտներ միամյա, 47,8 ցենտներ բազմամյա կերաբույսերի խոտ։ Առանձին շրջաններում ջրովի հողերի մեկ հեկտարից դրանից էլ քիչ են ստանում։ 1979 թվականին կերի արմատապտուղների միջին բերքատվությունը Ղափանի, Սևանի, Ազիզբեկովի, Մարտունու և Սիսիանի շրջանների կոլտնտեսություններում և սովխոզներում կազմեց հեկտարից 13-ից մինչև 75 ցենտներ։ Աշտարակի, Ղուկասյանի, Սիսիանի, Շամշադինի և Կամոյի շրջանների տնտեսությունները ոռոգվող յուրաքանչյուր հեկտարից ստացել են բազմամյա բույսերի ընդամենը 17,7—34,7 ցենտներ խոտ։

Տարօրինակ է, բայց փաստ, որ 1979 բարենպաստ տարում Սիսիանի, Աշտարակի, Շամշադինի և Մեղրու շրջանների տնտեսություններում ցանովի խոտաբույսերի բերքը ավելի ցածր էր, քան բնական խոտհարքների բերքատվությունը։

Բերված ցուցանիշները մեկնաբանության կարիք չեն զգում և ոչ մի քննադատության չեն դիմանում։

Եվ այս ամենը, ընկերնե՛ր, այն պայմաններում, երբ հանրապետությունում կերային կուլտուրաներով զբաղված են 73 հազար հեկտար ոռոգելի հողեր։ Հաշվումները ցույց են տալիս, որ կերային կուլտուրաների մշակության առաջավոր տեխնոլոգիաներ կիրառելու, ագրոտեխնիկան ապահովելու և ոռոգելի հողերը ճիշտ շահագործելու դեպքում այդ տարածությունից կարելի է տարեկան ստանալ մոտավորապես 2 անգամ ավելի, քան մենք այսօր ստանում ենք։

Ահա թե մենք ամեն տարի ինչպիսի փոխհատուցում ենք ակնկալում, նախատեսելով զգալի չափերով առաջիկայում ավելացնել կուլտուրաների ցանքատարածությունները ոռոգելի հողերում։

Կերային կուլտուրաների ցածր բերքի հիմնական պատճառները շարունակում են մնալ տրվող պարարտանյութերի անբավարար քանակությունը, կուլտուրաների մշակության տեխնոլոգիայի խախտումները, ոռոգման ռեժիմները չպահպանելը, առավելագույն բերք ստանալու ռեալ լարված պլանների բացակայությունը և տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների անպատասխանատվությունը։ Գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունները, կուսակցության շրջկոմները և ժողովրդական դեպուտատների շրջսովետների գործկոմները, կոլտնտեսությունների և սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպություններն ու ղեկավարները պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն՝ ապահովելու ոռոգելի հողերի բարձր արդյունավետ օգտագործումը և դրանցից առավելագույն քանակությամբ կերի ստացումը։

Միջոցառումներով նախատեսվում է մինչև ընթացիկ հնգամյակի վերջը ոռոգելի հողերում կերային կուլտուրաների տարածությունները հասցնել ավելի քան 90 հազար հեկտարի, իսկ դրանցից կերերի կուտակումն ավելացնել 2—2,5

անգամ։ Դա հնարավորություն կտա միայն ոռոգելի հողերից ամեն տարի կուտակել 630—650 հազար տոննա կերամիավոր։

Կուսակցական կազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները պետք է աշխատավորական կոլեկտիվների ջանքերն ուղղեն այն բանին, որպեսզի ամենուրեք ջրովի հողերի յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացվեն ոչ պակաս, քան 300—350 ցենտներ եգիպտացորենի սիլոսային զանգված, 65—70 ցենտներ բազմամյա և 40—45 ցենտներ միամյա բույսերի խոտ, 400—500 ցենտներ կերի արմատապտուղ, 250—300 ցենտներ սիլոսի կերախառնուրդ։ Մենք դրա համար բոլոր պայմաններն ունենք, այդ թվում թե՛ բնական, թե՛ կլիմայական։ Հասնելով դրան, մենք կկատարենք առաջադրված խնդիրը։

Գյուղատնտեսական մթերքների, մասնավորապես կերերի, արտադրության ավելացման խոշոր ռեզերվ է լքված գյուղատնտեսական հողատարածությունների, ինչպես նաև Արարատյան հարթավայրի ու նրա նախալեռների նոր հողերի ակտիվ ներգրավումը գյուղատնտեսական շրջանառության մեջ։ Այդ աշխատանքները Հայգլխջրշինի կազմակերպությունների ջանքերի շնորհիվ զգալիորեն ակտիվացել են։ Սակայն նոր հողերի յուրացման, կուլտուր-տեխնիկական աշխատանքների կատարման տեմպերը և որակը դեռևս անբավարար են։

Ընթացիկ հնգամյակում նախատեսվում է գյուղատնտեսական շրջանառության մեջ դնել 30 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր և 140 հազար հեկտարի վրա կատարել կուլտուր-տեխնիկական աշխատանքներ։ Հաշվի առնելով այդ միջոցառումների կարևորությունը, մենք պետք է գործը այնպես կազմակերպենք, որպեսզի կուլտուրտեխնիկական աշխատանքների և ոռոգիչ սիստեմների շինարարության տեմպերը առաջ անցնեն ջրատնտեսական շինարարության տեմպերից։

Կուլտուրտեխնիկական աշխատանքների, նոր հողերի յուրացման, հողերի վերակուլտիվացման, մարգագետնամելիորատիվ միջոցառումների, լքված հողերը գյուղատնտեսական շրջանառության մեջ ներգրավելու աշխատանքների արագ ու կոմպլեքսային իրականացման նպատակով Մինիստրների խորհուրդը պետք է քննության առնի հանրապետությունում մասնագիտացված կազմակերպություն ստեղծելու հարցը՝ դրանում կենտրոնացնելով ծանր հողափոր տեխնիկան, բոլոր անհրաժեշտ օղակները, ստորաբաժանումները և նյութատեխնիկական միջոցները։

Վերջին տարիներս հանրապետությունում քիչ բան չի արվել ցանքատարածությունների կառուցվածքը է՛լ ավելի կատարելագործելու, առավել բերքատու կերային կուլտուրաների ցանքատարածություններն ընդլայնելու ուղղությամբ։ Սակայն որոշ շրջաններում այս գործին երկրորդական նշանակություն են տալիս։

Այլապես ինչո՞վ բացատրել, որ Անիի, Արթիկի, Գորիսի, Սպիտակի, Թալինի շրջանների տնտեսություններում ցանքատարածությունների կառուցվածքի մեջ կերային կուլտուրաների տեսակարար կշիռը ամեն տարի չի անցնում 34—49 տոկոսից։ Վերցնենք, օրինակ, Թալինի շրջանը։ Այստեղ վարելահողերի տարածությունը կազմում է մոտավորապես 25 հազար հեկտար։ Կերային կուլտուրաների համար տարեկան հատկացվում է ընդամենը 8—8,5 հազար հեկտար կամ ընդհանուր տարածության 34 տոկոսը։ Եթե դրան ավելացնենք այն, որ Թալինի շրջանի տնտեսություններն անբավարար են զբաղվում կերային կուլտուրաների ցանքատարածությունների կառուցվածքի կատարելագործմամբ, դանդաղ ընդարձակելով առավել արդյունավետ կերային կուլտուրաների տարածությունները, ապա ակնհայտ կդառնա, թե ինչու շրջանի մի շարք տնտեսություններ խրոնիկաբար չեն ապահովում անասնապահության՝ սեփական կերի պահանջմունքը։ Իսկ դա հասցրել է այն բանին, որ դրանցում անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները աննշան տեմպերով են աճում։ Թալինի կուսշրջկոմի քարտուղար ընկ. Պ. Խաչատրյանը և շրջսովետի գործկոմի նախագահ ընկ. Կ. Կիրակոսյանը կերարտադրության ասպարեզում գործերի վիճակը խոր վերլուծելու և ցանքատարածություններն ընդարձակելու ու բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ միջոցներ ձեռնարկելու փոխարեն իրենց մեղքը



ձգտում են գցել շրջանի սպեցիֆիկ ծանր պայմանների վրա, ընդմին մոռանալով, որ շրջանը այլևս բնավ այն չէ, ինչ նախկինում էր։

Գյուղատնտեսության մինիստրությունը, պետպլանը, կուսակցության որոշ շրջկոմներ, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետների գործկոմներ անբավարար են զբաղվում հողագործության մեջ մասնագիտացումը անասնապահության մասնագիտացման հետ ճիշտ զուգակցելու հարցով։ Դրա հետևանքով նման շրջաններում կերերի արտադրության աճը առաջ չի անցնում անասունների գլխաքանակի և անասնապահական մթերքների արտադրության աճից։ Պլանավորման այդպիսի արատավոր պրակտիկան հասցրել է այն բանին, որ Իջևանի, Ապարանի, Արագածի, Ազիզբեկովի, Եղեգնաձորի, Շահումյանի, Թումանյանի և այլ շրջաններում կոշտ և հյութալի կերերի արտադրության պլանները ամեն տարի կատարելու պայմաններում տնտեսությունների հանրային անասունները սեփական կերով ապահովվում են միայն պահանջմունքի 40—50 տոկոսի չափով։

Պլենումը պետք է պահանջի պետպլանից, գյուղատնտեսության մինիստրությունից ապահովել հնգամյա պլանում հողագործության մասնագիտացման և անասնապահության մասնագիտացման ճիշտ զուգակցումը, կերի սեփական բազայի աճի տեմպերը անասունների գլխաքանակի և մթերատվության աճի տեմպերին համապատասխանեցնելը։ Մենք պետք է հասնենք այն բանին, որ տասնմեկերորդ հնգամյակում յուրաքանչյուր շրջան, յուրաքանչյուր տնտեսություն ունենա ցանքատարածությունների գիտականորեն հիմնավորված կառուցվածք և կերարտադրության պլան։

Հարկավոր է պրակտիկայից բացառել ոռոգելի հողերում կերային կուլտուրաների ցանքերի չհիմնավորված, կարելի է ասել, վոլյունտարիստական կրճատման դեպքերը, որպիսիք եղել են անցյալ հնգամյակում։

Մի՞թե կերարտադրության զարգացման նկատմամբ չմտածված մոտեցման փաստ չէ սիլոսացու եգիպտացորենի ցանքատարածությունների կրճատումը։ Հինգ տարում եգիպտացորենի ցանքերն ավելացել են ընդամենը 300 հեկտարով, իսկ 13 շրջաններում դրանք կրճատվել են 2125 հեկտարով։

Միջոցառումներով նախատեսված է ընթացիկ հնգամյակում կերային կուլտուրաների ցանքատարածություններն ավելացնել և հասցնել 268,4 հազար հեկտարի։ Անհրաժեշտ է ապահովել կերային կուլտուրաների առավել բերքատու և սպիտակուցով հարուստ սորտերի տարածությունների ընդարձակումը՝ հաշվի առնելով յուրաքանչյուր շրջանի և տնտեսության հողակլիմայական կոնկրետ պայմանները և միաժամանակ կրճատելով նվազ բերքատու կուլտուրաների տարածությունները։ Ճշտենք, որ կերային կուլտուրաների տարածության ընդարձակումը չպետք է ազդի հողագործական մյուս մթերքների արտադրության ծավալների աճի տեմպերի վրա։

Լուրջ բարելավման կարիք ունի կերային կուլտուրաների ցանքերի կառուցվածքը ոռոգելի հողերում։ Կերային կուլտուրաների ցանքատարածությունների կառուցվածքի կատարելագործումը չի պահանջում լրացուցիչ կապիտալ ներդրումներ ու տեխնիկա, իսկ արդյունքը կարող է նշանակալի լինել։ Հաշվարկների համաձայն, դրանք կարող են լրացուցիչ կերպով տալ կերերի 25—30 տոկոսի հավելում, որը բնավ էլ քիչ չէ, և մենք պետք է անհապաղ ձեռնամուխ լինենք այդ աշխատանքին։

Դաշտային կերարտադրության ինտենսիվացման միջոցառումների համակարգում, կերային կուլտուրաների ցանքերի կառուցվածքի բարելավման, բարձր բերքատու սորտերի օգտագործման հետ մեկտեղ, կարևոր դեր է պատկանում կերային ցանքաշրջանառությունների ճիշտ կազմակերպմանը, կերային կուլտուրաների տեղաբաշխմանը։ Մինչդեռ տվյալ բնագավառում կատարված աշխատանքը բացահայտորեն անբավարար է։ Երկրի և հանրապետության առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ կերային ցանքաշրջանառությունների կազմակերպման դեպքում ավելի բարենպաստ պայմաններ են ստեղծվում կերային կուլտուրաների բարձր բերք ստանալու համար, քան դաշտային ցանքաշրջանառությունների դեպքում։ Արդեն ժամանակն է, որ մենք էլ ամենուրեք կիրառենք կերային ցանքաշրջանառությունները։

ցակայության պատճառով տնտեսությունները գերազանցապես մշակում են եգիպտացորենի ուշահաս սորտեր, որոնք գրեթե ամեն տարի չեն հասնում իրենց զարգացման օպտիմալ փուլին։ Դրա հետևանքով հանրապետությունը պակաս է ստանում մոտավորապես 35—40 հազար տոննա կերամիավոր։ Ելնելով դրանից՝ եգիպտացորենի համար հատկացված հողամասերում նպատակահարմար է ցանել միայն վաղահաս և միջահաս սորտեր ու հիբրիդներ։ Մենք պետք է մինչև հնգամյակի վերջը եգիպտացորենի ինտենսիվ սորտերի և հիբրիդների ցանքատարածությունները հասցնենք 20 հազար հեկտարի, որը հնարավորություն կընձեռի կուտակել 600—650 հազար տոննա եգիպտացորենի սիլոս։ Հարկավոր է ավելի լայնորեն արմատավորել մշտական հողամասերում եգիպտացորենի աճեցման առաջավոր տեխնոլոգիան, որը հնարավորություն է ընձեռում հերբիցիդների և համապատասխան պարարտանյութերի կիրառման շնորհիվ լիովին ազատագրվել մոլախոտերից ու ստեղծել այդ կուլտուրայի զարգացման լավագույն պայմաններ։

Հյութալի կերերի պաշարների համալրման մյուս՝ ոչ պակաս կարևոր աղբյուրը կերի արմատապտուղների մշակությունն է։ Կերի արմատապտուղներն արժեքավոր դիետիկ կեր են անասունների համար և կաթնատվության բարձրացման խթանիչ։ Դրանց մշակության դրական փորձ է կուտակվել Կալինինոյի և Ստեփանավանի շրջաններում։ Անցյալ տարի այդ երկու շրջաններում կլիմայական խիստ անբարենպաստ պայմաններում կերի արմատապտուղների արտադրությունը հասավ 30,2 հազար տոննայի կամ կազմեց հանրապետությունում ամբողջ արտադրվածի 42,1 տոկոսը։ Կերի արմատապտուղների միջին բերքատվությունը Ստեփանավանի շրջանում կազմեց հեկտարից 562 ցենտներ, իսկ Գյուլագարակի սովխոզում 36 հեկտար տարածության վրա միջին բերքատվությունը կազմեց 1100 ցենտներ, Վարդաբլուրի սովխոզում՝ 20 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից համապատասխանաբար՝ 1050 ցենտներ։

Սակայն հանրապետությունում ամբողջությամբ վերցրած կերային կուլտուրաների ցանքատարածությունների կառուցվածքի մեջ արմատապտուղների տեսակարար կշիռը մեծ չէ։ Կերի արմատապտուղների բերքատվությունը հեկտարից միջին հաշվով կազմում է 184 ցենտներ, իսկ որոշ շրջաններում՝ դրանից էլ պակաս։ Սևանի շրջանում արմատապտուղների միջին բերքատվությունը կազմել է հեկտարից 22 ցենտներ, Ապարանի շրջանում՝ 40, Մարտունու շրջանում՝ 51, Արագածի շրջանում՝ 58, Սիսիանի շրջանում՝ 65 ցենտներ։ Հարց է ծագում՝ իսկ ինչպե՞ս են նման վիճակ հանդուրժում շրջանների ղեկավարները՝ ընկ. ընկ. Ս. Զաքարյանը, Հ. Ավագյանը, Թ. Մելքոնյանը, Ճ. Դավթյանը, և այդպիսի արդյունքների պայմաններում ինչպե՞ս են նրանք մտածում լուծել հյութալի կերերի արտադրությունն ավելացնելու և այդ հիման վրա անասնապահության մթերատվությունը բարձրացնելու խնդիրը։

Մենք պետք է մեկ կովի համար ունենանք 2—2,5 տոննա կերի արմատապտուղ։ Ապահովելով այս խնդրի կատարումը՝ կկարողանանք համարձակ ասել, որ մեկ կովից 2500—3000 կիլոգրամ կաթ ստանալը ռեալ գործ կդառնա։ Ուստի գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, շրջսովետների գործկոմները պետք է մշակեն կոնկրետ միջոցառումներ, որոնք ապահովեն հանրապետության կոլտնտեսություններում ու պետական տընտեսություններում տարեկան 250—300 հազար տոննա արմատապտուղների արտադրությունը։ Սա լարված, բայց իրական խնդիր է, ընկերնե՛ր, և մենք անպայման պետք է այն լուծենք։

Ընկերնե՛ր։ Կերերի արտադրությունն ավելացնելու մեծ ռեզերվ են բավարար խոնավության շրջաններում և ոռոգման պայմաններում կերային կուլտուրաների միջանկյալ ցանքերը և խոզանացանքերը։ 1985 թվականին այդպիսի ցանքերը պետք է գրավեն առնվազն 13 հազար հեկտար։ Խոզանացանքերի և միջանկյալ ցանքերի հաշվին կերի արտադրությունը կարելի է ավելացնել 65 հազար տոննա կերամիավորով։ Արտաշատի, Արարատի, Հոկտեմբերյանի և Էջմիածնի շրջանների շատ տնտեսություններ խոզանացանի յուրաքանչյուր հեկտարից ստանում են բարձր բերք։ Սակայն այդ բանն արվում է ոչ ամենուրեք։



Հանրապետության սակավահողության պայմաններում մենք պարտավոր ենք տարին բոլոր առավելագույն արդյունավետությամբ օգտագործել ոռոգելի հողերի հնարավորությունները։ Ներկայումս խոզանացան և միջանկյալ կուլտուրաներով զբաղված տարածությունները կազմում են միայն 3,8 հազար հեկտար կամ հնարավորության 30 տոկոսը։ Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության համապատասխան շրջկոմները, շրջսովետների գործկոմները պետք է կոնկրետ միջոցներ ձեռնարկեն ընդլայնելու խոզանացան և միջանկյալ կուլտուրաների տարածությունները։

Մենք երբեք չպետք է անտեսենք ծղոտի լրիվ հավաքման և ռացիոնալ օգտագործման կարևորությունը, քանի որ դրա տեսակարար կշիռը կերային հաշվեկշռի մեջ հատկապես նախալեռնային և լեռնային շրջաններում բավականին մեծ է։ Ներկայումս ծղոտը նվազ արժեքավոր կերից դարձել է հումք, որի հիման վրա արտադրվում են լիարժեք կերախառնուրդներ գործնականորեն անասունների բոլոր տեսակների համար։

Հանրապետությունում անհրաժեշտ է ավելի ակտիվ ներդնել կերակրման համար ծղոտի պատրաստման նոր եղանակը՝ սալոմաժացումը, որը լավ արդյունք է տալիս։

Այս հնգամյակում մենք պետք է ապահովենք ամբողջ ծղոտի վերամշակումը զանազան մեթոդներով, բայց հիմնականը մնում է սալոմաժի պատրաստումը։ Անհրաժեշտ է, որ պետպլանը համապատասխան տնտեսական մարմինների հետ լուծի տնտեսությունները անհրաժեշտ բաղադրատարրերով ապահովելու պրոբլեմը։

Մի պրոբլեմի մասին ևս։ Վերլուծությունը ցույց է տալիս, որ ամեն տարի մսուրային պահպանությունից արոտավայրային պահպանության անցնելու շրջանում և արոտավայրային շրջանի վերջում հանրապետության տնտեսությունները կորցնում են անասնապահական շատ արտադրանք, հատկապես կաթ։ Դա տեղի է ունենում, որովհետև այդ շրջանում նվազում է կոշտ և հատկապես հյութալի կերի քանակությունը, իսկ տնտեսություններն անասուններին կերակրում են միայն կոնցենտրատներով։ Մինչդեռ հայրենական և արտասահմանյան շատ տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ այդ բացը կարելի է լրացնել կանաչ կոնվեյերի կազմակերպման միջոցով՝ միջանկյալ կերային կուլտուրաներ աճեցնելով։ Մեր հանրապետության պայմաններում այդպիսի կուլտուրաներ կարող են լինել շաբդարը, աշնանացան հլածուկը, աշնանացան աշորան, պերկոն, սորգոն, շաղգամը, ռանգեղը, կերի ղդումը, դդմիկները և ուրիշ շատ կուլտուրաներ։ Սակայն մեզանում այդ կուլտուրաներին բացահայտ անբավարար ուշադրություն է նվիրվում։ Արդեն ավելի քան հինգ տարի է, ինչ, օրինակ, հանրապետությունում մշակվում է կերային նոր կուլտուրա՝ աշնանացան հլածուկ (ռապս)։ Դրա՝ որպես միջանկյալ կուլտուրայի, առավելություններին և կերային արժեքին ոչ ոք չի կասկածում։ Թվում էր, թե այդ ժամանակամիջոցում այն պետք է լայն տարածում գտներ։ Սակայն, որքան էլ տարօրինակ է, 1980 թվականին այդ կուլտուրան մշակում էին միայն հինգ շրջաններ, այն էլ՝ սահմանափակ ծավալով։

Անբարեհաջող է նաև մյուս հեռանկարային կերային կուլտուրաների յուրացման գործը։ Այս ամենի համար պատասխանատու են գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտահետազոտական հիմնարկությունները և տեղական գյուղատնտեսական մարմինները, տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները։

Լուրջ մտահոգություն է հարուցում մի շարք շրջանների ղեկավարների անձեռներեցությունը կերարտադրության տեխնոլոգիայի կատարելագործման ասպարեզում։ Ապարանի, Սևանի, Թալինի, Արագածի, Գուգարքի, Թումանյանի և մի քանի այլ շրջաններում տասներորդ հնգամյակի տարիներին գրեթե ոչ մի նոր բան չի ներդրվել, չի կատարելագործվել արտադրության տեխնոլոգիան։ Եվ զարմանալի չէ, որ այդ շրջաններում անասնապահության զարգացման գործում նկատելի դրական տեղաշարժեր չկան։

Մի՞թե նշված շրջանների ղեկավարներն անասնապահության զարգացման նոր, խոշոր մասշտաբի խնդիրները մտադիր են լուծել ղեկավարման և արտա-

հարքներում հասցնել հեկտարից 35—40 ցենտներ խոտի, իսկ արոտավայրերում՝ 25—30 ցենտներ չոր զանգվածի։ Ահա հենց այդպիսի մակարդակի ապահովում է նախատեսվում միջոցառումներով։

Անհրաժեշտ է անհետաձգելիորեն ձեռնամուխ լինել ընթացիկ հնգամյակում և ավելի երկարաժամկետ հեռանկարով հանրապետության բնական կերահանդակների բարելավման և օգտագործման գլխավոր սխեմայի մշակմանը։

Ընկերնե՛ր։ Վերջին տարիներս հանրապետությունում իրականացվել են կոլտնտեսությունների և սովխոզների ագրոքիմիական սպասարկումը բարելավելու և գյուղատնտեսության քիմիացման նյութատեխնիկական բազան ամրապնդելու մի շարք միջոցառումներ։ Որոշ աշխատանք է կատարվել հանքային պարարտանյութերի և գյուղատնտեսության քիմիացման մյուս միջոցների ռացիոնալ օգտագործման ուղղությամբ։ Սակայն հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում կերային կուլտուրաներին տրվող հանքային պարարտանյութերի քանակը մնում է ցածր։

Կերային կուլտուրաների և խոտաբույսերի բարձր բերքի ապահովումը պահանջում է, որ պետպլանը և գյուղատնտեսության մինիստրությունը ավելացնեն հատկացվող հանքային պարարտանյութերի ծավալները։ Պետք է վերջ տալ այն արատավոր պրակտիկային, երբ կերային կուլտուրաների համար հանքային պարարտանյութեր են հատկացվում վերջին հերթին, երբեմն էլ առհասարակ չեն հատկացվում՝ դրանց սակավ լինելու պատճառաբանությամբ։

Հանրապետությունում անբավարար են օգտագործվում օրգանական պարարտանյութերը։ Ամեն տարի 4,5—5 միլիոն տոննա գոմաղբի առկայության պայմաններում օգտագործվում է ընդամենը 1,6—1,7 միլիոն տոննա։ Սա, ընկերնե՛ր, հասարակ հարց չէ։ Շատերը բանն այսպես են պատկերացնում. եթե գոմաղբ է, էլ ինչ կարիք կա դրանով լրջորեն զբաղվելու։ Իսկ չէ որ գոմաղբի ավելի լրիվ օգտագործման մեջ մեծ հնարավորություններ են թաքնված։ Այսպես, հանրապետությունում մնացած 2,5—3 միլիոն տոննա գոմաղբի օգտագործումը կերային կուլտուրաների համար կարող է հավելյալ տալ 100—120 հազար կերամիավոր, որը հնարավորություն կընձեռի լրացուցիչ կերպով պահելու 85 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, արտադրելու 10 հազար տոննա միս կամ 80 հազար տոննա կաթ։

«Հայգյուղքիմիա» հանրապետական միավորումը, կուսակցության շրջկոմներն ու շրջգործկոմները պետք է լրջորեն զբաղվեն այդ պրոբլեմով, հասնեն այն բանին, որ ամբողջ գոմաղբը արդյունավետ օգտագործվի։ Դա հարկավոր է նաև ֆերմաների և նրանց կից տերիտորիայի սանիտարական վիճակի բարելավման համար։

Կուսակցական կազմակերպությունների կարևոր խնդիրն է՝ առանց պարարտացման չթողնել կերային կուլտուրաների ոչ մի հեկտար ցանք և բնական կերահանդակ։

Ի դեպ, պետք է ասել, որ մեր մի շարք տնտեսությունների ղեկավարների և մասնագետների մեջ յուրատեսակ հոգեբանություն է մշակվել՝ հողից վերցնել որքան կարելի է շատ, բայց փոխարենը ոչինչ չտալ։ Նրանք մոռանում են, որ հողը առատաձեռն վարձատրում է նրանց, ովքեր հոգում են նրա մասին, սիստեմատիկաբար հարստացնում են այն։

Ընկերնե՛ր։ Կերի պրոբլեմի լուծման գլխավոր օղակ պետք է դառնա կերային կուլտուրաների սերմնաբուծության բարելավումը։ Վերջին տարիներս որոշ հաջողություններ են ձեռք բերվել կերային կուլտուրաների սելեկցիայի և սերմնաբուծության բնագավառում։ Լայնորեն տարածվում են առվույտի, կորնգանի, շաբդարի, եգիպտացորենի և այլ կուլտուրաների բարձր բերքատու սորտերը։ Որոշ չափով բարձրացել է սերմնաբուծական աշխատանքի մակարդակը։

Սակայն կերային կուլտուրաների սերմնաբուծության գործում էական թերություններ կան։ Շատ տնտեսություններ չեն կատարում առվույտի, կորնգանի, մարգագետնաարոտավայրային խոտաբույսերի բարձրորակ տեսակավոր սերմացուի արտադրության և պետությանը դրա վաճառքի պլանները։ Հատկապես անբավարար է կազմակերպված առվույտի, տիմոֆեևկայի, շյուղախոտի, երեք-



նուկի, ճերի արմատապտուղների և այլ կուլտուրաների սերմացուի արտադրությունը։

Դանդաղ տեմպերով են իրականացվում սերմացուի արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման, այն արդյունաբերական հիմքերի վրա փոխադրելու միջոցառումները։ Անբավարար են իրականացվում սերմնաբուծական տնտեսությունների կազմակերպումն ու դրանց զինումը սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքի կատարման համար անհրաժեշտ սարքավորումներով ու միջոցներով։ Սերմնաբուծության առկա նյութատեխնիկական բազան թույլ չի տալիս ժամանակին իրականացնել սերմացուի մշակումը, դրա ճիշտ պահպանումը։ Սելեկցիայի և սերմնաբուծության զարգացման գործում ետ մնալը հետևանք է «Հայսորտսերմարդ» (ընկ. Ջ. Պողոսյան) մասնագիտացված միավորման, մի շարք շրջանների սովետական ու տնտեսական, գյուղատնտեսական մարմինների, սերմնաբուծության տնտեսությունների ղեկավարների ու մասնագետների անբավարար աշխատանքի։ Լուրջ թերություններ կան նաև «Սորտսերմբանջար» միավորման (ընկ. Գ. Գրիգորյան) աշխատանքում։ Գործերը հատկապես վատ են սոցիալիստական սեփականության պահպանման ասպարեզում։

Հանրապետության մթերումների մինիստրությունը պատշաճ ուշադրություն չի նվիրում կերային կուլտուրաների տեսակավոր սերմացուի ընդունման, մշակման, պահպանման և իրացման գործին։ Կերային կուլտուրաների տեսակավոր սերմացուի մթերումների պլանները սիստեմատիկաբար չեն կատարվում։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է մշակի և իրականացնի կերային կուլտուրաների և խոտաբույսերի սելեկցիոն-սերմնաբուծական աշխատանքի կազմակերպումը արմատապես բարելավելու միջոցառումներ։ Դրանք պետք է ապահովեն այդ կուլտուրաների նոր, բարձրարդյունավետ սորտերի արագ ստեղծումն ու արմատավորումը, որոնք համապատասխանեն ինտենսիվ կերարտադրության պահանջներին և արտադրվեն այնքան, որ լիովին բավարարեն տնտեսությունների պահանջմունքները։

Ընկերնե՛ր։ Հատուկ ուշադրություն պետք է դարձնել կուտակվող կերերի որակի բարձրացման և դրանց պահպանման պայմանների բարելավմանը։ Կերերի կուտակման և պահպանման ժամանակակից առաջավոր տեխնոլոգիան հնարավորություն է տալիս դրանց մեջ սննդարար նյութերի պարունակությունը հասցնել 80—90 տոկոսի, այն դեպքում, երբ կերերի պատրաստման սովորական, ավանդական մեթոդների պայմաններում սննդարար նյութերի կորուստները հասնում են 30—40 տոկոսի։ Անհրաժեշտ է նշել, որ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում ամեն տարի կուտակվում է մեծ քանակությամբ ցածրորակ կեր, մի բան, որը վկայում է կերահայթայթման տեխնոլոգիայի կիրառման նկատմամբ պատշաճ վերահսկողության բացակայության մասին։

Միայն անցած տարի հանրապետությունում զանազան պատճառներով թույլ տրված կերի կորուստները կազմեցին 100 հազար տոննա կերամիավոր։ Այդ կորուստները, ինչպես ցույց են տալիս մեր գիտնականների հետազոտությունները, տեղի են ունենում հիմնականում կերային կուլտուրաների բերքահավաքի ժամկետների կոպիտ խախտումների, դրանց կուտակման տեխնոլոգիան չպահպանելու և համապատասխան պահեստարանների բացակայության պատճառով։

Խոտաբույսերի բերքահավաքը, օրինակ, 7—12 օրվա փոխարեն ձգձգվում է մեկ ամիս և ավելի։ Բնական խոտհարքների խոտաբույսերի միայն 25—30 տոկոսն է հնձվում օպտիմալ ժամկետներում։ Գիտության տվյալներով, երեքնուկից և տիմոֆեևկայից ստացված և օպտիմալ ժամկետներում հավաքված մեկ կիլոգրամ խոտի սննդայնությունը կազմում է 0,44 կերամիավոր, որը պարունակում է 66 գրամ պրոտեին, իսկ երեքնուկի ծաղկումից հետո՝ համապատասխանաբար՝ 0,24 կերամիավոր և 35 գրամ կամ շուրջ երկու անգամ պակաս։

Անասնակերի կորստի հիմնական պատճառներից մեկը տնտեսությունների կողմից դրա կուտակման հանձնարարված տեխնոլոգիայի խախտումներն են։ Մեզանում խոտի հավաքման ամենատարածված միջոցը բնական դաշտային չորացման ավանդական ձևով չմամլված խոտի պատրաստումն է։ Այդ դեպքում

ռայողներին և մյուս քաղաքացիներին տրամադրել հողամասեր՝ անասունների արածեցման և խոտհնձի համար։ Մենք կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում պետք է կերային բազան զարգացնենք այն հաշվով, որպեսզի լիովին բավարարենք ինչպես հանրային անասնապահության, այնպես էլ քաղաքացիների անձնական սեփականության անասունների պահանջմունքները, ինչպես նաև առանձնացնենք կերերի անհրաժեշտ քանակի փոխանցիկ ապահովագրական պաշարներ։

Տասներորդ հնգամյակի տարիներին զգալի աշխատանք է կատարվել համակցված կերերի գործարանների կարողությունների ընդլայնման ասպարեզում։ Դրա շնորհիվ տարեկան կարողությունը հասցվել է 720 հազար տոննայի։ Տասներորդ հնգամյակում հանրապետությունում արտադրվել է 1,9 անգամ ավելի համակցված կեր, քան իններորդում։ Պատշաճը հատուցելով համակցված կերերի արտադրության բազայի ամրապնդման ուղղությամբ կատարված աշխատանքին, պետք է արձանագրել, որ այդ ճյուղի որակական ցուցանիշները ցածր են, և մթերումների մինիստրության ղեկավարները դեռևս չեն կարողացել հաղթահարել իներցիայի ուժը և շարունակում են առաջին պլան մղել միայն քանակական ցուցանիշները, անտեսելով որակականը։

Քիչ չեն սահմանված ստանդարտների խախտումներով արտադրանքի թողարկման դեպքերը։ Համակցված կերերի զգալի մասը պարզագույն, պրոտեինով, վիտամիններով, միկրոտարրերով և մյուս բաղադրատարրերով չհամակշռված կերախառնուրդներ են։ Դեռևս չի ապահովվում գյուղատնտեսական կենդանիների և թռչունների բոլոր տեսակների ու հասակների համար համակցված կերերի անհրաժեշտ տեսականին։ Հարց է ծագում, թե մթերումների մինիստրությունն ինչպե՞ս է ուզում վերացնել այդ թերությունները՝ առանց արագացնելու համակցված կերերի արտադրության ձեռնարկությունների մասնագիտացումը, առաջավոր տեխնոլոգիաների, որակի կառավարման սիստեմի ներդրումը։ Պլենումում հարկ է մինիստրության ղեկավարության և սիստեմի ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունների ուշադրությունը հատկապես հրավիրել սոցիալիստական սեփականության պահպանության վատ վիճակի վրա, համակցված կերերի հափշտակումների և վատնում-շռայլումների հաճախակի դեպքերի վրա։

Մինիստրության կոլեգիան և մինիստր ընկ. Օ. Հովակիմյանը պարտավոր են հիշել իրենց պատասխանատվության մասին այդ ամենի համար և վճռական միջոցներ ձեռնարկել ճյուղի ձեռնարկություններում և կազմակերպություններում պետական պատշաճ կարգ ու կանոն սահմանելու համար։

Տասնմեկերորդ հնգամյակում հանրապետությունում համակցված կերերի արտադրության ծավալը պետք է աճի 1,4 անգամ։ Դա մինիստրությունից պահանջում է արագ ավելացնել Երևանի համակցված կերերի գործարանի կարողությունները, ձեռնամուխ լինել Ղափանի համակցված կերերի գործարանի շինարարությանը, իրագործել համակցված կերերի գործարանների հատակ մասնագիտացում, կազմակերպելով լիարժեք համակցված կերերի, սպիտակուցավիտամինային խառնուրդների և ստարտերային կերերի արտադրությունը այնպիսի ծավալներով, որոնք ապահովեն հանրապետության անասնապահության պահանջմունքները։

Գյուղատնտեսության մինիստրությանը անհրաժեշտ է զարգացնել համակցված կերերի միջտնտեսային ձեռնարկությունների ցանցը և այնտեղ կազմակերպել կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ֆուրաժային հացահատիկի վերամշակումը։ Այդ գործում Հրազդանի և Աշտարակի շրջանների փորձը ուսանելի է, մանավանդ որ հանրապետության տնտեսությունները ամեն տարի որպես անասնակեր օգտագործում են 60—70 հազար տոննա հացահատիկ, առանց այն դարձնելու համակցված կեր կամ կերախառնուրդ, մի բան, որ հանգեցնում է հացահատիկի ոչ արդյունավետ օգտագործման։

Ընկերնե՛ր։ Անասնակերի պաշարների համալրման նպատակով մեզ անհրաժեշտ է ընթացիկ հնգամյակում միջոցներ ձեռնարկել ի հայտ բերելու և լիովին օգտագործելու կերի լրացուցիչ ռեսուրսներ։ Խոսքն այստեղ առաջին հեր-



թին անտառային տնտեսության պետական կոմիտեի սիստեմում կերի կուտակման ավելացման մասին է։

Սիստեմի տնտեսություններում կերային ռեսուրսների ավելացման հնարավորությունները ծայրահեղորեն վատ են օգտագործվում, թույլ են տրվում կուտակված խոտի վատնումներ։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ 404 հազար հեկտար անտառների և անտառատնկարկների, անտառային բացատների մեծ տարածությունների առկայության պայմաններում Անտառտնտպետկոմի տնտեսություններն ամեն տարի միջին հաշվով կուտակում են ընդամենը մոտ 10 հազար տոննա խոտ, որն ակնհայտորեն քիչ է։

Արդյոք Անտառտնտպետկոմի նախագահ ընկ. Հ. Ավագյանը մտադիր չէ՞ նման անտնտեսվարությունը բացատրել կլիմայական անբարենպաստ պայմաններով։ Անհրաժեշտ է առավելագույնս օգտագործել բոլոր հնարավորությունները տարեկան մինչև 20 հազար տոննա և ավելի խոտ հավաքելու համար։ Հարկավոր է նաև ձեռնամուխ լինել ծառաճյուղերի կուտակմանը, կերի խեժալյուրի պատրաստմանը։

Գյուղատնտեսության մինիստրությունը պետք է առավել լայնորեն օգտագործի կերահայթայթման նպատակով շաքարի ճակնդեղի և կերային արմատապտուղների, կարտոֆիլի փրերը, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների և բուսաբուծության մյուս կուլտուրաների մնացուկները։ Սրանք, ընկերնե՛ր, մանրուքներ չեն։ Այստեղ թաքնված են որոշակի ռեզերվներ։

Կերերի պաշարների համալրման մյուս, ոչ պակաս կարևոր աղբյուրը սննդի մնացուկներն են։ Այդ ռեզերվները տասներորդ հնգամյակում չափազանց անբավարար օգտագործվեցին։

Անհրաժեշտ է, որ պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը՝ պետմատի, գյուղտեխպետկոմի, ֆինանսների մինիստրության և շահագրգռված մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների, ինչպես նաև քաղսովետների գործկոմների հետ համատեղ ամենակարճ ժամկետներում կոմպլեքսային կարգով քննարկեն և լուծեն այն բոլոր հարցերը, որ կապված են սննդի մնացուկների հավաքման, տեղափոխման, վերամշակման և օգտագործման հետ։

Կերի քիչ ռեզերվներ չկան նաև սննդի և մսեղենի, կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկություններում։ Հարկավոր է նշել, որ տասներորդ հնգամյակի տարիներին դրական տեղաշարժեր են եղել ճակնդեղի մզուքի, մաթի, քուսպի, թեփի ռացիոնալ օգտագործման ասպարեզում։ Դրա հետ մեկտեղ մենք այդպես էլ չկարողացանք լրիվ օգտագործել կերերի այնպիսի կարևոր ռեզերվներ, ինչպիսիք են խաղողի չեչը, խորդենու մնացուկները, գինեգործական արդյունաբերության մեջ դրոժային թանձրուկը և մրուրը, կաթնասիճուկը, մսալյուրը և ոսկրալյուրը, պահածոյի արդյունաբերության մնացուկները, խմորեղենի մնացուկները և այլն։ Որպեսզի ցույց տանք, թե այստեղ ինչպիսի հնարավորություններ կան, բերենք միայն մեկ օրինակ։

Հայաստանի խաղողագործության, պտղաբուծության և գինեգործության գիտահետազոտական ինստիտուտի հաշվարկները ցույց են տալիս, որ միայն դրոժային թանձրուկից կարելի է տարեկան ստանալ 3 հազար տոննա չոր գինեխմորիչ, որը սննդային բարձր հատկություններ ունեցող սպիտակուցային կեր է։

Չոր գինեդրոժներ ստանալու տեխնոլոգիան ինստիտուտը վաղուց է մշակել։ Բայց ահա դրա ներդրումն անթույլատրելի կերպով ձգձգվում է։

Ըստ երևույթին, ժամանակն է, որպեսզի տասնմեկերորդ հնգամյակում սննդի արդյունաբերության մինիստրության սիստեմում ստեղծենք գինեգործական և պահածոյի արդյունաբերության մնացուկները կերային նպատակների համար վերամշակող մասնագիտացված ձեռնարկություն։

Մենք պետք է նաև խելացիորեն օգտագործենք քիմիական և միկրոբիոլոգիական արդյունաբերության բոլոր հնարավորությունները։ Մենք կարող ենք զգալիորեն ավելացնել միկրոբիոլոգիական սինթեզի կերահավելումների արտադրությունը և կիրառումը։ Այստեղ մեծ դեր է պատկանում լիգնինին։ Սովետաշենի և Թալինի խոզաֆաբրիկաների խոզերի կերաբաժնում լիգնինի օգտա-

Շատ բան պայմանավորված է նրանով, թե շրջանների, մինիստրությունների և գերատեսչությունների, տնտեսությունների և մյուս գյուղատնտեսական ստորաբաժանումների ղեկավար աշխատողները որքանով կողմնորոշվեն կերարտադրության վերելքի և ինտենսիվացման համար պատասխանատվության զգացումով, ինչպիսի հաստատակամությամբ արտադրության մեջ կներդնեն այն ամենը, ինչ նոր է ու առաջավոր:

Մեր առջև կանգնած խնդիրների հաջող լուծման կարևորագույն պայմաններից մեկը սոցիալիստական մրցության լայն ծավալումն է: Մենք պետք է բարձրացնենք սոցմրցության նշանակությունը, հասնենք այն բանին, որ կերերի արտադրության և կուտակման սոցիալիստական պարտավորությունները լինեն աշխատավորների նախաձեռնության դրսևորումը, գյուղատնտեսության բոլոր աշխատողներին մղեն դեպի ռեզերվների և հնարավորությունների ավելի ռացիոնալ օգտագործում, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի ըստ ամենայնի բարձրացում:

Կերարտադրության հետագա ինտենսիվացման կոմպլեքսային ծրագրի իրականացման գործում կոչված են մեծ դեր խաղալու տեղական սովետները, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները:

Անասնապահության կերի բազայի հետագա զարգացման խնդիրների պրակտիկ իրականացումը պահանջում է, որպեսզի կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կուսակցական կազմակերպությունները գաղափարադաստիարակչական աշխատանքի ծանրության կենտրոնը տեղափոխեն անմիջականորեն կոլտնտեսությունները և պետական տնտեսությունները, ֆերմաներն ու դաշտերը: Անհրաժեշտ է այդ գործում հմտորեն օգտագործել մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի բոլոր միջոցները: Հանրապետական և տեղական մամուլի, հեռուստատեսության և ռադիոյի կարևոր խնդիրն է լայնորեն պրոպագանդել առաջավոր փորձը, ակտիվորեն պաշտպանել այդ ասպարեզում գիտության նվաճումների արմատավորման ստեղծագործական նախաձեռնությունները, պայքար մղել եղած թերությունների դեմ: Կերարտադրության ծրագրի կատարման գաղափարախոսական ապահովման գործում փոքր դեր չունեն կատարելու մեր կուլտուր-լուսավորական հիմնարկությունները:

Ընկերնե՛ր: Անցել են տասնմեկերորդ հնգամյակի առաջին տարվա վեց ամիսները:

Առաջին կիսամյակի աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում լավ մեկնարկ է վերցվել: Հանրապետության արդյունաբերության աշխատողները հաջողությամբ են կատարել իրենց պլանային առաջադրանքները: Նրանք այդ առաջադրանքները գերակատարել են: Հաջողությամբ են կենսագործվում նաև ստանձնած սոցիալիստական պարտավորությունները: Արդյունաբերական արտադրանքի արտադրության ծավալը, անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, աճել է 8,7 տոկոսով: Գերակատարվել են աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանները, բարելավվել է թողարկվող արտադրանքի որակը: Անցյալ տարվա համեմատությամբ ավելի լավ ցուցանիշներ ունեն շինարարները: Հնգամյակը վստահորեն են սկսել մեր տրանսպորտի, սպասարկման ոլորտի աշխատողները: Կարևոր խնդիրների լուծման համար հաջողությամբ են աշխատում հանրապետության գիտության ու կուլտուրայի գործիչները:

Լավ արդյունքների են հասել գյուղատնտեսության աշխատողները: Գերակատարված են պետությանը անասնապահական մթերքներ վաճառելու կիսամյա պլանները: Պլանից ավելի պետությանը վաճառվել է 3,1 հազար տոննա միս, 14,1 հազար տոննա կաթ, 9,3 միլիոն ձու, 343 տոննա բուրդ: Բարձրացել է անասնապահության մթերատվությունը: Հանրապետության կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում մեծ աշխատանք է ծավալվել գյուղատնտեսական կուլտուրաների և բազմամյա տնկարկների մշակության ագրոտեխնիկական միջոցառումների ողջ կոմպլեքսի կազմակերպված իրականացման նպատակով: Հանրապետության տնտեսությունները ձեռնամուխ են եղել կերի կուտակմանը և բերքահավաքին:



Բայց կան նաև ոչ քիչ թերություններ:

Մի շարք տեղերում ձգձգվում են շարահերկ կուլտուրաների մշակությունը, խաղողի այգիների բուժումը, դանդաղ տեմպերով է կատարվում կերի կուտակումը, անբավարար են օգտագործվում կաթնարտադրության ավելացման ռեզերվները:

Այս տարի սպասվում է կերային կուլտուրաների և բնական խոտհարքների լավ բերք: Նախնական գնահատումը ցույց է տալիս, որ բոլոր հնարավորությունները կան 2,5—2,6 միլիոն տոննա կոշտ և հյութալի կեր կուտակելու համար: Բայց դրա համար հարկավոր է աշխատել լարված և բարձր տեմպերով:

Անհրաժեշտ է ապահովել գյուղատնտեսական տեխնիկայի և տրանսպորտային միջոցների անխափան աշխատանքը, Գյուղտեխպետկոմի կազմակերպություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում մշտապես ունենալ անհրաժեշտ քանակությամբ վառելիք, հանգույցներ, ագրեգատներ և պահեստամասեր:

Բերքահավաքի և կերի կուտակման ժամանակաշրջանում տնտեսություններում պետք է ապահովել հասարակական սննդի, դաշտերի ու ֆերմաների աշխատողների կուլտուր-կենցաղային և բժշկական սպասարկման պատշաճ կազմակերպումը:

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել այն բանի վրա, որ յուրաքանչյուր տնտեսություն անպայման կատարի և գերակատարի կոշտ և հյութալի կերի կուտակման պլաններն ու լրացուցիչ առաջադրանքները: Բոլոր ջանքերը պետք է կենտրոնացվեն օրինակելիորեն անցկացնելու ցանքերի խնամքը, արդյունավետ պայքար կազմակերպելու բույսերի հիվանդությունների դեմ: Այս օրերին ամենուրեք կատարվում են խաղողի և պտղատու այգիների, բանջարանոցային կուլտուրաների ցանքերի, շաքարի ճակնդեղի, ծխախոտի, կարտոֆիլի և այլ կուլտուրաների ցանքերի խնամքի աշխատանքներ: Գլխավորն է՝ լավագույն ժամկետներում անցկացնել ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը:

Այս տարի խաղողի լավ բերք է սպասվում, որը պայմաններ է ստեղծում պլանը զգալիորեն գերակատարելու համար:

Անցյալ տարիների պրակտիկան ցույց է տալիս, որ մեծ դժվարություններ են առաջանում բանջարեղենի կոնվեյերի կազմակերպման գործում: Գործի հաջողությունը մեծապես որոշում են բանջարեղենի բերքի ժամանակին հավաքումը և փոխադրումը: Պտուղ-բանջարեղենի տնտեսության, գյուղատնտեսության և մթերումների մինիստրությունները պետք է ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության հետ համատեղ կազմեն բանջարեղենի ընդունման և սպառողներին առաքման հստակ գրաֆիկ, ապահովեն դրա անշեղ կատարումը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողներին, կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին կոչ է անում 1981 թվականը՝ տասնմեկերորդ հնգամյակի մեկնարկային տարին, նշանավորել հանրապետության գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում ձեռք բերած նոր նվաճումներով: Դա կլինի մեր առաջին կոնկրետ պատասխանը երկրի ագրոարդյունաբերական կոմպլեքսի հետագա զարգացման մասին կուսակցության XXVI համագումարի որոշումներին:

Թույլ տվեք ՍՄԿԿ լենինյան Կենտկոմին, ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյին հավաստիացնել, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները իրենց ուժերն ու եռանդը կնվիրաբերեն ՍՄԿԿ XXVI համագումարի հոյակապ կանխագծումների հաջող իրականացմանը, 11-րդ հնգամյակի սոցիալ-տնտեսական զարգացման պլանների անվերապահ կատարմանը: (Բուռն ծափահարություններ):

## ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ՏՐԱՆՍՊՈՐՏԸ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՇԱՐԺԻՉՆ Է

**Մ. Ս. ՄԻՆԱՍԲԵԿՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի տրանսպորտի և
կապի բաժնի վարիչ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ տասնմեկերորդ հնգամյակի գլխավոր խնդիրը համարեց ապահովել սովետական մարդկանց բարեկեցության հետագա աճը ժողովրդական տնտեսության հաստատուն, հարաճուն զարգացման հիման վրա, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, էկոնոմիկան զարգացման ինտենսիվ ուղու վրա փոխադրելու, երկրի արտադրական պոտենցիալն ավելի ռացիոնալ օգտագործելու, ռեսուրսների բոլոր տեսակներն ըստ ամենայնի խնայելու և աշխատանքի որակը բարելավելու հիման վրա:

Նոր հնգամյակի գլխավո՛ր խնդիրն իրականացնելու գործում կարևոր նշանակություն ունի ինֆրակառուցվածքի արագացված զարգացումը, որի շատ ոլորտներին, ինչպես նշվեց դեռ ՍՄԿԿ XXV համագումարում, նախկինում հնարավոր չէր անհրաժեշտ ուշադրություն նվիրել:

Իրականացնելով տասներորդ հնգամյակի խնդիրները, հանրապետության տրանսպորտի աշխատողները, կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ, հաջողությամբ կատարեցին պետական առաջադրանքները: Աշխատավորական շատ կոլեկտիվներ բազմիցս հաղթող դուրս եկան համամիութենական և ճյուղային սոցիալիստական մրցությունից, իսկ Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքը պարգևատրվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով:

Հայաստանի երկաթուղայինները բեռների բոլոր տեսակների առաքման հնգամյա պլանը կատարեցին 101,6 տոկոսով կամ լրացուցիչ փոխադրեցին 1,4 միլիոն տոննա բեռ: Ընդ որում, աճը 1975 թ. համեմատությամբ կազմեց 19,3 տոկոս, որի 66,2 տոկոսն իրականացվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, իսկ վերջինիս աճն էլ կազմեց 18,8 տոկոս՝ 8,9 տոկոս պլանային առաջադրանքի փոխարեն: Մոսկվայի երկաթուղու օրինակով մեր մեքենավարները, կայարանների աշխատողների և գնացքների դիսպետչերների ապարատի հետ համագործակցելով, սկսեցին վարել ծանրաքաշ գնացքներ, որը հնարավորություն ընձեռեց սահմանված նորմաներից ավելի փոխադրել 2,7 միլիոն տոննա ժողովրդատնտեսական բեռներ: Ժամում 4,5 կիլոմետրով ավելացավ գնացքների տեխնիկական արագությունը, որի շնորհիվ ազատվեցին ավելի քան հազար էլեկտրաքարշեր: Դա տվեց 0,5 միլիոն ռուբլու տնտեսում: Տնտեսվել են նաև 18 միլիոն կիլովատ ժամ էլեկտրաէներգիա և մոտ հազար տոննա դիզելային վառելանյութ: Փոխադրումների պլանը գերակատարելու և ծախսերը կրճատելու միջոցով ինքնարժեքն իջել է 2 տոկոսով, ստացվել է 3,8 միլիոն ռուբլու արտապլանային շահույթ:



Տասներորդ հնգամյակի տարիներին որոշակի աշխատանք է կատարվել հիմնական ֆոնդերի նորացման բնագավառում. փոքր հզորության էլեկտրաքարշերի ամբողջ պարկը փոխարինվել է հզոր էլեկտրաքարշերով: Լոկոմոտիվային, վագոնային և մյուս տնտեսություններում ստեղծված են նոր արտադրական կարողություններ, ընդլայնված են գործողները: Կառուցված են 11 քարշային ենթակայաններ և 270 կմ երկարությամբ էլեկտրահաղորդման գծեր, արդիական բեռնահրապարակներ՝ Լենինականի, Կիրովականի, Երասխի, Աբովյանի, Արտաշատի, կայարաններում: Վերակառուցվել է Մասիսի կայարանը, կառուցվել է տեսակավորման նոր պարկ՝ տասը ուղիներով, որը նկատելիորեն թեթևացրել է Երևանի և Լենինականի կայարանների աշխատանքը:

Ուղևորների սպասարկումը բարելավելու նպատակով մտցված է Երևան—Ռոստով մարդատար գնացքի, Երևան—Ծովագյուղ և Ծովագյուղ—Վարդենիս մերձքաղաքային գնացքների շուրջտարյա երթևեկություն: Կայարանային շենքեր են կառուցվել Լենինականում, Կիրովականում, Նալբանդում, Արտենիում, Այգավանում, վերակառուցվել են Արթիկի, Սևանի, Ղալթախչիի, Ջաջուռի, Քարակերտի, Արաքսի, Երասխի շենքերը, բարեկարգվել են կայարանամերձ տարածությունները:

Հանրապետության կյանքում կարևոր նշանակություն ունի նաև ավտոմոբիլային տրանսպորտը, որի զարգացման համար տասներորդ հնգամյակում քիչ բան չի արվել: Հանրապետության ավտոտրանսպորտայինները հաջողությամբ կատարեցին ստանձնած սոցիալիստական պարտավորությունները և իններորդ հնգամյակի համեմատությամբ փոխադրեցին 1,7 անգամ կամ 130 միլիոն տոննայով ավելի ժողովրդատնտեսական բեռներ: Բարձր տեմպերով են աճում կենտրոնացված փոխադրումները, որոնց տեսակարար կշիռը հնգամյակում կազմեց 49 տոկոս, իսկ 1980 թ. հասավ 70 տոկոսի: Բարելավվում են բեռնատար տրանսպորտի շահագործման ցուցանիշները՝ վազքի և պարկի օգտագործման գործակիցները, որոնք 1980 թ. վերջին համապատասխանաբար կազմեցին 0,584 և 0,653: Օգուտների պլանը կատարված է 101 տոկոսով և ստացվել է 9 միլիոն ռուբլու արտապլանային օգուտ:

Լայնորեն տարածվել է աշխատանքի կազմակերպման կոլեկտիվ ձևը. բրիգադներում ներգրավված են 9,2 հազար մարդ կամ վարորդների ընդհանուր թվի 58 տոկոսը: Ավտոտրանսպորտում աշխատանքի արտադրողականությունն աճել է 14,8 տոկոսով:

Աշխատանքի արդյունավետությանը մեծապես նպաստում է ավտոմոբիլային կցորդներով և կոնտեյներներով փոխադրումների կազմակերպումը, որոնք համապատասխանաբար ավելացան 2,2 և 4,5 անգամ: Աշխատանքներ են իրականացվում նաև դատարկ վազքը կրճատելու նպատակով: Դրա շնորհիվ ղուգակցող փոխադրումների միջոցով 40 հազար ավտոմեքենաներ փոխադրել են 250 հազար տոննա բեռ: Մեծ ուշադրություն է նվիրվում աշխատանքի գիտական կազմակերպման, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման հարցերին, լայնորեն տարածվում է ռացիոնալիզատորական շարժումը: Այս ամենի տնտեսական արդյունքը կազմել է 10 միլիոն ռուբլի:

Տասներորդ հնգամյակի տարիներին միայն հանրապետության ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության սիստեմում շահագործման է հանձնվել 25 հիմնական օբյեկտ, այդ թվում՝ 9 ավտոտրանսպորտային ձեռնարկություն և 5 ավտոկայան: Ընդլայնվում, վերակառուցվում են գործող ձեռնարկությունները, նորացվում է շարժակազմը:

Իրականացնելով Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի ցուցումները, հանրապետության կուսկազմակերպությունները հետևողական աշխատանք կատարեցին ուղևորատար տրանսպորտում անհրաժեշտ պետական կարգ ու կանոն հաստատելու համար: Պարզ է, որ այդ հարցն ունի սոցիալ-տնտեսական մեծ նշանակություն, քանի որ ուղևորների փոխադրման անխափան կազմակերպումն ապահովում է ձեռնարկությունների և կազմակերպությունների հստակ աշխատանքը և, ընդհակառակը, այդ գործի վատ կազմակերպումը բացասաբար է անդրադառնում մարդկանց աշխատանքային և ազատ ժամանակի օգտագործման վրա, առաջացնում է «տրանսպորտային հոգնածություն», իջեցնում աշ-

խատանքի արտադրողականությունը: Վերջին տարիներին Երևանի և Կիրովականի հասարակական ուղևորատար տրանսպորտը անցավ սպասարկման ոչ դրամարկղային կտրոնային մեթոդի: Դա հնարավորություն ընձեռեց բարձրացնելու բնակչության սպասարկման կուլտուրան, վերացնելու մի շարք բացասական երևույթների պատճառները: Բարելավվեցին նաև տեխնիկատնտեսական շատ ցուցանիշներ՝ ավելացավ երթուղի դուրս եկող շարժակազմի և կատարվող մեքենահերթափոխների քանակը, մեծացան տրանսպորտային միջոցների աշխատանքի տևողությունը և ընդհանուր վազքը, հետևաբար և պարկերի օգտագործման գործակիցները: Զգալիորեն նորացվել է տրանսպորտի շարժակազմը. ստացվել են տրամվայի 77 վագոն, 118 տրոլեյբուսի մեքենա, 200 ավտոբուս:

Հնգամյակի ընթացքում ավտոբուսների ընդհանուր քանակն ավելացել է 550, իսկ տաքսի ավտոմեքենաներինը՝ 235 միավորով: Բացվել են 25 նոր քաղաքային, 28 մերձքաղաքային և 15 տաքսամիկրոավտոբուսային երթուղիներ: Քաղաքային երթուղային ցանցի ընդհանուր երկարությունն ավելացել է 331 կիլոմետրով, տրոլեյբուսների ուղիների միագիծ երկարությունը՝ 36,3 կիլոմետրով: Գործնականում բոլոր բնակավայրերը կանոնավոր ավտոբուսային կապ ունեն շրջկենտրոնների հետ, իսկ նրանցից շատերը՝ մոտակա քաղաքների և հանրապետության մայրաքաղաքի հետ: Հանրագումարային արտահայտությամբ մենք ունենք մերձքաղաքային և միջքաղաքային հաղորդակցության 671 ավտոբուսային ու 179 ներքաղաքային երթուղիներ, համապատասխանաբար 38 հազար և 2,2 հազար կիլոմետր ընդհանուր երկարությամբ:

Հանրապետության կյանքում նշանակալի իրադարձություն եղավ Երևանի մետրոպոլիտենի գործարկումը: Այն արմատապես կլուծի քաղաքային ուղևորատար տրանսպորտի պրոբլեմը, ուստի և պետք է դառնա բոլորիս մշտական հոգածության առարկան: Հայաստանի շինարարների հերոսական աշխատանքը, մեր երկրի շատ քաղաքների եղբայրական օգնությամբ, մարմնավորվեց մի կառույցում, որի կերտողներին երախտապարտ սերունդները կհիշեն դարերով: Նոր հնգամյակում կավարտվի երևանյան մետրոյի առաջին հերթի շինարարությունը, նրա ծառայություններից հնարավորություն կունենան օգտվելու նաև մայրաքաղաքի Աջափնյակի բնակիչները:

Մետրոպոլիտենի շինարարությունն ի վիճակի են իրականացնել միայն տնտեսական ու գիտատեխնիկական հզոր պոտենցիալ ունեցող երկրները: Եվ խորհրդանշական է, որ ընդամենը 60 տարի առաջ կործանման եզրին կանգնած Հայաստանի մայրաքաղաքում այսօր գործում է տեխնիկայի վերջին խոսքով սարքավորված մետրոպոլիտեն: Կարելի՞ է արդյոք բերել սոցիալիստական սիստեմի առավելությունների, սովետական եղբայրական հանրապետությունների դաշինքի, մեր մեծ հայրենիքի ժողովուրդների անխախտ բարեկամության առավել վառ և համոզիչ օրինակ…

Հանրապետության տնտեսական պոտենցիալը որոշակիորեն բնութագրվում է նաև քաղաքացիական ավիացիայի զարգացմամբ, որն սկսել է կարևոր դեր խաղալ մեր ամբողջ տրանսպորտի համակարգում: Հայաստանի ավիատորները տասներորդ հնգամյակում զգալի հաջողությունների են հասել ազգաբնակչության և ժողովրդական տնտեսության պահանջմունքների բավարարման, հանրապետության հետագա աէրոֆիկացման ասպարեզում: Ուղևորների օդային փոխադրումների ծավալն աճել է 55 տոկոսով, որը կրկնակի գերազանցում է Աէրոֆլոտի միջին ցուցանիշը: Փոխադրամիջոցների բոլոր տեսակների ուղևորաշրջանառության 47,5 տոկոսն իրականացրել է քաղաքացիական ավիացիան: Գյուղատնտեսության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում կատարվող հատուկ աշխատանքներում ավիացիայի օգտագործումն ավելացել է 5 անգամ: Այդ աճը արդյունք է հիմնականում ինքնաթիռաուղղաթիռային պարկի օգտագործման արդյունավետության բարձրացման, բեռների և ուղևորների փոխադրումների ավելացման, յուրաքանչյուր ինքնաթիռի թռիչքի արդյունավետության և թռիչքաժամի արտադրողականության բարձրացման, ինչպես նաև վառելանյութի տնտեսման: Այս ամենը դրականորեն է անդրադառնում ճյուղի ֆինանսատնտեսական գործունեության վրա: Այնպիսի հիմնական ցուցանիշներով, ինչպիսին են տեղամասային ուղևորաշրջանառությունը և տոննակիլո-



մետրաժը, շահույթը և ինքնաթիռներով գյուղատնտեսական հանդակների ու անտառների մշակումը, պետական պլանները զգալիորեն գերակատարվել են:

Միայն տասներորդ հնգամյակում այս ասպարեզում կապիտալ ներդրումների ծավալը գերազանցել է նախորդ 30 տարիներին կատարված ներդրումներին: Ընդ որում, ինչպես վերգետնյա միջոցների, այնպես էլ ինքնաթիռաուղղաթիռային պարկի արժեքը կրկնապատկվել է: Արհեստական ծածկով թռիչքավայրէջքային ուղիներ են կառուցվել Լենինականում, Ջերմուկում, Բերդում: Երևանի, Լենինականի և Ղափանի օդանավակայանները հագեցված են ինքնաթիռների վայրէջքի արդի ռադիոտեխնիկական համակարգերով:

Զգալիորեն մեծացել է օդագնացային-տեխնիկական բազաների կարողությունը: Դրանք հագեցված են նորագույն լաբորատոր սարքավորումներով, թռիչքային ինֆորմացիայի վերծանման միջոցներով, էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկայով, ստեղծված է հատուկ օդերևութաբանական ծառայություն: Աշխատանքներ են կատարվում ավիամասնագետների ուսուցման և որակավորման բարձրացման ասպարեզում, որին տրամադրված է ամենաարդիական միջոցներով սարքավորված բազա: Այս ամենը մեր ավիատորներին օգնեցին հաջողությամբ տիրապետելու ՅԱԿ—40 և ՏՈՒ—154 ինքնաթիռներին, ինչպես նաև աշխատանքներ կատարելու ԱՆ—48 17. տեղանոց ինքնաթիռները շահագործման ընդունելու համար: Վերջիններս կփոխարինեն հնացած մակնիշի ինքնաթիռներին և օդանավակայանների վերասարքավորումից հետո տեղական գծերի ավիացիան կդարձնեն գործարկելի բոլոր եղանակներին: Հասկանալի է, թե դա ինչպիսի մեծ նշանակություն ունի մեր հանրապետության պայմաններում:

Հանրապետության օդագնացության հաջող զարգացումը հնարավորություն ընձեռեց Լենինականում ստեղծելու նոր ավիաձեռնարկություն, որն ապահովում է օդային հաղորդակցությունը Մոսկվայի և երկրի շատ այլ քաղաքների հետ:

Լուրջ աշխատանքներ են կատարվում ազգաբնակչության կուլտուրական սպասարկումը բարելավելու համար: Մասնավորապես օդային հաղորդակցության կենտրոնական գործակալության մասնաճյուղեր և առանձին տոմսարկղներ են բացվել հանրապետության շատ քաղաքներում ու բնակավայրերում: Շահագործման են հանձնվել ինքնաթիռներում տեղերի ամրագրման «Ավրորա» և «Սիրենա» ավտոմատացված համակարգերը, տեղադրված են ուղղակի կապի կանալներ, որոնք հնարավորություն են ընձեռում ցանկացած ուղղության համար տոմսերը ձեռք բերելու տեղում:

Այսպիսին են հանրապետության տրանսպորտայինների հաջողությունները տասներորդ հնգամյակում: Դրա հետ մեկտեղ, ժողովրդական տնտեսության և ազգաբնակչության տրանսպորտային սպասարկման պրոբլեմը դեռևս չի կարելի համարել լիովին լուծված: Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXVI համագումարը և ՀԿԿ XXVII համագումարը այդ հարցին լուրջ ուշադրություն նվիրեցին: Կուսակցության XXVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Հատկապես պետք է կանգ առնեմ տրանսպորտի աշխատանքի վրա: Հաշվի առնելով տրանսպորտում կուտակված պրոբլեմների լրջությունը և մասշտաբները, մենք եկանք այն եզրակացության, որ դրանք հնարավոր է լուծել միայն երկարաժամկետ կոմպլեքսային ծրագրի հիման վրա…

Ծրագրով պետք է նախատեսվի տրանսպորտի բոլոր տեսակների՝ երկաթուղային, ավտոմոբիլային և օդային, ծովային և գետային, խողովակամուղ տրանսպորտի կոորդինացման ուժեղացում…

Եվ, ինչ խոսք, պետք է լրջորեն բարելավել ուղևորների փոխադրումները՝ նվազագույնի հասցնել չվացուցակի խախտումները, ավելի հարմարավետ դարձնել կայարանները և օդանավակայանները, բարձրացնել սպասարկման ընդհանուր կուլտուրան» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 63—64):

ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը քաղաքական և կազմակերպչական մեծ աշխատանք են կատարում այս ուղղությամբ, մշակել են մի շարք միջոցառումներ, որոնցով կոնկրետացվում են այդ հարցերի վերաբերյալ կուսակցության և կառավարության հայտնի որոշումներից բխող խնդիրները:

Աշխատավորական կոլեկտիվներում լայնորեն ծավալվում է սոցիալիստական մրցությունը՝ ընդունված որոշումները հաջողությամբ կատարելու, վերջ-

նական բարձր արդյունքների հասնելու համար։ 1981 թ. առաջին կիսամյակի արդյունքները վկայում են, որ տրանսպորտի աշխատողներն ընդհանուր առմամբ հաջողությամբ են կատարում առաջադրված խնդիրները։

Անշուշտ, հաջողությունները կարող էին ավելի մեծ լինել, եթե լիովին օգտագործվեին առկա հնարավորությունները, վճռականորեն վերացվեին առաջընթացն արգելակող թերությունները։ Շարունակվում են ձեռնարկություններից և կազմակերպություններից բողոքներ ստացվել՝ բեռների ժամանակին առաքումը և ստացումը, դրանց պահպանությունը վատ կազմակերպելու վերաբերյալ։ Պատճառները պետք է որոնել մի շարք չլուծված պրոբլեմների մեջ, որոնք կարելի է պայմանականորեն բաժանել երկու խմբի։

Առաջին խմբին վերաբերում են մեծ միջոցներ պահանջող այնպիսի պրոբլեմները, ինչպիսիք են ճանապարհների թողունակության մեծացումը, կայարանային և մերձատար ուղիների զարգացումը, բեռնման-բեռնաթափման աշխատանքների ծավալի մեծացումը, բարձրմեքենայացված պահեստային տնտեսությունների ստեղծումը, լոկոմոտիվների և արդիական վագոնների արտադրությունը։ Ընդ որում, բեռնափոխադրումների բարձր մակարդակը մեր երկաթուղիներում հարկ է լինում զուգակցել ուղևորատար երթևեկության հետ, որը մեր ճանապարհների լեռնային տեղանքի և երկրորդ ուղիներով աննշան ապահովվածության պայմաններում ուժեղացնում է առանց այն էլ դժվարին տրանսպորտային աշխատանքների լարվածությունը։

Ինչպես նշվեց, այդ գործում քիչ բան չի արված, սակայն մենք դեռևս հեռու ենք պրոբլեմի լուծումից։ Նույնիսկ գործարկվելիք Մասիս—Նուռնուս երկաթուղագիծը պահանջվող արդյունքը չի տա առանց ընթացիկ հնգամյակում Իջևան—Հրազդան երկաթուղագծի կառուցման, ինչպես որ նախատեսված է երկրի տնտեսական և սոցիալական զարգացման 1981—1985 թթ. և մինչև 1990 թ. ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում։ Դա հնարավորություն կընձեռի հանրապետության հասցեով եկող բեռների հիմնական զանգվածն անմիջականորեն ստանալ Բալաջարի—Աղստաֆա երկգիծ տեղամասով, շրջանցելով երկաթուղու Նախիջևանի և Թբիլիսիի բաժանմունքները, որոնց թողունակությունը սահմանափակ է։ Դրա շնորհիվ զգալիորեն կբարելավվի ամբողջ անդրկովկասյան գոտու երկաթուղային տրանսպորտի աշխատանքը։

Հարկ է նշել, սակայն, որ Իջևան—Հրազդան երկաթգծի շինարարությունում լարված իրադրություն է ստեղծվել, աշխատանքները շատ բնագավառներում ետ են մնում, առկա են մի շարք չլուծված հարցեր։ Շինարարության հաջող ընթացքին շարունակում է խոչընդոտել կամուրջների և թունելների կառուցման ետ մնալը, մինչդեռ դրանք են բնորոշում ճանապարհի կառուցման տեխնոլոգիան։ Այդ առնչությամբ ՀԿԿ Կենտրոնական կոմիտեն համապատասխան որոշում է ընդունել, կազմվել է հանրապետական հանձնաժողով։ Հանձնարարված է Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքին, գլխավոր կապալառու «Հայտրանսշին» տրեստին, «Հայթունելշին» վարչությանը և մյուս ենթակապալառու կազմակերպություններին, ինչպես նաև «Արմգիպրոտրանս» նախագծային ինստիտուտին՝ անհապաղ միջոցներ ձեռնարկել գործարկվելիք մինիմումը սահմանված ժամկետներում շահագործման հանձնելու համար։

Կուսակցության Դիլիջանի քաղաքային, Իջևանի և Հրազդանի շրջանային կոմիտեները կոնկրետ միջոցառումներ են մշակել շինարարության ընթացքի նկատմամբ ամենօրյա վերահսկողություն հաստատելու, անհրաժեշտ օգնություն ցույց տալու, շինարարության կոմունիստների ավանգարդային դերն ապահովելու, գործուն սոցիալիստական մրցություն ծավալելու նպատակով։ Միայն աշխատավորական կոլեկտիվների ջանքերի մոբիլիզացման, հանձնարարված գործի նկատմամբ շինարարական պրոցեսի առանց բացառության բոլոր մասնակիցների պատասխանատվության բարձրացման միջոցով կարելի է լրացնել բաց թողածը և ապահովել այդ կարևոր առաջադրանքների կատարումը սահմանված ժամկետներում։

Անհրաժեշտ է առավելագույն ուշադրություն նվիրել նաև մերձատար ուղիների ցանցի զարգացմանը, որտեղ իրականացվում է բեռնման-բեռնաթափման աշխատանքների 90—92 տոկոսը։ Վերջին տարիներին նկատվող միտում-



ները չեն կարող մեզ չանհանգստացնել։ Մերձատար ուղիներում բեռնման-բեռնաթափման աշխատանքների 22 տոկոս աճի պայմաններում դրանց երկարությունը 1975 թ. համեմատությամբ ավելացել է միայն 20 տոկոսով։ Եվ դա այն դեպքում, երբ նախկինում էլ այս բնագավառում զգալի անհամամասնություն կար։

Այստեղ հիշատակեցինք միջին ցուցանիշները։ Մինչդեռ իրավիճակն ավելի է բարդանում նրանով, որ թեթև, սննդի արդյունաբերության և այլ մինիստրությունների մի շարք ձեռնարկություններ այս հարցերին անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում։ Դեռ ավելին, երկաթուղաճյուղերի տերերը դրանք չեն սարքավորում անհրաժեշտ մեքենաներով ու մեխանիզմներով, դանդաղ է կրճատվում ձեռքի ծանր աշխատանքի բաժինը։ Բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեծ ծավալը և պահեստային տնտեսությունների անբավարարությունը վագոնների ու տրանսպորտային մյուս միջոցների գերնորմատիվային պարապուրդների հիմնական պատճառներն են, որոնք խիստ բացասաբար են անդրադառնում իրենց իսկ՝ ձեռնարկությունների աշխատանքի տեխնիկատնտեսական ցուցանիշների վրա։ Կարևոր է, որ այս բոլոր հարցերը մանրակրկիտ քննարկվեն և հաշվի առնվեն տարեկան պլանային առաջադրանքներում։

Անհրաժեշտ է նաև, որ մինիստրությունները, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարները փոխեն վերաբերմունքն աշխատանքի այս կարևոր տեղամասի նկատմամբ և պահանջվող կարգ ու կանոն հաստատեն իրենց տնտեսություններում։ Հանրապետության ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրության համակարգում արտադրական-տեխնիկական բազան նորմատիվ ցուցանիշների 50 տոկոսն է կազմում, սակայն այդ պայմաններում էլ կապիտալ շինարարությունն այստեղ դանդաղ տեմպերով է իրականացվում։ Այդ պատճառով էլ մի շարք ավտոտնտեսություններ գերբեռնված են և ավտոմեքենաների սպասարկման ու շահագործման նորմալ պայմաններ չունեն։ Այստեղ ուշադրության արժանի է հետևյալ հանգամանքը. եթե 1970 թ. ընդհանուր և գերատեսչական օգտագործման տրանսպորտի կարիքներին հատկացվել է համապատասխանաբար 2,9 և 2,7 հազար ավտոտոննա, այսինքն՝ մոտավորապես հավասար քանակությամբ, ապա 1980 թ. այդ ցուցանիշները կազմեցին 7,1 և 1 հազար ավտոտոննա, որն իր հերթին կհանգեցնի գերատեսչական տրանսպորտի հետագա կրճատմանը, քանի որ դրա շարժակազմի 40 տոկոսն էլ հարկ կլինի առաջիկա տարիներին դուրս գրել՝ ծառայության ժամկետները լրանալու կամ տեխնիկական վիճակի պատճառով։

Այսպիսով, նկատվում է աշխատանքների ծանրության կենտրոնը դեպի ընդհանուր օգտագործման ավտոտրանսպորտ տեղափոխվելու միտում, որը կպահպանվի նաև տասնմեկերորդ հնգամյակում։ Դա դրական տեղաշարժ է, որը հանգեցնում է մասնագիտացման խորացման։ Սակայն արտադրական-տեխնիկական բազաների հարաբերակցությունը նույն համամասնությամբ չի փոխվել, այդ պատճառով էլ գերատեսչական շատ ավտոտնտեսություններում զգալիորեն ավելի քիչ ավտոմեքենաներ կան, քան առկա կարողություններն են։ Այսպես, ՀՍՍՀ արդյունաբերական շինարարության մինիստրությունն ունի կենտրոնացված փոխադրումների վարչություն՝ 560 միավոր ավտոպարկով, այն դեպքում, երբ այդ տնտեսության կարողությունը մեկ հազար բեռնատար ավտոմեքենա է։

Այս պայմաններում միայն մեկ հետևություն կարելի է անել. մանր, ոչ շահութաբեր ավտոտնտեսությունների վերացմանը զուգընթաց անհրաժեշտ է պլանաչափ աշխատանք կատարել գերատեսչական տրանսպորտն իր ամբողջ արտադրական-տեխնիկական բազայով հանրապետության ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությանը հանձնելու համար։ Ընդ որում, այստեղ առանձնահատուկ նշանակություն են ստանում կենտրոնացված փոխադրումների ավելացման հարցերը։ Տրանսպորտի համակենտրոնացումը լրացուցիչ հնարավորություններ է ընձեռում փոխադրումները կցորդով կազմակերպելու համար, որի բաժինը ընդհանուր ծավալում ակնհայտորեն անբավարար է՝ հազիվ 3,8 տոկոս։ Հանրապետության ավտոմոբիլային տրանսպորտի խնդիրն է՝ կարճ ժամանակում հաղթահարել ետ մնալը, ավելացնել կոնտեյներային և փաթեթավորված փոխադրումների ծավալը և այդ հիման վրա ապահովել ընդհանուր

առմամբ փոխադրամիջոցների օգտագործման արդյունավետության հետագա բարձրացումը։

Հարկ է մեծ ուշադրություն նվիրել նաև մարդատար փոխադրամիջոցների համալրմանը։ Ընդ որում, ընդունված որոշման համաձայն, Երևան քաղաքում առաջանց տեմպերով պետք է զարգանա էլեկտրատրանսպորտը։ Իսկ այստեղ ամեն ինչ չէ, որ բարեհաջող է։ Որոշակի աշխատանք կատարելով տրամվայների և տրոլեյբուսների քանակն ավելացնելու նպատակով, տեսադաշտից բաց են թողնված նյութական և արտադրատեխնիկական բազայի ամրապնդման խնդիրները։ Դեռ ավելին, շարժակազմի վերականգնման աշխատանքների ծայրահեղ ծանր վիճակի պայմաններում խիստ դանդաղ է իրականացվում վերանորոգման-մեխանիկական գործարանի շինարարությունը։ Նույնը կարելի է ասել նաև տրոլեյբուսի № 1 պարկի վերաբերյալ։

Եվ, վերջապես, ուղևորների սպասարկման կուլտուրան բարձրացնելու, օդային փոխադրումների ծավալը մեծացնելու, որակը բարելավելու նպատակով անհրաժեշտ է սահմանված ժամկետներում ավարտել «Զվարթնոց» օդանավակայանի հաղվագյուտ կոմպլեքսի երկրորդ հերթի, ինչպես նաև «Հարավային», Լենինականի, Ստեփանավանի օդանավակայանների շինարարությունը, կառուցել նորերը Ղափանում, Գորիսում, Սիսիանում և Մեղրիում։ Անհրաժեշտ է հետևողական աշխատանք կատարել նոր տեխնիկայի ներդրման նպատակով, որպեսզի ապահովվեն թռիչքները բոլոր եղանակներին։ Հասկանալի պատճառներով, այսպիսի արմատական խնդիրների լուծման համար մեկ տարին բավական չէ, սակայն ժամանակը չի սպասում։ Ուստի այդ խնդիրներին զուգահեռ անհրաժեշտ է ուշադրությունը կենտրոնացնել նաև հարցերի երկրորդ խմբի վրա, քանի որ առանց դրա անհնար է հասնել ողջ աշխատանքների արդյունավետության բարձրացման։ Խոսքը վերաբերում է ամբողջ տրանսպորտային պրոցեսի կազմակերպվածությանը և ներդաշնակությանը, աշխատանքային և արտադրական կարգապահությանը, կադրերի մասնագիտական որակավորման բարձրացմանը, բարդ խնդիրները լուծելու նրանց ունակությանը և գործիմացությանը, սոցիալիստական մրցության ծավալմանը, առաջավոր փորձի կիրառմանը, կուսակցական-քաղաքական աշխատանքի ուժեղացմանը։

Տնտեսավարման առավել կատարյալ մեխանիզմն անհրաժեշտ է ներդնել միաժամանակ էկոնոմիկայի կառավարման բոլոր փուլերում, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում։ Դա վերաբերում է նաև տրանսպորտին, որի համար պետք է մշակել աշխատանքի առավել կատարյալ ցուցանիշներ, վերջնական լավագույն արդյունքների հասնելու նպատակով բարձրացնել պլանի խթանիչ դերը։ Մասնավորապես, նպատակահարմար է միաժամանակյա բեռնման ճակատը սահմանել վագոնների միջին օրական մատուցման պլանային հայտի համաձայն, այն հաշվով, որ շարժակազմի նկատմամբ ամբողջ պահանջարկը կարելի լինի բավարարել զուգահեռաբար։ Նույն սկզբունքով էլ պետք է կազմակերպվի ավտոմոբիլային տրանսպորտի աշխատանքը։ Այս պայմաններում միայն կարելի է անհրաժեշտ կարգ ու կանոն հաստատել տրանսպորտային պրոցեսի բոլոր օղակներում, նյութական պատասխանատվություն սահմանել վագոնների պարապուրդի համար։ Իսկ ձեռնարկություններն ու կազմակերպություններն առավել կպարզացնեն և կհագեցնեն իրենց տրանսպորտային արտադրամասը, այն օժանդակից հասցնելով հիմնականի մակարդակին։

Ընդհանուր առմամբ, տրանսպորտային պրոբլեմի լուծմանը պետք է մոտենալ կոմպլեքսայնորեն, և դա մեր առաջնահերթ խնդիրն է, քանի որ ժողովրդական տնտեսության առանց բացառության բոլոր ճյուղերը միայն տրանսպորտային անխափան սպասարկման պայմաններում կարող են նորմալ աշխատել, կատարել իրենց լարված պլանները։ Սակայն մեր պլանները և կանխագծումները կիրականացվեն և կոնկրետ գործեր կդառնան միայն կազմակերպչական աշխատանքի բարձր մակարդակի, հանձնարարված գործի նկատմամբ կատարողների անձնական պատասխանատվության պայմաններում։ Ցավոք, այս հարցում մեզ մոտ ամեն ինչ չէ, որ բարեհաջող է։ Ջնայած քանիցս արված քննադատությանը, երկաթգծում լիովին չի կարգավորված բեռներ ստացողների հստակ ինֆորմացիան, վագոնների մատուցման ընդհատումների հետևան-



քով հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ երբեմն լուրջ դժվարություններ են ծագում պատրաստի արտադրանքն իրացնելու գործում։ Այն անթույլատրելի չափերով կուտակվում է պահեստներում՝ խախտելով արտադրության նորմալ ռիթմը։ Միաժամանակ, առանձին ձեռնարկությունների մեղքով՝ Սպիտակի շաքարի գործարանի, Երևանի ձեթօճառ կոմբինատի, «Հայապակի» արտադրամիավորման, Չարենցավանի «Կենտրոնաձույլ» գործարանի և այլն, 1981 թ. առաջին կիսամյակում վագոնների պարապուրդը մեկուկես անգամ գերազանցեց թույլատրելի նորման։

Վատ է կազմակերպված բեռնման աշխատանքը գիշերային ժամերին, որը բաժանմունքում ընդհանուր առմամբ կազմում է 17 տոկոս, 40 տոկոս նորմայի փոխարեն, ինչպես նաև շաբաթ և կիրակի օրերին, երբ աշխատանքներ են կատարվում օրվա նորմայի 50 տոկոսի չափով։ Առանձին ձեռնարկություններ բեռների ընդունումն ավարտում են ժամը 15—16-ին, որն էապես դժվարացնում է երկաթուղային տրանսպորտի աշխատանքը, իջեցնում ավտոմոբիլների օգտագործման արդյունավետությունը։ Այս ամենի հետևանքով նշված ժամանակամիջոցում 800 հազար ռուբլի տուգանք է վճարված։

Չեն դադարում ավտոմոբիլային և երկաթուղային տրանսպորտի աշխատողների փոխադարձ հանդիմանությունները։ Նրանց աշխատանքային առընչությունների վերլուծությունը վկայում է, որ դրա պատճառներից մեկը պարտականությունների հստակ կարգավորման փաստաթղթի բացակայությունն է։ Ընդ որում, բացահայտորեն թերագնահատվում են ինժեներական նախապատրաստությունը, սթափ հաշվարկները, աշխատանքի գիտական կազմակերպումը։ Շատ բան պետք է անել նաև սոցիալիստական սեփականության հուսալի պահպանությունն ապահովելու համար։

Ստեղծված դրության կարգավորման գործում որոշակի դեր ունեն կուսակցական կազմակերպությունները, որոնք կոչված են ցույց տալու բարձր պահանջկոտության օրինակ, բոլոր աշխատողներին դաստիարակելու սկզբունքայնության, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության ոգով։ Նրանք պետք է տնտեսավարների հետ մեկտեղ ուսումնասիրեն տրանսպորտի նեղ տեղերը, յուրաքանչյուր ձեռնարկության համար մշակեն կազմակերպականտեխնիկական միջոցառումներ, որոնք կհանգեցնեն դրանց աշխատանքի արդյունավետության բարձրացմանը։ Այս գործում առաջին հերթին անհրաժեշտ է ղեկավարվել պրոբլեմի լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման պահանջներով։ Անհրաժեշտ է մշտապես հիշել, որ ոչ մի մասնակի, առանձին միջոցառում ի վիճակի չէ լուծելու ամբողջ պրոբլեմը։ Դա լիովին վերաբերում է նաև տարեցտարի առավել ինտենսիվ դարձող երթևեկության անվտանգության ապահովմանը։ Ճանապարհատրանսպորտային պատահարների կրճատումը պետք է դառնա կուսակցական կազմակերպությունների մտահոգության առարկան, քանի որ խոսքը վերաբերում է սովետական մարդկանց կյանքի ու առողջության պահպանմանը։

Փոխադրամիջոցների ու ճանապարհների տեխնիկական վիճակի բարելավման, ավտոտեսչության մարմինների զգոնության և սկզբունքայնության բարձրացման, երթևեկության կազմակերպման կատարելագործման և մյուս հարցերի կոմպլեքսից անհրաժեշտ է առանձնացնել առավել կարևորները՝ իրենց գործողությունների և արարքների արդյունքների համար վարորդների, վերանորոգողների, շահագործայինների պատասխանատվության բարձր զգացումը, նրանց բարեխղճությունը, ինչպես նաև ուղևորների և հետիոտնի ինքնակարգապահությունը։ Կարգ ու կանոնը խախտողների դեմ պայքարին պետք է մասնակցեն աշխատավորական կոլեկտիվները, ողջ հասարակայնությունը։ Ոչ ոք չի կարող և չպետք է մի կողմ մնա այն հարցերի լուծումից, որոնք այս կամ այն չափով շոշափում են յուրաքանչյուր քաղաքացու շահերը։

Վերը արդեն խոսվեց մարդատար տրանսպորտի աշխատանքի մասին, սակայն մենք հեռու ենք այն մտքից, թե այստեղ ամեն ինչ բարեհաջող է։ Նույնիսկ շարժակազմի անբավարար քանակության պայմաններում (նորմատիվների համեմատությամբ) գործերի վիճակը կարող էր անհամեմատ ավելի լավ լինել, եթե առավել պատասխանատու ձևով և, որ ամենակարևորն է, գործիմացորեն

լուծվեին այդ հարցերը։ Վարորդական կադրերով ոչ լրիվ կոմպլեկտավորված լինելու պայմաններում, նրանց մի մասը չի կատարում աշխատաժամերի ամսական միջին նորման, թույլ է տալիս գործալքումներ։ Մի շարք վարորդներ խուսափում են երկրորդ հերթում և հանգստյան օրերին երթուղի դուրս գալուց, ուշանում են աշխատանքից։ Դրա հետ մեկտեղ շատ ձեռնարկություններում տեղիք են տրվում արտաժամյա աշխատանքների, բարձր է կադրերի հոսունության մակարդակը։

Ընկնելով պլանային առաջադրանքներն ամեն գնով կատարելու ետևից, ձեռնարկությունները ձգտում են թերությունները փոխհատուցել «պիկ» ժամերի միջև ընկած ժամանակամիջոցում պահանջարկից ավելի տրանսպորտային միջոցներ աշխատանքի հանելով, դրանով իսկ անտնտեսվարորեն օգտագործելով էլեկտրաէներգիան և վառելանյութը, չարդարացված ձևով աղտոտելով շրջակա միջավայրը։

Օպերատիվորեն չի ուսումնասիրվում ուղևորների հոսքը, չի ապահովված լավագույն մարշրուտավորումը, անթույլատրելիորեն ձգձգվում է մայրաքաղաքի տրանսպորտային գլխավոր սխեմայի մշակումը։ Այս և մյուս կարևոր հարցերը, որոնց մասին բազմիցս խոսվել է, սպասարկման ցածր կուլտուրայի և երթուղում կարգապահության խախտումների հետ զուգակցված՝ խոչընդոտում են մարդատար տրանսպորտի զարգացումը, իջեցնում դրա օգտագործման արդյունավետությունը։

Հետագա կատարելագործման կարիք ունի երթևեկության ոչ դրամարկղային կտրոնային մեթոդը։ Անհրաժեշտ է բարձրացնել վարորդների և սպասարկող անձնակազմի շահագրգռությունը՝ ուղևորների փոխադրման ծավալն ավելացնելու գործում, ներդնելով այնպիսի մեթոդներ, ինչպես բրիգադային կապալի կազմակերպումը, վերջնական արդյունքների համար նյութական շահագրգռության բարձրացումը, աշխատանքային կարգապահության ամրապնդումը։

Արդարությունը պահանջում է ասել, որ ստեղծված իրավիճակի համար մեղքի իր բաժինն ունի նաև բնակչության մի մասը, որը կոպտորեն խախտում է երթևեկության կանոնները, չի պահպանում հասարակական կարգը։ Չի պակասում անտոմս երթևեկողների թիվը, թույլ է պայքարը այդ արատավոր երևույթի դեմ։ Տրանսպորտը հասարակական է, և հասարակությունը նույնպես պետք է հոգա դրա նորմալ աշխատանքի մասին։ Կուսակցության և կոմերիտմիության շրջանային կոմիտեները, նրանց պրոպագանդայի ու ագիտացիայի բաժիններն այս հարցերին պետք է սևեռուն ուշադրություն նվիրեն և, որ շատ կարևոր է, այդ աշխատանքը պետք է կրի ոչ թե էպիզոդիկ, պատահական բնույթ, այլ լինի նպատակասլաց ու հետևողական։ Հարկ է մշտապես հիշել, որ պայքարելով անտոմս երթևեկության դեմ, կենցաղի կուլտուրայի և հասարակական կարգի կանոնների պահպանման համար, մենք, օգտագործելով ևս մեկ լծակ, կոնկրետ օրինակների հիման վրա ձևավորում ենք մեր մարդկանց բարոյական բարձր հատկանիշները։

Մեծ ռեզերվներ ունի քաղաքացիական ավիացիայի հայկական հանրապետական արտադրամիավորումը, անհրաժեշտ է դրանք ավելի հաստատակամորեն դնել գործողության մեջ։ Այսպես, մեր գլխավոր օդանավակայանը՝ «Զվարթնոցը», հագեցած լինելով գործնականում զրո տեսանելիության պայմաններում ինքնաթիռներն ընդունելու համար անհրաժեշտ ռադիոտեխնիկական միջոցներով, լուսատեխնիկական սարքավորումներ չլինելու պատճառով չի կարողանում պակասեցնել թռիչքի համար պահանջվող եղանակի նվազագույն սահմանագիծը։ Հստակ չէ փոխգործողությունը կարկտահարության դեմ պայքարող էքսպեդիցիաների հետ, օդային միջանցքները և ուղիները անբավարար են հագեցված օդերևութաբանական ռադիոլոկատորներով, որն ամառային ամիսներին հանգեցնում է չվերթի խախտումների։ Ամենուրեք չէ, որ բարձր է ուղևորների սպասարկման կուլտուրան, տրանսպորտի աշխատողների մի մասի մոտ նկատվում են անկարգապահության և անպատասխանատվության փաստեր, որոնց նկատմամբ չի ստեղծված անհանդուրժողականության մթնոլորտ։

Հանրապետության մի շարք շրջաններ դեռևս աէրոֆիկացված չեն։ Գյուղատնտեսական հանդակների, արոտավայրերի, անտառների քիմիական մշակման



մոտ մեկ միլիոն հեկտար պահանջի միայն քառորդ մասն են բավարարում ավիատորները։ Լիովին չի բավարարվում նաև ուղղաթիռների նկատմամբ առկա պահանջարկը։

Այնպիսի կարևոր խնդիր, ինչպիսին թռիչքների որակի բարձրացման կոմպլեքսային լուծումն է, առաջին հերթին պայմանավորված է կուսակցական կազմակերպության աշխատանքի մակարդակով։ Այն կոչված է վերցնելու թռիչքային միջադեպերի կանխարգելման կուրս։ Դա պետք է իրականացվի ոչ թե դեպքից դեպք, այլ մշտապես, նպատակասլացորեն, որպեսզի միավորման բոլոր օղակները գործեն արդյունավետ։

Մեր պլանների բախտը վերջին հաշվով վճռվում է աշխատավորական կոլեկտիվում, և հենց այստեղ պետք է փոխադրվի կազմակերպչական, գաղափարադաստիարակչական և մասսայական-քաղաքական աշխատանքների ծանրության կենտրոնը։

Աշխատանքի առավել վճռական տեղամասերից մեկը պետք է համարել սպասարկման կուլտուրայի և որակի բարձրացումը։ Եթե քաղաքացին շտապում է կայարան, օդանավակայան կամ ավտոկայան և չգիտե, թե երբ է մեկնելու, եթե նա հանդիպում է անուշադիր, անտարբեր վերաբերմունքի, եթե սրահները կեղտոտ են, ինչպես որոշ գնացքներում, և բացակայում են սնվելու տարրական պայմանները, եթե լիովին արմատախիլ չեն արված նեգատիվ երևույթները, եթե քաղաքային տրանսպորտն անկանոն է գործում..., ապա կապիտալ ներդրումների ծավալի, գործունեության տեխնիկատնտեսական ցուցանիշների ոչ մի աճ չի կարող բնակչությանը համոզել, որ այդ բնագավառը լավ է գործում։ Եվ հենց սպասարկման անհրաժեշտ կուլտուրայի մակարդակը պետք է համարել տրանսպորտայինների աշխատանքի վերջնական արդյունքներից մեկը և դրա հիման վրա տալ գնահատականը։

Առաջադրված խնդիրների լուծման գործում մեծ նշանակություն ունի գործուն սոցիալիստական մրցության կազմակերպումը, որը նոր թափով է ծավալվել ՍՄԿԿ XXVI համագումարից հետո, հարստացվել նոր իմաստով և բովանդակությամբ։ Այժմ արդեն մեր գործնական աշխատանքով, այն բանով, թե ինչպիսի պայմաններ կստեղծենք մրցության համար, ինչպես կապահովենք դրա հրապարակայնությունը և արդյունքների համադրելիությունը, պայմանավորված է սոցիալիստական մրցության մասսայականությունը և որ ամենակարևորն է՝ արդյունավետությունը։

Հասարակական կյանքին և կառավարմանը աշխատավորների մասնակցության առավել գործուն ձևերը ծնվում են կոլեկտիվներում։ Մշտական գործող արտադրական խորհրդակցությունները, բրիգադների և վարպետ-դաստիարակների խորհուրդները, կադրերի բանվորական բաժինները մարդկանց հնարավորություն են տալիս ո՛չ միայն ներկայացնելու իրենց առաջարկները, այլև մասնակցելու դրանց քննարկմանը և կենսագործմանը։ Դա սովորեցնում է մտածել մասշտաբայնորեն, պետականորեն, ծառայում է որպես սոցիալական ակտիվությունը բարձրացնելու կարևոր խթան։

Այժմ չկա առավել կարևոր գործ, քան կուսակցության կանխագծումների անշեղ իրականացումը։ Սոցիալիստական պարտավորությունների յուրաքանչյուր կետ պետք է վերցնել մշտական վերահսկողության տակ։ Հասկանալի է, որ խոսքը վերաբերում է ոչ թե մրցողների նկատմամբ մանր խնամակալությանը կամ անվերջ ստուգումներին, այլ յուրաքանչյուր տեղամասում գործերի վիճակի խոր վերլուծությանը, կենդանի կազմակերպչական աշխատանքին, ետ մնացողներին կոնկրետ օգնություն ցույց տալուն, նրանց կողմնորոշելով դեպի առաջավոր փորձի կիրառումը։

Հանրապետության ինֆրակառուցվածքի հետագա զարգացումը տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման վճռական գործոններից է։ Տարակույս չկա, որ տրանսպորտի աշխատողները, կատարելով իրենց հայրենասիրական պարտքը, պատվով դուրս կգան համաժողովրդական սոցիալիստական մրցությունից։

---

# ԺԱՄԱՆԱԿԻ ՊԱՀԱՆՋՆԵՐԻՆ ՀԱՄԱՔԱՅԼ

**Ս. Տ. ՀԱԽՈՒՄՅԱՆ**
ՀՍՍՀ լուսավորության մինիստր

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, շարունակելով կուսակցության նախորդ համագումարների ավանդները, իր արծարծած հարցերի կարևորությամբ, շոշափած խնդիրների նշանակությամբ նոր էջ բացեց նոր կյանքի արարման պատմության մեջ, ավելի բարձր պարզեց աշխարհում խաղաղության պահպանման դրոշը։

Համագումարում մշակված կոմունիստական հասարակարգի կառուցման հոյակապ կանխագծումների կենսագործման ճանապարհին առավել կարևորվում են ժողովրդական կրթության ողջ համակարգի հետագա զարգացումն ու կատարելագործումը, դպրոցում ուսուցման, աշխատանքային ու բարոյական դաստիարակության որակի բարձրացումը, գործնական կյանքի հետ ուսման կապի ամրապնդումը։ Մեր երկրի զարգացման արդի փուլում դպրոցին ներկայացված կենսական խնդիրների լուծման, աճող սերնդի ուսուցման ու դաստիարակության գործում վճռական է մանկավարժական կադրերի դերը։

Տասներորդ հնգամյակի տարիներին ժողովրդական կրթության բնագավառում լուրջ առաջընթաց տեղի ունեցավ դպրոցը բարձրագույն կրթությամբ մանկավարժական կադրերով համալրելու, նրանց որակավորման, մեթոդամանկավարժական պատրաստականության բարձրացման ասպարեզում։ Հնգամյակի տարիներին հանրապետության հանրակրթական դպրոցների I—III դասարաններում դասավանդող բարձրագույն կրթությամբ ուսուցիչների թիվն աճեց 11,2 տոկոսով՝ հասնելով 47 տոկոսի (միութենական միջինը 32,9 տոկոս է)։ 7,7 տոկոսով ավելացավ IV—X դասարաններում ավանդող բարձրագույն կրթություն ունեցող ուսուցիչների թիվը՝ կազմելով 90,9 տոկոս։ Հատկանշական է, որ ներկայումս IV—X դասարաններում դասավանդող բոլոր ուսուցիչների 95, իսկ I—X դասարաններում դասավանդողների 77,5 տոկոսն ունեն բարձրագույն մասնագիտական կրթություն։ Ընդ որում, այս առումով հանրապետությունը Միության մեջ գրավում է երկրորդ տեղը։ Այս ցուցանիշն ավելի բարձր է Երևան, Լենինական, Կիրովական քաղաքներում, Վարդենիսի, Աշտարակի և այլ շրջանների դպրոցներում։

Լուսավորության մինիստրությունը հետևողական համակարգված աշխատանք է տանում նաև գյուղական դպրոցները մանկավարժական որակյալ կադրերով ապահովելու, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1973 թ. հուլիսի 2-ի՝ «Գյուղական հանրակրթական դպրոցի աշխատանքի պայմանների հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշումը կենսագործելու նպատակով։

Տասներորդ հնգամյակի ընթացքում հանրապետության բարձրագույն մանկավարժական ուսումնական հաստատությունների շրջանավարտների մոտ 80 տոկոսն աշխատանքի է անցել գյուղական դպրոցներում, որի շնորհիվ IV—X



դասարաններում դասավանդող բարձրագույն կրթությամբ ուսուցիչների թիվը գյուղական դպրոցներում ավելացել է 12 տոկոսով՝ հանրապետության 7,7 տոկոս միջին աճի փոխարեն։

Հանրակրթական դպրոցներում ուսուցչական որակյալ կադրերի շեշտակի աճը բարերար ազդեցություն ունեցավ ուսումնադաստիարակչական աշխատանքների մակարդակի բարձրացման վրա։ Այսօր արդեն հանրապետության գյուղական ու քաղաքային մանկավարժական բազմաթիվ կոլեկտիվներ հիանալի ցուցանիշներ են ձեռք բերել դպրոցի վերաբերյալ կուսակցության ու կառավարության որոշումների կենսագործման ասպարեզում։

Կուսակցության XXVI համագումարի՝ դպրոցին ներկայացրած նոր խնդիրների մեջ իրենց կարևորությամբ առանձնանում են սովորողների դաստիարակության, մանավանդ բարոյական, աշխատանքային և ֆիզիկական դաստիարակության հարցերը։

Վերջին տարիներին հանրապետությունում զգալի ջանքեր են գործադրվել երիտասարդության գեղագիտական դաստիարակության բարելավման մարզում։ Եվ այդ բնական է ու օրինաչափ, քանի որ աճող սերնդի կոմունիստական դաստիարակության հարցերը չեն կարող հաջողությամբ լուծվել առանց դրա բաղկացուցիչ մասը կազմող գեղագիտական դաստիարակության, որի խնդիրն ու բովանդակությունը մեր օրերում բնորոշվում են ո՛չ միայն դրա ճանաչողական էությամբ, գեղեցկին նոր մարդու հաղորդակցմամբ, այլ, առաջին հերթին, երիտասարդությանը կոմունիստական իդեալներով համակելով, նրա ապրելակերպի ու վարքագծի ձևավորմամբ, հոգևոր աշխարհի հարստացմամբ, ակտիվ կենսադիրքորոշմամբ։

Մեր օրերում հանրակրթական դպրոցի ամենահիմնական խնդիրներից է կյանքի հետ ուսուցման կապի ամրապնդումը, սովորողների աշխատանքային դաստիարակության, մասնագիտական կողմնորոշման նպատակաուղղումը նրանց ինքնուրույն աշխատանքի նախապատրաստմանը։ Աշխատանքային դաստիարակության հարցում դպրոցի ելակետային սկզբունքը ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1977 թ. դեկտեմբերի 22-ի ծրագրային որոշումն է, ըստ որի «Նյութական արտադրության ոլորտում աշխատանքի համար երիտասարդության նախապատրաստումը բարելավելու, մասնագիտության հիմնավորված ընտրության ուղղությամբ դպրոցի վճռական շրջադարձի անհրաժեշտությունը պետք է խորապես գիտակցվի սովետական ուսուցչության, սովորողների ու նրանց ծնողների կողմից»։

Նախորդ հնգամյակում մեր դպրոցն ակնառու հաջողությունների հասավ նաև այս ասպարեզում։

Հույժ կարևոր է երեխաների ֆիզիկական դաստիարակության, մեր մանուկներին առողջ և առույգ մեծացնելու խնդիրը, որի միջոցով առաջին հերթին մարդու մեջ դաստիարակվում են կյանքում անհրաժեշտ այնպիսի հատկություններ, ինչպիսին են դիմացկունությունը, կարգապահությունը, տոկունությունն ու խիզախությունը։ Սովորողների դաստիարակության վերոհիշյալ խնդիրների հաջող իրականացումն ամենից առաջ պայմանավորված է այդ առարկաների ուսուցիչների մեթոդամանկավարժական պատրաստականության, նրանց վարպետության բարձրացմամբ։ Պետք է նշել, որ զգալի առաջընթաց է տեղի ունեցել հանրակրթական դպրոցները երգ-երաժշտության, կերպարվեստի, աշխատանքային ուսուցման և ֆիզիկական կուլտուրայի ուսուցիչներով ապահովելու գործում։ Այս բնագավառում նույնպես հանրապետությունը Միության մեջ գրավում է առաջնակարգ տեղերից մեկը։

Անշուշտ, ասվածից չի հետևում, թե մեզ մոտ դպրոցները լիովին ապահոված են ուսուցչական որակյալ կադրերով և չկան դժվարություններ, լուծման կարոտ խնդիրներ։ Դեռևս ամբողջովին լուծված չէ գյուղական դպրոցները ռուսաց և օտար լեզուների բարձրագույն կրթությամբ ուսուցիչներով ապահովելու հարցը։ Այսպես, 1980—81 ուստարվա տվյալներով, IV—X դասարաններում ռուսաց լեզու ավանդող 4843 ուսուցիչներից 3872-ը կամ միայն 80 տոկոսն ունի բարձրագույն կրթություն։ Կարևոր այս հարցը միշտ էլ եղել է մինիստրության

ուշադրության կենտրոնում, և անհրաժեշտ աշխատանք է ծավալվել ռուսաց և օտար լեզուների՝ պահանջվող քանակի բարձրագույն կրթությամբ կադրերի պատրաստման ասպարեզում, սակայն նրանց պակասը դեռևս զգալի է հատկապես գյուղական դպրոցներում։ Երևանի Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների մանկավարժական ինստիտուտի շրջանավարտների զգալի մասը, լինելով մայրաքաղաքի բնակիչ, հաճախ հրաժարվում է աշխատանքի մեկնել գյուղական դպրոցները։ Այսպես, եթե 1980 թ. մանկավարժական բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսուցչական աշխատանքի գործուղված շրջանավարտներից աշխատանքի է ներկայացել 86,2 տոկոսը, ապա ռուսաց լեզվի և գրականության մասնագետներինը՝ 60,2, օտար լեզվինը՝ 50,4 տոկոսը։

Մինիստրության՝ այս ուղղությամբ ձեռնարկած միջոցառումների շնորհիվ գյուղական դպրոցները վերջին շրջանում համալրվել են ռուսաց և օտար լեզուների որակյալ մասնագետներով։ Այդ գործին, ինչ խոսք, նպաստեցին Երևանի Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների պետական մանկավարժական ինստիտուտի նախապատրաստական բաժանմունքի՝ ընթացիկ ուսումնական տարում ստեղծված հատուկ խումբը՝ կոմպլեկտավորված շրջանների հայկական դպրոցների շրջանավարտներով, ինչպես նաև արտամրցույթային ընդունելության ավելացումը գյուղական շրջաններից։

Գործնականում լուծված է նաև բարձրագույն մասնագիտական կրթությամբ ղեկավար կադրերի խնդիրը։ Դպրոցների գրեթե բոլոր դիրեկտորները, ուսումնադաստիարակչական աշխատանքների գծով նրանց տեղակալները ունեն մանկավարժական բարձրագույն կրթություն։

ՍՄԿԿ XXVI համագումարում, խոսելով հանրակրթական դպրոցի առջև դրրված խնդիրների մասին ընկեր Լ. Ի. Բրեժնևը, անդրադառնալով ուսումնադաստիարակչական պրոբլեմների լուծման գործում ուսուցչի վճռական դերին, միաժամանակ շեշտեց, որ «չպետք է խնայել հոգատարությունը նրա աշխատանքի, կենցաղի, որակավորման բարձրացման նկատմամբ»։

Հիրավի, զարգացած սոցիալիզմի պայմաններում, երբ մեծապես աճում են պահանջները ուսուցչի աշխատանքի նկատմամբ, վճռական նշանակություն են ստանում նրա քաղաքական, գիտական և կուլտուրական մակարդակի, աշխարհայացքի մշտական զարգացումն ու ընդլայնումը, մանկավարժական վարպետության անընդհատ կատարելագործումը։ Աճող սերնդի կրթության, կոմունիստական դաստիարակության գործի հաջողությունը հիմնականում պայմանավորված է նրանով, թե մեր ուսուցիչները, ժողովրդական կրթության համակարգի աշխատողները ինչ չափով են տիրապետում մանկավարժական գիտության արդի նվաճումներին, ինչպես են կատարելագործում իրենց մասնագիտական ու մեթոդամանկավարժական վարպետությունը, նպատակաուղղում դրանք ուսումնադաստիարակչական աշխատանքների որակի ու արդյունավետության բարձրացմանը։

«Ասում են, թե սովորել պետք է ամբողջ կյանքում,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ուսուցիչների համամիութենական համագումարում,— այդ հին ճշմարտությունը կիրառելի է բոլորի համար, բայց, թերևս, դա ամենից ավելի վերաբերում է նրանց, ովքեր սովորեցնում են ուրիշներին։ Ահա թե ինչու այնպես անհրաժեշտ է հոգ տանել ուսուցիչների պատրաստման ու վերապատրաստման մասին»։

Կարելի է անվարան ասել, որ մանկավարժական կադրերի որակավորման կարևոր գործում ձեռք են բերվել որոշակի հաջողություններ. տարիների ընթացքում հանրապետությունում մշակվել է մանկավարժական կադրերի որակավորման բարձրացման բավականին հստակ համակարգ, որում անփոխարինելի դեր են կատարում մանկավարժական գիտությունների գիտահետազոտական, ուսուցիչների կատարելագործման հանրապետական (Լենինականի և Կիրովականի մասնաճյուղերով) և Երևանի քաղաքային ինստիտուտները, ինչպես նաև Խ. Աբովյանի և Վ. Բրյուսովի անվան մանկավարժական ինստիտուտները։ Ձեռնարկված միջոցների շնորհիվ բարելավվել, է՛լ ավելի բովանդակալից է դարձել ուսուցիչների հետ տարվող աշխատանքը։ Կատարելագործվել են դասընթացների մեթոդական և կազմակերպական ձևերը, հիմնականում վերացել են այն դժվարությունները, որոնք խոչընդոտում էին մանկավարժական կադրերի զգալի մասին որակավորման դասընթացներում ընդգրկելու գործը։ Մեզ մոտ ուսուցիչների կատարելագործման չորս և մանկավարժական երեք ինստիտուտներում կազմակերպված վերապատրաստման ֆակուլտետները հաջողությամբ են իրականացնում յուրաքանչյուր ուսուցչի հինգ տարին մեկ անգամ մեկամսյա, իսկ ղեկավար կազմին՝ երկամսյա դասընթացներում վերապատրաստելու մասին ՍՍՀՄ լուսավորության մինիստրության որոշումը։ Ընդ որում, դասընթացները կազմակերպվում են աշխատանքից կտրված կամ չկտրված առկա-հեռակա ձևով։ Վերջին շրջանում լայն աշխատանք է տարվում հնարավորին չափ ընդարձակելու աշխատանքից չկտրված և առկա-հեռակա ձևով կազմակերպվող վերապատրաստման ցանցը։

Ուսուցիչների որակավորման բարձրացման գործում առանձնապես արդյունավետ են կատարելագործման ինստիտուտների՝ հանրապետության բոլոր շրջաններում ու քաղաքներում շուրջ տարին գործող, աշխատանքից չկըտրրված դասընթացները։ Պարապմունքները կազմակերպվում են շրջկենտրոններում, որոշակի և կայուն օրերի, և ունկնդիր բոլոր ուսուցիչները, մեկ օր ազատ լինելով աշխատանքից, կարողանում են առանց դժվարության մանկավարժական գործունեությունը համատեղել վերապատրաստման դասընթացներին, ուր դասախոսություններով հանդես են գալիս մանկավարժական ու գիտահետազոտական ինստիտուտների դասախոսներ, գիտաշխատողներ, կատարելագործման ինստիտուտի մեթոդիստներ, լուսավորության մինիստրության և ժողովրդական կրթության բաժինների տեսուչներ, առաջավոր ուսուցիչներ։ 1976—80 թթ. ընթացքում կատարելագործման և մանկավարժական ինստիտուտների որակավորման բարձրացման դասընթացներին մասնակցեց հանրապետության դըպրոցների մանկավարժական կադրերի գրեթե ողջ կազմը, ընդ որում՝ 65 տոկոսը աշխատանքից չկտրված և առկա-հեռակա ձևով։ Դասընթացների նպատակն է ուսուցիչների մասնագիտական մակարդակի բարձրացումը, մարքս-լենինյան տեսության իմացության խորացումը, ուսուցանվող առարկաների ու առաջավոր փորձի ուսումնասիրությունն ու տարածումը։

Կատարելագործման ինստիտուտներն այժմ պատշաճ տեղ են տալիս դասընթացի մասնակից ուսուցչի ակտիվության բարձրացմանը։ Այդ նպատակով նրանց հանձնարարված ռեֆերատները քննարկվում են դասընթացներում, կազմակերպվում են պարտադիր սեմինարներ և կոնսուլտացիաներ, դասընթացների վերջում տեղի են ունենում ստուգարքներ։

Մանկավարժական կադրերի որակավորման բարձրացմանն են ծառայում հանրակրթական դպրոցների ղեկավար կադրերի շրջանում տարվող աշխատանքները։ Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի՝ դպրոցի ղեկավար կադրերի որակավորման ֆակուլտետում արդեն հինգերորդ տարին է, ինչ հեռանկարային պլանի համաձայն աշխատանքներ են տարվում դպրոցների ղեկավարների որակավորման (այդ ընթացքում ֆակուլտետների դասընթացներին մասնակցել է դպրոցների ավելի քան 4 հազար ղեկավար աշխատող), ինչպես նաև երիտասարդ մանկավարժներից ղեկավար աշխատողների փոխարինողներ նախապատրաստելու ուղղությամբ։

«Կադրերի հուսալի ռեզերվի ստեղծումը եղել է և կմնա մեր կարևոր խընդիրը»— կուսակցության XXVI համագումարում շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը։ Մեր կարծիքով, համագումարի այս կարևոր ցուցումի կենսագործումը պետք է դառնա ժողովրդական կրթության բաժինների ամենօրյա հոգածության առարկան, և լայն աշխատանքներ ծավալվեն ղեկավար կադրերի ուսուցման ու որակավորման բարձրացման, նրանց գաղափարատեսական, մեթոդամանկավարժական մակարդակի բարձրացման նպատակով։ Հատկապես մեծ ջանքեր են պահանջվում ղեկավար կադրերին փոխարինողների դասընթացների կատարելագործման, դրանք արժանի համալրողների իսկական դարբնոցներ դարձնելու մարզում։ Մանկավարժական կադրերի վերապատրաստման գործում կարևոր դեր են խաղում նաև լուսավորության մինիստրության ու ժողկրթության բա-

ժինների մեթոդկաբինետները, որոնց ճնշող մասը դարձել է ուսուցիչների ինքնակրթության, առաջավոր փորձի մասսայականացման իսկական օջախ։ Այս ասպարեզում ուշագրավ փորձ են կուտակել Հրազդանի, Էջմիածնի, Արարատի, Թալինի, Թումանյանի, Կամոյի, Արտաշատի շրջանային, Լենինականի, Ղափանի, Հրազդանի, Էջմիածնի և Կիրովականի քաղաքային մեթոդկաբինետները։ Պատշաճ ուշադրությունն ու օգնությունը նրանց գործունեության նկատմամբ մեծապես կնպաստի մանկավարժական կադրերի որակի բարձրացմանը, կօգնի նրանց՝ հաջողությամբ իրականացնելու դպրոցի առջև ծառացած բարդ ու պատասխանատու խնդիրները։

Սովետահայ դպրոցի նվաճումներից է նաև սփյուռքահայ ուսուցիչների հետ կապի օրավուր ամրապնդումը։ Սկսած 1962 թվականից ամեն տարի սփյուռքահայ բազմաթիվ ուսուցիչներ մեր հրավերով հայրենիք են գալիս մեկամսյա դասընթացների, գալիս են հաղորդակցվելու հայ մանկավարժության ժամանակակից նվաճումներին, հմտանալու մայրենի լեզվի իմացության մեջ, ծանոթանալու մեր առաջավոր ուսուցիչների գործունեությանը։ Միայն 1976—80 թթ. նրանց համար կազմակերպված դասընթացներին մասնակցել է արտասահմանի 17 երկրներից հրավիրված սփյուռքահայ մոտ 180 ուսուցիչ. նրանց համար կազմակերպվել են բովանդակալից դասախոսություններ արդի հայոց լեզվի և գրականության, դասավանդման մեթոդիկայի, հոգեբանության, պատմության, արվեստի ու ճարտարապետության որոշ հարցերի շուրջ։

Պետք է նշել, սակայն, որ ուսուցիչների որակավորման բարձրացման աշխատանքներում դեռևս առկա են որոշ թերություններ, վրիպումներ։ Մեր խնդիրն է ամենից առաջ արմատախիլ անել ձևական մոտեցման ամեն մի դրսևորում այս բնագավառում։ Գաղտնիք չէ, որ երբեմն ինստիտուտի աշխատանքային առանձին օղակներում շարունակում է իշխել միօրինակությունը, չի ծավալվում ստեղծագործական բազմաբնույթ աշխատանք։ Բնականաբար, ուսուցիչները դպրոց են վերադառնում գիտելիքների հին պաշարով, առանց հաղորդակցվելու մանկավարժական գիտության նորույթներին, ուսուցման ու դաստիարակության նոր ձևերին ու մեթոդներին։ Դեռևս լուրջ աշխատանք չի տարվում մանկավարժական առաջավոր փորձի ուսումնասիրման, տարածման ու ներդրման ասպարեզում։

Լուսավորության ոլորտի աշխատողները, ժողովրդական կրթության բոլոր օղակների մանկավարժական կոլեկտիվները իրենց գործունեության հիմքում դնում են մեր օրերի մանկավարժության ոլորտում եղած նորն ու առաջավորը, արգասալի ուղիներ են որոնում՝ աճող սերնդի կրթության ու դաստիարակության գործի արդյունավետ կազմակերպման նպատակով։ Մեր հանրապետությունում այժմ կան մասնագիտական ու մեթոդամանկավարժական մեծ վարպետությամբ օժտված ուսուցիչների մի ստվար բանակ, անընդհատ որոնող, պրպտող մանկավարժներ, որոնց առաջավոր փորձը ուսուցչական լայն մասսաների սեփականությունը դարձնելը հրատապ անհրաժեշտություն է դարձել մեր օրերում։ Աշխատանքում միշտ հանդես բերել նորի զգացում, այսինքն՝ տեսնել կյանքի հետագա առաջընթացն ու զարգացումը, նոր առաջադրված խնդիրների լուծման համար կարողանալ գտնել ճիշտ և արդյունավետ ուղիներ. կուսակցության այս պահանջն առավելագույն չափով վերաբերում է լուսավորության բնագավառի աշխատողներին։ «Մանկավարժական գիտությունն ու պրակտիկան չէին զարգանա,— իրավամբ նշում է ՍՍՀՄ լուսավորության մինիստր ընկ. Մ. Ա. Պրոկոֆևը,— եթե չլինեին նորարար մանկավարժները»։

Լուսավորության մինիստրությունը, ուսուցիչների կատարելագործման հանրապետական ու քաղաքային ինստիտուտները պլանավորված ու հետևողական աշխատանք են կազմակերպում նաև այս ուղղությամբ։ Իրենց առարկայական պատրաստականությամբ, մեթոդամանկավարժական բարձր վարպետությամբ ու գաղափարական-քաղաքական հասունությամբ օժտված ուսուցիչների մի պատկառելի խումբ ստանձնել և պատասխանատվության մեծ զգացումով ղեկավարում է առաջավոր փորձի դպրոցները, առաջավոր ուսուցչի ամբիոնները, նպաստում դրանց գործունեության բարելավմանը, դերի բարձրացմանը։ Արդեն



մեկ տասնամյակից ավելի է, ինչ հանրապետության բոլոր շրջաններում ու քաղաքներում ամեն տարի գործում են առաջավոր փորձի մոտ 500 դպրոցներ, որոնք անուրանալի ավանդ են ներդնում դասի կատարելագործման, ուսուցման առաջավոր մեթոդների, ձևերի ու հնարների արմատավորման, կադրերի որակավորման բարձրացման գործում։ Այդ դպրոցներում ընդգրկված մոտ 4 հազար սկսնակ, մանկավարժության մեջ դեռևս առաջին քայլերն անող ուսուցիչներ, ստեղծագործաբար յուրացնելով ավագ և փորձառու ուսուցիչների մանկավարժական վարպետությունը, կարողանում են ինքնուրույն աշխատանքում ստեղծագործական մոտեցում ցուցաբերել, իրենց ներդրումն ունենալ մանկավարժական բարդ ու դժվարին գործում։

Լուսավորության մինիստրությունը և կատարելագործման ինստիտուտները մշտական հոգածությամբ ղեկավարում են առաջավոր փորձի դպրոցների գործունեությունը, գիտագործնական համաժողովների, պարբերաբար կազմակերպվող սեմինար-խորհրդակցությունների, կոնսուլտացիաների ու փոխադարձ դասալսումների միջոցով նպաստում այդ օղակի գործունեության արդյունավետության բարձրացմանը։ Մինիստրության և ինստիտուտների աշխատակիցները հաճախ ամփոփում են առաջավոր փորձի դպրոցի նվաճումները, օգնում դրանց մասսայականացմանը։ Հատուկ ուշադրության են արժանի կատարելագործման հանրապետական ինստիտուտի կողմից առաջավոր փորձի ուսումնասիրման և տարածման նոր, հետաքրքրական ձևերի ամբողջական համալիրի մշակումն ու հետևողական կիրառումը։ Հատկապես ուշագրավ են այս գործի արդյունավետությանը նպաստող այնպիսի միջոցառումներ, ինչպես առաջավոր ուսուցիչների հաղորդումներն իրենց աշխատանքային հասումների մասին, առաջավոր ուսուցչի ամբիոնների պարապմունքների կազմակերպումը, փորձառու ուսուցիչների անհատական շեֆությունը սկսնակների նկատմամբ, փոխադարձ դասալսումները և այլն։ Հանրապետության մանկավարժական հասարակայնության շրջանում համընդհանուր հավանության է արժանացել Ղափանի շրջանի Լեռնաձորի ութամյա դպրոցի մաթեմատիկայի ուսուցիչ Ռ. Գրիգորյանի, Աշտարակի շրջանի Օշական և Էջմիածնի շրջանի Ծիածան գյուղերի դպրոցների հայոց լեզվի և գրականության ուսուցիչներ Ռ. Պապիկյանի և Ս. Շահսուվարյանի, Արտաշատի շրջանի Նորաշենի դպրոցի կենսաբանության ուսուցչուհի Ռ. Աբովյանի, Ջարենցավանի № 4 դպրոցի ֆիզիկայի ուսուցիչ Ս. Գրիգորյանի, Լենինականի Մ. Մաշտոցի անվան դպրոցի մայրենի լեզվի ուսուցչուհի Ա. Ջուլհակյանի և այլոց դասավանդման առաջավոր փորձը։

Դրական աշխատանքի որոշակի փորձ են կուտակել և նախադպրոցական մանկական հիմնարկությունները։ Հնգամյակի տարիներին հանրապետության նախադպրոցական 30 հիմնարկությունների առաջավոր փորձը ԺՏՆՑ-ի «Ժողովրդական կրթության» տաղավարի կողմից արժանացել է բարձր գնահատականի։ Քսանհինգ աշխատողներ պարգևատրվել են ոսկե, արծաթե, բրոնզե մեդալներով և ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի մասնակցի վկայականով։

Լուսավորության մինիստրությունն իր առաջնահերթ խնդիրներից է համարում առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման նպատակով կազմակերպվող միջոցառումների բարելավումը՝ այն համարելով ուսուցչության մասնագիտական-մեթոդական որակի բարձրացման կարևոր գրավականներից մեկը։ Այդ գործին են ծառայում նաև մանկավարժական ընթերցումները, որ իրավամբ, դպրոցներում գործնական աշխատանքի և մանկավարժական գիտության կապի ամրապնդման լավագույն միջոցներից են։ Անշուշտ, ժամանակակից մանկավարժի օգնականը, նրա առարկայական ու մեթոդական մակարդակի բարձրացման կարևոր ազդակներից մեկն էլ առաջավոր ուսուցիչների ստեղծագործական մտքի խթանումն է, որի արդյունավետ ձևերից են և այդ ընթերցումները։

Այսօր մենք գոհունակությամբ ենք նշում, որ շատ ու շատ աշխատանքներ բարձր են գնահատվել հանրապետական ու միութենական ընթերցումներում,

տպագրվել են մանկավարժական մամուլում, արժանացել խրախուսանքի: ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայի նախագահությունը նշեց, որ միութենական հինգերորդ ընթերցումներին մասնակցած հայ ուսուցիչները հանդես են եկել բովանդակալից, հետաքրքրական զեկուցումներով, արժանացել ունկնդիրների ջերմ հավանությանը:

Դպրոցի առաջնահերթ խնդիրներից է դպրոցականների գաղափարաքաղաքական դաստիարակությունը, քանի որ այսօր առաջին պլան են մղվում սովետական իսկական քաղաքացի դաստիարակելու, աշակերտների հոգում գաղափարաքաղաքական կայուն համոզմունքներ պատվաստելու, նրան իսկական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ու մարդասիրության ոգով համակելու հարցերը:

«Սովետական դպրոցի խնդիրը միայն այն չէ, որ կրթված մարդիկ պատրաստի: Նա նաև պատասխանատու է, որ իր պատերից դուրս գան քաղաքականապես գրագետ, կոմունիզմի գործի համար գաղափարապես համոզված մարտիկներ...»— նշեց ընկեր Բրեժնևը ուսուցիչների համամիութենական համագումարում:

Այս կարևոր խնդիրների հաջող լուծումն ամենից առաջ պայմանավորված է ուսուցչի գաղափարական-տեսական և քաղաքական հասունությամբ: Մեր բոլոր ուսուցիչների պարտքն է ավանդման ընթացքում ապահովել դասի գաղափարական բարձր մակարդակը, կարողանալ ծրագրային թեմաների ուսուցումը հաջողությամբ ծառայեցնել սովորողների գաղափարաբարոյական դաստիարակությանը, նրանց կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1979 թ. «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» հայտնի որոշումը կարևոր ազդակ հանդիսացավ այս ոլորտում տեղի ունեցող ակնհայտ տեղաշարժերի համար: Լուսավորության մինիստրությունը պլանային և սիստեմատիկ աշխատանք է ծավալել ժողովրդական կրթության բնագավառի աշխատողների գաղափարական-տեսական մակարդակի բարձրացման ասպարեզում:

Ուսուցչական կադրերի գաղափարատեսական պատրաստականության, մարքս-լենինյան տեսության և ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության հարցերի խոր և բազմակողմանի ուսումնասիրության գործում կարևոր դեր են խաղում հանրակրթական դպրոցներում գործող կուսակցական-քաղաքական ուսուցման սիստեմի տեսական սեմինարներն ու քաղդպրոցները, որտեղ ընդգրկված է ուսուցիչների ճնշող մեծամասնությունը: Դպրոցների պատասխանատու աշխատողների զգալի մասը կատարում է պրոպագանդիստական աշխատանք, նրանցից շատերը «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքների դասախոսներ են:

Ժողովրդական կրթության բաժինները, դպրոցների դիրեկցիաները, տեղական կուսակցական կազմակերպությունների հետ համատեղ, լայն աշխատանք են ծավալել մանկավարժական կոլեկտիվների յուրաքանչյուր անդամի կողմից կուսակցության XXVI համագումարի նյութերի խոր ուսումնասիրության նպատակով:

Ժողովրդական կրթության բնագավառի աշխատողների գաղափարատեսական պատրաստականության գործի հետագա բարելավմանը մեծապես խթանեց Մոսկվա քաղաքի ուսուցիչների «Յուրաքանչյուր ուսուցչին՝ բարձրագույն քաղաքական կրթություն» նախաձեռնության տարածումը հանրապետությունում: Այս ասպարեզում տարվող աշխատանքները կոորդինացնելու, դրանք ավելի արդյունավետ դարձնելու համար մինիստրության կոլեգիայի 1980 թ. հոկտեմբերի 18-ի որոշմամբ հասարակական հիմունքներով ստեղծվել է մանկավարժական կադրերի գաղափարատեսական պատրաստականության կատարելագործման հարցերով զբաղվող խորհուրդ, որի կազմում ընդգրկված են ուսուցիչներ, գիտնականներ, կուսակցական, սովետական ու արհմիութենական աշխատողներ: Խորհուրդն ուսումնասիրել և կոլեգիայի քննարկմանն է ներկայացրել ուսուցիչների գաղափարատեսական պատրաստականության մարզում տարվող աշխա-



տանքների վիճակը Վարդենիսի և Մասիսի շրջաններում: Կոնկրետ միջոցներ են ձեռնարկվել Երևան, Լենինական, Կիրովական քաղաքների և քաղաքամերձ շրջանների դպրոցների ավելի շատ ուսուցիչներ ընդգրկելու ՀԿԿ Կենտկոմի մարքսիզմ-լենինիզմի համալսարանի գաղափարական կադրերի ֆակուլտետի կոմունիստական դաստիարակության բաժնում:

Մանկավարժական կադրերի գաղափարատեսական պատրաստականության
գործում զգալի աշխատանք են կատարում ուսուցիչների որակավորման բարձ-
րացման ուսումնամեթոդական հիմնարկությունները: Ուսուցիչների կատարե-
լագործման հանրապետական և քաղաքային ինստիտուտների դասընթացների
և սեմինարների ուսումնական պլաններում մեծ տեղ է հատկացված մարքս-լե-
նինյան տեսության հարցերին: 1976—80 թթ. մանկավարժական ընթերցումների
թեմաների զգալի մասը նույնպես նվիրվել է գաղափարական, քաղաքական դաս-
տիարակության խնդիրներին:

Սովետական դպրոցի զարգացման արդի փուլում ավելի է մեծանում ման-
կավարժական կադրերի կողմից մարքս-լենինյան տեսության խոր և բազմա-
կողմանի ուսումնասիրության անհրաժեշտությունը:

Անցած հինգ տարիներին հանրակրթական դպրոցների մանկավարժական
կադրերի որակավորման բարձրացմանը նկատելիորեն նպաստեց ուսուցիչների
ատեստացիան: Այն հնարավորություն ընձեռեց հրապարակայնորեն գնահատե-
լու յուրաքանչյուր ուսուցչի, մանկավարժական կոլեկտիվի աշխատանքը, առա-
վել խթանելու նրանց գաղափարատեսական մակարդակի ու աշխատանքի ար-
դյունավետության բարձրացմանը, ավելի հետաքրքրական ու բովանդակալից
անցկացնելու դասապրոցեսը, որի ընթացքում նրանք սկսեցին լայնորեն օգ-
տագործել ուսումնադիտողական պարագաներ և ուսուցման տեխնիկական մի-
ջոցներ:

Ատեստացիան վերհանեց շատ ուսուցիչների՝ իրենց գործի ջանադիր նվի-
րակների լուրջ հաջողությունները, հանրապետության մանկավարժներից 58-ը
արժանացել է ուսուցիչ-մեթոդիստի, 144-ը՝ ավագ ուսուցչի կոչման, 1268 ուսու-
ցիչ պարգևատրվել է «Հանրապետության լուսավորության գերազանցիկի»
կրծքանշանով, 1711-ը՝ ՀՍՍՀ Գերագույն սովետի պատվոգրով:

Ատեստացիան նպաստեց մանկավարժական կադրերի որակի բարձրացմա-
նը: 1433 ուսուցիչ ընդունվեց և սովորում է հեռակա մանկավարժական ինստի-
տուտներում, 652-ը, չսպասելով ատեստավորման, ազատվեց ու տեղափոխվեց
այլ աշխատանքի, մանկավարժի կոչմանը չհամապատասխանելու համար 65
ուսուցիչ ազատվեց աշխատանքից:

Միաժամանակ պետք է նշել, որ մանկավարժական բոլոր կոլեկտիվներում
չէ, որ ատեստացիան նախապատրաստվեց և անցկացվեց ինչպես հարկն է:
Առանձին դպրոցների դիրեկտորներ բավարար աշխատանք չկատարեցին ատես-
տավորվող յուրաքանչյուր ուսուցչի գործունեությունն ամբողջովին ուսումնասի-
րելու և այն օբյեկտիվորեն գնահատելու հարցում: Հանրապետության ժողովըր-
դական կրթության մարմինների կարևոր խնդիրներից է ուսուցիչների ատեստա-
վորումը վերածել նրանց իսկական հասարակական ստուգատեսի, որպեսզի այն
խթանի նրանց ստեղծագործական նախաձեռնությունը, նպաստի վարպետու-
թյան բարձրացմանն ու որակական աճին, դպրոցում ուսումնադաստիարակչա-
կան պրոցեսի հետագա կատարելագործմանը:

Մանկավարժական կադրերի որակավորման բարձրացման գործում վճռա-
կան նշանակություն ունի երիտասարդ մասնագետների հետ տարվող աշխա-
տանքը: ՍՍՀՄ լուսավորության մինիստրի 1974 թ. մարտի 27-ի՝ «Բարձրագույն
մանկավարժական ուսումնական հաստատություններն ավարտած երիտասարդ
մասնագետների ստաժավորման մասին» կարգադրությամբ 1974—75 ուստար-
վանից հանրապետության հանրակրթական դպրոցներում աշխատանքի նշա-
նակված նորավարտ մասնագետների համար կազմակերպվում է ստաժավորում:

Ինչ խոսք, դյուրին չէ բուհից անմիջական աշխատանքային գործունեության
անցնելը, քանի որ սկսնակ մասնագետները չունեն փորձ, երբեմն նաև՝ դժվա-

րությունների հաղթահարման վճռականություն։ Ահա թե ինչու նրանց առաջին քայլերը դպրոցում կարիք ունեն ամենօրյա աջակցության և օգնության։

Երիտասարդ մասնագետների ստաժավորման աշխատանքների արդյունավետության հիմնական գրավականը նրա կոմպլեքսային լուծումն է, որը, սակայն, մեզ մոտ երբեմն չի ապահովվում։

Այստեղ հատկապես անելիքներ ունեն մանկավարժական ինստիտուտները, որոնք մշտական կապ պետք է պահպանեն իրենց նախկին սաների հետ և օգնեն նրանց աշխատանքային գործունեության սկզբնական դժվարին շրջանում։

Հանրապետության ուսուցչական կոլեկտիվի գրեթե մեկ հինգերորդն են կազմում երիտասարդ մասնագետները, և նրանց աշխատանքային ակտիվության ու ստեղծագործական նախաձեռնության ապահովումը կարևոր նախապայման է դպրոցի առջև ծառացած խնդիրների հաջող լուծման գործում։ Լուսավորության մինիստրությունը, ուսուցիչների կատարելագործման ինստիտուտները պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրեն նրանց շրջանում տարվող աշխատանքների բարելավմանը։

Այդ նպատակն է հետապնդում և լուսավորության մինիստրության՝ շրջանային և քաղաքային ժողկրթության բաժիններին ուղղված հանձնարարականը երիտասարդ մասնագետների ստաժավորման աշխատանքների որակը բարձրացնելու վերաբերյալ, որով նրանց ուշադրությունը հրավիրվել է երիտասարդ ուսուցիչների աշխատանքի բարոյական խրախուսման վրա։

Այսպիսով, դպրոցի բազմաբեղուն գործունեության հաջողությունն ամենից առաջ պայմանավորված է ուսուցչով. հիմնականում նա է ուսումնադաստիարակչական աշխատանքների կազմակերպողը, ուստի և նրա գաղափարական, մասնագիտական, մեթոդական պատրաստականության բարձրացման և մանկավարժական վարպետության կատարելագործման հարցերն այսուհետ ևս պետք է մշտապես գտնվեն ժողովրդական կրթության մարմինների ուշադրության կենտրոնում։

---



# ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

Ս. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՀԻՄՔԸ սկզբնական կուսակցական կազմակերպություններն են։ ՍՄԿԿ կանոնադրության այս լակոնիկ դրույթը խոր իմաստ ու բովանդակություն ունի։ Սկզբնական կուսակցական կազմակերպությունը, իրոք, այն ամուր հիմքն է, որի վրա խարսխվում է կուսակցությունը և որի միջոցով մասսաներին է հասցնում իր գաղափարները, իրականացնում իր դիրեկտիվներն ու որոշումները։

Զարգացման բոլոր փուլերում ՍՄԿԿ-ն հենվել է սկզբնական կազմակերպության վրա, նրա միջոցով ամրապնդել կապը մասսաների հետ, իրագործել կուսակցության, երկրի ու սովետական ժողովրդի համար կենսական նշանակության բազում խնդիրներ, ապահովել սոցիալիզմի լիակատար հաղթանակը։ Այդ ամենի պերճախոս վկայությունը կուսակցության անցած փառավոր ուղին է, խաղաղ ստեղծագործ աշխատանքում և պատերազմական փորձություններում կուսկազմակերպությունների ծավալած բազմաբեղուն և արգասավոր գործունեությունը, կոմունիստների ցուցաբերած աշխատանքային մեծագործությունները և մարտական անձնուրաց խիզախությունը։ Կոմունիստները միշտ և ամենուրեք գտնվել են տնտեսական ու սոցիալական խնդիրների լուծման առաջավոր դիրքերում, քայլել աշխատավորական կոլեկտիվների ավանգարդում, անկուսակցական մասսաներին տարել իրենց ետևից, խանդավառել նրանց իրենց օրինակով ու հայրենանվեր գործերով։ Եվ միանգամայն տեղին է ՍՄԿԿ XXVI համագումարի բարձր գնահատականը՝ «Կոմունիստական շինարարության մեծ ու բազմազան խնդիրների լուծման գործում առաջնակարգ դեր է պատկանում սկզբնական կուսակցական կազմակերպություններին»։

ՍՄԿԿ XXVI համագումարը գիտականորեն մշակեց մեր երկրի տնտեսական, սոցիալական ու քաղաքական զարգացման մոտակա և երկարաժամկետ խնդիրները, որոնց լուծման հաջողությունը մեծապես պայմանավորված է սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվությամբ, նրանց ձեռներեցությամբ ու մարտունակությամբ։

Ինչպես միշտ, վերջին տարիներին ևս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քանիցս անդրադարձել է ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում սկզբնական կուսկազմակերպությունների գործունեության բարելավման հարցերին, նշել նրանց ակտիվության բարձրացման ուղիները։ Այդ ամենը բխում է հասուն սոցիալիզմի պայմաններում սովետական ժողովրդի ավանգարդի՝ կոմունիստական կուսակցության հարաճուն դերի անհրաժեշտությունից։

Սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվության բարձրացման՝ կուսակցության վարած կուրսը հաշվի է առնում պատմականորեն հաստատված այն իրողությունը, որ նրանք գտնվում ու գործում են մասսաների բուն

խորքում, տնտեսական և կուլտուրական շինարարության առաջավոր գծում։ Կուսկազմակերպություններն իրենց բեղմնավոր գործունեությամբ ակտիվորեն նպաստում են կուսակցության քաղաքականության միահյուսմանը մասսաների կենդանի ստեղծագործության հետ, նրա առաջադրած տնտեսական ու սոցիալական կանխագծումների իրականացմանը, քաղաքական և գաղափարադաստիարակչական խնդիրների հաջող լուծմանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը։ Եվ կյանքը, իրոք, ապացուցել է, որ մեր կուսակցության հզորության ու մարտունակության աղբյուրը նրա ստորին օղակների՝ սկզբնական ու արտադրամասային կուսկազմակերպությունների, կուսխմբերի կազմակերպվածության և ակտիվության, նախաձեռնություն դրսևորելու, մասսաներին իրենց ետևից տանելու, կոլեկտիվների արտադրական, հասարակական-քաղաքական կյանքի վրա ներգործելու կարողության մեջ է։ Միավորվելով սկզբնական կուսկազմակերպություններում, կոմունիստներն առաջին հերթին այստեղ են անցնում գաղափարական դաստիարակության իսկական դպրոց, ձեռք բերում փորձ ու հմտություն, ձևավորվում որպես կուսակցության ու ժողովրդի գործի համար ակտիվորեն պայքարող գիտակից մարտիկներ։

Կուսակցության ստորին օղակների, մասնավորապես սկզբնական կուսկազմակերպության առավելագույն ակտիվությունը ենթադրում է հոգատարություն ցուցաբերել հանրային արտադրության զարգացման, նյութական բարիքների բազմապատկման նկատմամբ, հետևողականորեն խորամուխ լինել աշխատավորական կոլեկտիվների արտադրական կյանքին առնչվող բազմազան խնդիրների մեջ, ընդհանրացնել ձեռք բերած նվաճումները, պարզել թերությունների ու թերացումների պատճառները, հայտնաբերել ու գործողության մեջ դնել գործերի վիճակի բարելավման նոր ռեզերվներ ու հնարավորություններ, առավելագույն կարգ ու կանոն սահմանել բոլոր տեղամասերում, մշակել հետագա առաջընթացի ճիշտ ուղիներ ու միջոցներ։

Հանրապետության առաջավոր կոլեկտիվների արտադրական նվաճումները, սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած արգասավոր գործունեությունը, կազմակերպական, քաղաքական ու գաղափարադաստիարակչական աշխատանքի ուսանելի փորձը առաջին հերթին նրանց ակտիվության աճի արդյունք են։ Այս առումով ուշագրավ գործեր կան նաև Հոկտեմբերյանի շրջանի շատ կուսկազմակերպություններում։

Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսությունը շրջանի խոշոր տնտեսություններից է, մեծ է նրա տեսակարար կշիռը շրջանի գյուղատնտեսական արտադրության մեջ։ Կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունն իր շարքերում միավորում է 91 կոմունիստների, որոնց գերակշռող մասն աշխատում է հանրային արտադրության վճռական տեղամասերում։

Հանրահայտ ճշմարտություն է՝ մարդկանց դրական ու բացասական հատկանիշները, կոլեկտիվների ակտիվությունն ու պասսիվությունը դրսևորվում են հատկապես փորձության պահերին։ 1980 թվականը դժվարին տարի էր նաև Հոկտեմբերյանի շրջանի համար։ Ցրտերը մեծ վնաս էին պատճառել ցանքադաշտերին, խաղողի ու պտղատու այգիներին։ Տուժել էր նաև Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսությունը։ Եվ տարերային աղետի հետևանքների մեղմացման ու վերացման հարցը հատուկ քննարկման առարկա դարձավ սկզբնական կուսկազմակերպության ժողովում։ Կոլտնտեսության նախագահ Ս. Խաչատրյանի սկզբունքային զեկուցումը մտքերի աշխույժ փոխանակության առիթ տվեց։ Կոմունիստները քննարկվող հարցի վերաբերյալ հայտնեցին իրենց նկատառումները, արեցին գործնական առաջարկություններ, մասնավորապես առաջ քաշեցին լրացուցիչ կոմպլեքսային ագրոմիջոցառումների անցկացման խնդիրը։ Ժողովը որոշակի հանձնարարականներ տվեց կոլտնտեսության վարչությանը, մասնագետներին, բրիգադավարներին, սահմանեց լրացուցիչ ագրոմիջոցառումների անցկացման ժամկետները, նախատեսեց դրանց համար պատասխանատու մարդկանց։

Ժողովից անմիջապես հետո կոլտնտեսությունում ստեղծվեց մոբիլիզացիոն վիճակ։ Կուսբյուրոն ու կոլտնտեսության վարչությունը գործնական քայլեր արեցին կուսժողովի որոշումը կենսագործելու համար։ Նրանք սահմանեցին



բյուրոյի ու վարչության անդամների և ակտիվ կոմունիստների հերթապահություն՝ ագրոմիջոցառումների անցկացման ընթացքին հետևելու, տեղում թերությունների ու թերացումները կանխելու համար։ Այգիների բուժման գործը վստահվեց առավել փորձառու կոլտնտեսականներին։ Կոմպլեքսային լրացուցիչ միջոցառումները հատկապես հաջողությամբ իրականացվեցին կոմունիստներ Ս. Մեսրոպյանի, Ա. Մնացականյանի, Հ. Սարգսյանի, Գ. Սարգսյանի ղեկավարած բրիգադներում։ Առաջ անցնելով՝ ասենք, որ նրանք կատարեցին խաղողի արտադրության ոչ թե նվազեցված, այլ հնգամյա պլանով նախատեսված առաջադրանքները։

Օգոստոսին արդեն կուսակցական ժողովում քննարկվեց խաղողի բերքահավաքի նախապատրաստման, իսկ սեպտեմբերին՝ անցկացման վիճակը և ամփոփվեցին տարերային աղետի հետևանքների վերացման նպատակով գործադրված ջանքերը։ Նշվեց, որ էտի, ջրման, բուժման և լրացուցիչ այլ միջոցառումների իրականացմամբ հաջողվել է համեմատաբար լավ բերք աճեցնել։ Որոշվեց սոցիալիստական գործարար մրցություն ծավալել բրիգադների միջև, սահմանվեցին արհմիութենական ու կոմերիտական կոմիտեների, մասնագետների, բրիգադավարների, «Այգեգործ» բազմատպաքանակ թերթի խմբագրության, վերահսկողության խմբի անելիքները խաղողի բերքահավաքի ողջ ընթացքում։

Ժողովը խթանեց խաղողի բերքահավաքի հաջող նախապատրաստումն ու անցկացումը։ Կոլտնտեսության վարչությունը կազմեց բերքահավաքի կայուն գրաֆիկ։ Տեմպերի տախտակում ցուցադրվում էին ամենօրյա արդյունքները՝ ըստ բրիգադների։ Հրապարակայնությունը գործին մեծապես օգնում էր, ստեղծում մոբիլիզացիոն իրադրություն։ Կուսբյուրոն ու վարչությունը բյուրոյի ու վարչության անդամներից կցումներ կատարեցին բրիգադներին։ Նրանք հետևում էին բերքահավաքի ընթացքին, տեղում կանխում թերությունները։ Դաշտում կահավորվեց հատուկ սենյակ, որը մի տեսակ շտաբի դեր էր կատարում։ Այստեղ հերթապահում էին բյուրոյի ու վարչության ներկայացուցիչները, որոնք հետևում էին բերքահավաքի ընթացքին ու բերքի պահպանությանը։

Խաղողի բերքահավաքն անցավ հաջողությամբ. կոլտնտեսությունն ստացավ 2220 տոննա խաղող, մինչդեռ նվազեցված պլանը 1700 տոննա էր։ Բրիգադավար Ս. Մեսրոպյանը կուսակցական ժողովին տված իր խոսքի տերը եղավ։ Նրա ղեկավարած կոլեկտիվը պլանից ավելի հավաքեց 107,5 տոննա խաղող՝ հեկտարի բերքատվությունը հասցնելով 144,5 ցենտների. դա բարձր ցուցանիշ էր շրջանի պայմաններում։

Այսպիսով, կուսկազմակերպության ու կոմունիստների ցուցաբերած բարձր ակտիվությունը, կուսբյուրոյի ու կոլտնտեսության վարչության արդյունավետ համագործակցությունը արգասավոր եղան։ Տնտեսությունը տասներորդ հնգամյակը եզրափակեց խաղողի, բանջարաբոստանային կուլտուրաների, կարտոֆիլի, հացահատիկի, մսի, բրդի ու ձվի արտադրության առաջադրանքները գերակատարած և մեկ միլիոն 885 հազար ռուբլու օգուտով։

Սկզբնական կուսկազմակերպության ակտիվությունը դրսևորվում է ո՛չ միայն արտադրության խնդիրների մեջ խորանալու, դրանք լուծելու արդյունավետ միջոցներ ձեռնարկելու և մոբիլիզացիոն վիճակ ստեղծելու մեջ, այլև այն բանում, որ տեսնում է թերությունները, չի կոծկում դրանք, քննադատաբար է վերաբերվում իր գործունեությանը, ուղիներ է որոնում անտեսված հարցերը լուծելու համար։ Այստեղ նրանից պահանջվում է հետևողականություն, ռեզերվներն ու հնարավորությունները գործի դնելու ունակություն։ Նման ոճը հատուկ է Հոկտեմբերի կոլտնտեսության կուսկազմակերպությանը։ Կուսբյուրոյի քարտուղար Գ. Գայստյանը և կոլտնտեսության նախագահ Ս. Խաչատրյանը չեն թաքցնում, որ կաթի արտադրության ասպարեզում իրենք ետ են մնում, բայց համոզված են, որ տնտեսությունն այստեղ ևս գործերը շուտով կշտկի։

Կուսակցական ժողովների ու բյուրոյի նիստերի արձանագրությունները վկայում են, որ անասնապահության զարգացման հարցերը, մասնավորապես կաթի արտադրության ավելացման խնդիրը, քանիցս դարձել են գործարար քննարկման առարկա, բացահայտվել են այդ բնագավառի ետ մնալու պատճառները։ Առաջին բանը, որ նկատելի է, քննադատական վերաբերմունքն է թերու-

թյունների ու թերացողների հանդեպ, գործերը կարգավորելու՝ կոմունիստների վճռականությունը։

— Կաթնապրանքային ֆերման,— ասում է Ս. Խաչատրյանը,— կաթի արտադրության հարցում խիստ թերացել է, պլանը չի կատարել, գլխավոր պատճառները եղել են կադրերի փոփոխությունը, կովերի որակական ոչ բավարար կազմը, կերի թույլ բազան։ Կուսժողովի որոշմանը համապատասխան՝ բյուրոյի հետ միասին առաջին հերթին լուծել ենք կադրերի հարցը. ֆերմայի վարիչ ենք նշանակել Խ. Ջավոյանին. բարձրագույն կրթությամբ մասնագետ է ու լավ կազմակերպիչ, երկար տարիներ տնտեսությունում անասնաբույժ է եղել։ Բարելավում ենք հոտի մայրական կազմը. անցյալ տարվանից սկսած առանձնացրել ենք ցեղային լավ հատկանիշներ ունեցող 200 գլուխ էգ մատղաշ, ձեռք ենք բերել 120 գլուխ շվից ցեղի երինջ, նախատեսել ենք 20—25 ցեղական կով գնել հանրապետության տոհմային տնտեսություններից։ Կերի կայուն բազա ստեղծելու նպատակով ընդարձակել ենք առվույտի ցանքատարածությունը. այս տարի լրացուցիչ կցանենք ևս 20 հեկտար։ Եվ, վերջապես, գործարար սոցմրցության կազմակերպումն ու նյութական շահագրգռության բարձրացումը. կուսկազմակերպության հետ միասին սահմանել ենք փոխանցիկ հուշադրոշներ ու դրամական մրցանակներ՝ առաջավոր կթվորներին ու անասնապահներին խրախուսելու համար։ Մեկ կովից տարեկան 2220 կիլոգրամ կաթը, որ 1980 թվականին ստացանք, մեզ չի գոհացնում։ Կոմունիստ Քնքույշ Խաչատրյանը, օրինակ, իր խնամած ամեն մի կովից 3200 կիլոգրամ ստացավ։ Երեք հազարի սահմանը հատել են նաև Ռոզա Հովհաննիսյանը, Աստղիկ Անտոնյանը և Հերիքնազ Հակոբյանը։ Իսկ դա նշանակում է, որ մենք պոտենցիալ հնարավորություններ ու դեռևս թաքնված ռեզերվներ ունենք՝ կովերի կաթնատվությունը էապես բարձրացնելու և այդ բնագավառում ևս վերելք ապահովելու համար։ Նախատեսված միջոցառումների հաջող իրականացմամբ հնարավոր է 200—250 տոննա լրացուցիչ կաթ ստանալ։

Սկզբնական կուսկազմակերպության բարձր ակտիվության, ինչպես նաև մարտունակության կարևոր չափանիշ է ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ նրա վերահսկողության իրավունքի անշեղ իրականացումը։ «Անկախ նրանից,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— խոսքը վերաբերում է կադրային հարցերին, տնտեսական պլանների կատարմանը, թե մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավմանը, կուսկազմակերպությունները պետք է ցուցաբերեն սկզբունքայնություն, տեղի չտան ադմինիստրացիայի կամքին, երբ նա ճիշտ չի վարվում։ Մի խոսքով՝ հաստատակամորեն իրագործեն կուսակցության գիծը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 116—117)։

Համագումարի այս պահանջի կատարման առումով ուսանելի շատ բան կա շրջանի Գետաշեն ու Հոկտեմբեր գյուղերի կոլտնտեսային, Խանջյանի անվան սովխոզի և այլ կուսկազմակերպությունների գործունեության մեջ։ Այդ տնտեսությունների ղեկավարները, մասնագետները, բրիգադավարները և ֆերմաների վարիչները գործերի վիճակի մասին պարբերաբար հաշիվ են տալիս կուսժողովներում ու բյուրոյի նիստերում։ Շատ կարևոր է, որ կուսկազմակերպությունները քննարկում են արտադրության զարգացմանը, դրա հեռանկարային խնդիրներին առնչվող հարցեր։

Ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրավունքը բնավ էլ չի նշանակում, թե կուսկազմակերպությունը պետք է հանդես գա խնամակալի դերում, սահմանափակի ադմինիստրացիայի իրավունքները և ստանձնի նրա որոշ պարտականությունների կատարումը։ Ընդհակառակը, այն ենթադրում է սկզբնական կուսկազմակերպության ու ադմինիստրացիայի համերաշխ ու համագործակցված աշխատանք։ Եվ հատկանշական է, որ Գետաշենի, Հոկտեմբերի ու Խանջյանի անվան տնտեսություններում ստեղծվել է այդպիսի փոխըմբռնման իրադրություն։ Իսկ դա արտադրական հարցերի հաջող լուծման, կուսակցական ու աշխատանքային կարգապահության ամրապնդման, կոլեկտիվներում բարոյահոգեբանական առողջ մթնոլորտի հաստատման երաշխիք է։ Ուշագրավ է Հոկտեմբերի կոլտնտեսության անցած հաշվետու-ընտրա-



կան ժողովում կոմունիստների արտահայտած այն միտքը, թե կուսբյուրոն ու կոլտնտեսության վարչությունը համատեղ ջանքերով կարողացան շատ բան անել տարերային աղետի հետևանքները վերացնելու համար և ապահովել առաջադրանքների կատարումը։ Կամ՝ կոլտնտեսության նախագահ Ս. Խաչատրյանի կարծիքը. «Կուսբյուրոն և վարչությունը համագործակցված են աշխատում, հաշվի են առնում միմյանց կարծիքները, կուսակցական ժողովի և բյուրոյի նիստի որոշումների կատարումը մեզ համար պարտադիր օրենք է»։ Տնտեսության համար կենսական նշանակություն ունեցող շատ հարցեր են լուծվել Գետաշենում՝ կուսկազմակերպության միջամտությամբ ու նրա որոշումը կատարելու վարչության ցուցաբերած պատրաստակամության շնորհիվ։

Սկզբնական կուսկազմակերպությունը աշխատավորական կոլեկտիվի միջուկն է, նրա կազմակերպիչն ու ավանգարդը։ Դա բխում է ՍՄԿԿ-ի՝ սովետական ժողովրդի ավանգարդն ու առաջնորդը լինելու իրողությունից։ Մարտունակ կուսկազմակերպությունը միշտ և բոլոր պայմաններում կարող է գլխավորել մասսաների աշխատանքային խանդավառությունը, նրանց տանել իր ետևից, ապահովել իր ղեկավարած կոլեկտիվում կուսակցության առաջադրած տնտեսական ու սոցիալական խնդիրների անվերապահ լուծումը։ Ակտիվ, նախաձեռնող կուսկազմակերպությունն է միայն ունակ հայտաբերելու մարդկանց լավագույն հատկանիշները, դրսևորելու արդյունավետ ուղիներ, բարձրացնելու կոմունիստների ավանգարդային դերն արտադրության մեջ ու հասարակական-քաղաքական աշխատանքում, նրանց մասնակից դարձնելու արտադրության կառավարմանը, կոլեկտիվի կյանքի բոլոր հարցերի լուծմանը։

Սկզբնական կուսկազմակերպության՝ աշխատավորական կոլեկտիվի ղեկավար միջուկը լինելու իրողությունն ավելի վառ է արտահայտվում, երբ նրանում միավորված կոմունիստները համերաշխորեն ու ակտիվորեն են հանդես գալիս որպես արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման նպատակով ծավալված սոցիալիստական մրցության առաջամարտիկներ, հանրային բարիքների նկատմամբ տիրոջ վերաբերմունքի, նորի ու առաջավորի պրոպագանդիստներ ու կազմակերպիչներ։ Կոմունիստների դերի հաճախ բարձրացումը, նրանց անձնական դրական օրինակը, իրենց լավ գործերով ուրիշներին համակելը նպաստում են կուսկազմակերպության հեղինակության աճին, տնտեսավարման մակարդակի վրա նրա ազդեցության ուժեղացմանը, մարդկանց գաղափարական, բարոյական ու աշխատանքային դաստիարակության բարելավմանն ու կատարելագործմանը։

Այդ ամենի գործնական արտահայտությունը կարելի է տեսնել Գետաշենի, Հոկտեմբերի, Նալբանդյանի կոլտնտեսային, Խանջյանի սովխոզային սկզբնական կուսկազմակերպություններում։ Ահա կոմունիստի ակտիվության դրսևորման մի բնորոշ օրինակ Գետաշենի կուսկազմակերպությունից։ ՍՄԿԿ անդամության թեկնածու Անահիտ Մկրտչյանը օղակավարուհի էր № 6 առաջավոր բրիգադում։ Նրա ղեկավարած կոլեկտիվը քայլում էր մրցության ավանգարդում, հաջողությամբ կատարում առաջադրանքները և լավ վարձատրվում։ Մինչդեռ № 3 բրիգադում գործերը բարեհաջող չէին, դաշտային աշխատանքները ձգձգվում էին, առաջադրանքները՝ թերակատարվում։ Այդ բրիգադն ուժեղացնելու նպատակով կուսբյուրոն ու կոլտնտեսության վարչությունն անհրաժեշտ գտան Անահիտին՝ որպես օղակավարուհի, ուղարկել այնտեղ։ Երիտասարդ կոմունիստը, իհարկե, գիտեր գործի դժվարությունը, սակայն համաձայնեց անտրտունջ։ Եվ նա ստանձնեց ետ մնացող բրիգադի ետ մնացող օղակներից մեկի ղեկը։ Կարճ ժամանակում կոլտնտեսականներին համախմբեց շուրջը, կարգավորեց գործերը։ Այժմ Անահիտի օղակը տնտեսության առաջավոր տեղամասերից է։

Կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Օ. Մկրտչյանը դրվատանքով է արտահայտվում նաև երիտասարդ կոմբայնավար Ջանիբեկ Պողոսյանի, բրիգադավարներ Յուրիկ Կոստանյանի, Դմիտրի Պետրոսյանի, օղակավարուհի Անահիտ Մկրտչյանի, կաթնապրանքային ֆերմայի վարիչ Մարգար Մուրադյանի և մյուս կոմունիստների մասին, որոնք անձնական լավ օրինակ են տալիս, քայլում են մրցության առաջավորների շարքում, ապրում տնտեսության վերելքի հոգսերով, իրենց արժանի ներդրումն անում այդ գործում։

Կոմունիստի ավանգարդային դերի լավ օրինակ է տալիս Խանջյանի անվան սովխոզի բրիգադավար Իսրայել Արոյանը։ «Ակտիվ կոմունիստ է, նախաձեռնող, գործը հասկացող»— այսպես է բնութագրում նրան կուսբյուրոյի քարտուղար Բ. Թևոսյանը։ Իսկ սովխոզի դիրեկտոր Ն. Առաքելյանը շարունակում է քարտուղարի խոսքը. «Բանվոր էր, հեռակա կարգով ավարտեց Հոկտեմբերյանի գյուղտեխնիկումը, 1968 թվականին առաջադրվեց բրիգադավար։ Մենք գրեթե չենք խառնվում նրա գործերին։ Եթե մյուս բրիգադներում պիտի լինես ու հուշես, թե այս կամ այն գործն է արվելու, ապա Իսրայելին հարկ չի լինում ասել, ինքն է կազմակերպում։ Իր նախաձեռնությամբ վերացրել է բրիգադի դաշտերի միջնակներն ու հողաթմբերը և ընդարձակել հողատարածությունը, հիմնել նոր այգիներ։ Անցած տարվա աշնանն էլ, այգին լիարժեք դարձնելու նպատակով, լրացման կարգով տնկել է խաղողի 1000 արմատակալ, կազմակերպել ջրումը դույլերով ու ցիստեռներով, որպեսզի հասունացած վազերի բերքը չփչանա։ Արմատակալները լավ աճել են, այգին դարձել է լիարժեք։ Հեկտարից 110 ցենտներ խաղող, 140 ցենտներ պտուղ է ապահովում»։

Իսկ նախաձեռնող, ստեղծագործաբար աշխատող կոմունիստները Խանջյանի անվան սովխոզում շատ են՝ մեխանիզատոր Արշավիր Առաքելյանը, անասնապահ Վարշամ Զաքարյանը, կաթնապրանքային ֆերմայի վարիչ Լենդրուշ Գալստյանը։

Սկզբնական կուսկազմակերպության բարձր ակտիվությունն ու մարտունակությունն ապահովվում են նախ և առաջ նրա անդամների ակտիվությամբ։ Իսկ կոմունիստների ակտիվությունն արտահայտվում է ո՛չ միայն արտադրության մեջ նրանց ցուցաբերած ավանգարդային դերով, այլև կազմակերպության կյանքի բոլոր բնագավառներին ցույց տված գործարար մասնակցությամբ։ Կուսկազմակերպություններն իրենց զինանոցում ունեն կոմունիստներին կուսակցական աշխատանքում ներգրավելու, կուսակցական կյանքի հետ սերտորեն կապելու, նրանց ակտիվությունը բարձրացնելու՝ պրակտիկայում ստուգված ու իրենց արդարացրած բավականաչափ շատ ձևեր ու մեթոդներ։

Այդ համակարգում, որպես կոմունիստների ակտիվության բարձրացման վճռական գործոն, առանձնակի կարևորություն ունի կուսակցական հանձնարարությունը։ Այս գործի կազմակերպման լավ փորձ է կուտակել Հոկտեմբերյանի պահածոների գործարանի կուսկազմակերպությունը (կուսբյուրոյի քարտուղար՝ Մ. Մկրտչյան)։ Այստեղ կոմունիստներից շատերն ունեն մշտական հանձնարարություններ։ Մյուսներին տրվում են ժամանակավոր, ընթացիկ հանձնարարություններ, որոնց կատարումը նպաստում է կուսակցական կյանքին նրանց ակտիվ մասնակցությանը։ Կազմակերպության 75 անդամներ կատարում են քաղինֆորմատորի, ագիտատորի, ժողվերահսկողության խմբի անդամի և այլ պարտականություններ։

Գործարանի կուսբյուրոն կիրառում է կոմունիստների ակտիվության բարձրացման զանազան միջոցներ։ Քննություն բռնած ձև է կոմունիստների և կուսխմբերի կազմակերպիչների ինֆորմացիաների ունկնդրումը բյուրոյի նիստերում և արտադրամասային կազմակերպությունների ժողովներում։ Բյուրոյի նիստում իրենց պարտականությունների կատարման վերաբերյալ հաղորդումներով հանդես են եկել ՍՄԿԿ անդամներ Հ. Գևորգյանը, Թ. Մանուկյանը, Գայանե Դավթյանը։ Նրանց հանձնարարվել է իրենց արտադրամասերի կոմունիստների հետ միասին մոբիլիզացնել կոլեկտիվների ուժերը՝ սարքավորումների նորոգման և սեզոնի նախապատրաստման աշխատանքները ժամանակին ավարտելու համար։ Քննարկելով պահածոների № 1 և № 5, չափիչ-ստուգիչ և ավտոմատիկայի արտադրամասերի կուսխմբերի կազմակերպիչների հաշվետվությունը՝ բյուրոն արտադրամասային կազմակերպությունների առջև խնդիր դրեց՝ բարձրացնել կուսխմբերի դերն ու պատասխանատվությունը կուսակցական, պետական ու աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու և սոցիալիստական սեփականությունը պահպանելու գործում։

Պահածոների գործարանի և Գետաշենի կոլտնտեսության կուսկազմակերպություններում արմատավորվել է այն պրակտիկան, երբ կուսակցական հանձնարարությունների կատարման մեջ ներգրավվում են նաև անկուսակցական այն



ակտիվիստները, որոնք ղեկավար աշխատանքում առաջքաշվելու թեկնածուներ են կամ կուսշարքերն ընդունվելու ռեզերվ։

Ակտիվ, մարտունակ կուսկազմակերպությունն անհաշտ է թերությունների հանդեպ, ամենայն օբյեկտիվությամբ ու սկզբունքայնությամբ պայքարում ու մարտնչում է այն ամենի դեմ, ինչն արգելակում է կոլեկտիվի առաջընթացը, անհանդուրժողականություն դրսևորում սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների, կուսակցական էթիկայի նորմերը ոտնահարողների նկատմամբ։ Խանջյանի անվան սովխոզում դեռևս 1979 թվականին շրջսովետի գործկոմի գյուղվարչության մասնագետների ստուգումներից պարզվել էր, որ Ս. Կարապետյանի ղեկավարած բրիգադում սխալ են կատարվել խաղողի այգիների մշակության ագրոմիջոցառումները և բերքի զգալի կորուստ տեղիք է տրվել։ Կուսկազմակերպությունը, քննարկելով այգիների մշակության ընթացքը, անդրադարձավ նաև Ս. Կարապետյանի հարցին։ Աղաղակող թերությունների, պլանների կատարումը սիստեմատիկաբար ձախողելու համար կազմակերպությունը նրան ազատեց բրիգադավարի պարտականությունից և ուղարկեց շարքային աշխատանքի։ Սակայն վերջինս երկու տարի չզբաղվեց հանրօգուտ գործով, կտրվեց կուսակցական կյանքից, անտեսեց կուսբյուրոյի և շրջկոմի նախազգուշացումներն ու խորհուրդները։ Ընթացիկ տարվա մայիսին սովխոզի կուսկազմակերպությունը քննարկեց նրա վարքագծի հարցը և վտարեց կուսակցության շարքերից։

Հոկտեմբերի կոլտնտեսության կուսկազմակերպությունը, աշխատանքը վատ կազմակերպելու համար, տուժարկել էր կաթնապրանքային ֆերմայի վարիչ Մ. Հովհաննիսյանին։ Իսկ երբ վերջինս կոպիտ կերպով խախտեց սոցիալիստական համակեցության կանոնները, կազմակերպությունը անհամատեղելի համարեց նրա մնալը կուսակցության շարքերում։

Սկզբնական կազմակերպության ակտիվության բարձրացման վճռական գործոն է կուսակցական ժողովը։ Ժողովը կազմակերպության բարձրագույն մարմինն է. այստեղ են ընդհանրացվում նրա գործունեության փորձն ու արդյունքները, վճռվում կոլեկտիվների համար կենսական նշանակություն ունեցող բոլոր հարցերը, մշակվում արտադրության զարգացման, հեռանկարային խնդիրների լուծման ուղիներն ու միջոցները, ընդունվում կոմունիստների կոլեկտիվ կամքն արտահայտող որոշումներ։ «Կուսակցական ժողովը,— ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXVI համագումարում,— այն վայրն է, որտեղ պետք է խորապես, լրջորեն քննարկվեն բոլոր հրատապ հարցերը» (ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը, էջ 120)։ Կուսակցական ժողովը ղեկավարման կոլեկտիվության և կազմակերպության կյանքը հարուստ բովանդակությամբ տոգորելու արդյունավետ միջոց է, կոմունիստների համակողմանի դաստիարակության դպրոց։ Լավ կազմակերպված ու անցկացված ժողովը կոմունիստների մեջ սերմանում է թերությունների, կուսակցության, սոցիալիստական ապրելակերպի նորմերից շեղվելու հանդեպ անհանդուրժողականություն։

Կուսակցական ժողովը կազմակերպության բարձրագույն մարմնի ու կոմունիստների դաստիարակության դպրոցի իր խնդիրը կարող է հաջողությամբ լուծել միայն այն դեպքում, երբ կոմունիստները կուսակցական կյանքի նկատմամբ ակտիվ վերաբերմունք դրսևորեն։ Ժողովը չի կարող արդյունավետ լինել, եթե կոմունիստները հավաքվում են որոշակի ժամերի՝ նախապես որոշված հռետորներին ունկնդրելու համար։ Պասսիվությունն ու անտարբերությունը ո՛չ միայն կուսակցական, այլև ամեն տեսակ աշխատանքի թշնամին են։ Ցավոք, դեռևս կան կազմակերպություններ, որտեղ ժողովներն անցնում են կոմունիստների պասսիվության պայմաններում, նրանք անտարբերություն են ցուցաբերում քննարկվող հարցերի նկատմամբ, հաճախ էլ ժողովներում ելույթ են ունենում միևնույն մարդիկ։ Հասկանալի է՝ նման ժողովը բացասաբար կանդրադառնա կազմակերպության, կոմունիստների ակտիվության աճի վրա։

ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի բյուրոն անցյալ տարվա նոյեմբերին քննարկեց «Կուսակցական ժողովների նախապատրաստման ու անցկացման պրակտիկան Գետաշենի, Նոր Ամասիայի և Տանձուտի սկզբնական կուսկազմակերպություններում» հարցը։ Բյուրոն նշեց, որ Գետաշենի և Նոր Ամասիայի կուս-

կազմակերպությունները ժողովներում քննարկվող հարցերը խորությամբ ու բազմակողմանիորեն նախապատրաստելու նպատակով ստեղծում են հանձնաժողովներ, որոնց կազմում ներգրավվում են մասնագետներ, կենսափորձ ունեցող կոմունիստներ, անկուսակցական ակտիվիստներ։ Հարցերի գործարար քննարկումն օգնել է տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծմանը։ Արժեքավորվեց հատկապես այն հանգամանքը, որ ժողովները նպաստել են կոմունիստների ակտիվության բարձրացմանը, ուժեղացել է դրանց ազդեցությունը կոլեկտիվի գործունեության և հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Մինչդեռ Տանձուտի կուսկազմակերպությունում հակառակ պատկերն է։ Բյուրոն արձանագրել է, որ այստեղ շատ դեպքերում ժողովներն անցել են ցածր մակարդակով և անհրաժեշտ ազդեցություն չեն ունեցել կոլտնտեսության առջև ծառացած խնդիրների լուծման, աշխատանքային կարգապահության ամրապնդման վրա։ Ժողովներում քննարկվել են սակավ կարևոր, միօրինակ հարցեր, դրանց մասնակցել են քիչ թվով կոմունիստներ։ Ժամանակին ընթացք չի տրվել կոմունիստների արծարծած հարցերին, հսկողություն չի սահմանվել ընդունած որոշումների կատարման նկատմամբ։ Հասկանալի է, նման ժողովները միայն կարող են գործին վնասել։ Եվ կուսշրջկոմի բյուրոն համապատասխան որոշում է ընդունել ժողովների անցկացման այս արատավոր պրակտիկային վերջ տալու համար։

Սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվության բարձրացումը մեծապես պայմանավորված է կուսակցական մարմինների ղեկավարման մակարդակով։ Այդ խնդիրը մշտապես գտնվում է ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի տեսադաշտում։ Բյուրոներում, պլենումներում քննարկված հարցերը դրա վկայությունն են։ Շրջկոմը քննարկում է ներկուսակցական, գաղափարադաստիարակչական, արտադրության կուսակցական ղեկավարման այնպիսի հարցեր, որոնք անմիջականորեն առնչվում են կուսկազմակերպությունների ակտիվության բարձրացման հետ։

Ուշագրավ է հատկապես «ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումների լույսի ներքո արտադրության կարևոր տեղամասերում կոմունիստների ուժերի տեղաբաշխման և պլանային առաջադրանքների կատարման գործում նրանց ավանգարդային դերի ապահովման նպատակով տարվող աշխատանքի վիճակը Նաիրիի սովխոզի սկզբնական կուսկազմակերպությունում» հարցի քննարկումը։ Բյուրոն սկզբունքային դիրքերից բացահայտել է տնտեսությունում և կուսկազմակերպությունում տեղ գտած լուրջ թերությունները, դրանց ծնող պատճառները։ Կուսկազմակերպությունը չի իրականացրել ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իր իրավունքը, կուսժողովներում և բյուրոյի նիստերում քննարկման չի դրել արտադրության կենսական հարցեր, կոմունիստների հաշվետվություններ, անբավարար ուշադրություն է նվիրել արտադրության կարևոր տեղամասերը կոմունիստներով ամրապնդելու գործին. մի շարք բրիգադներում, անասնապահական ֆերմայում և մեքենատրակտորային հավաքակայանում կա մեկական կոմունիստ, երբ դրանց կոլեկտիվները բաղկացած են 15—60 մարդուց։ ՍՄԿԿ շարքերը երիտասարդ կադրերով անբավարար համալրելու պատճառով կոմունիստների միջին տարիքը շատ բարձր է։ Թույլ է պահանջկոտությունը կադրերի նկատմամբ, գործնական քայլեր չեն արվում արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերն ապահովելու համար։ Այդ ամենի հետևանքով տնտեսությունում ձախողվում են պետական պլանների կատարումը, մեծ չափերի են հասնում անարտադրողական ծախսերը, տեղիք է տրվում հանրային ունեցվածքի շռայլումների ու փչացումների։

Շրջկոմի բյուրոն գործնական միջոցառումներ մշակեց կուսկազմակերպության գործունեության մակարդակը բարձրացնելու, նրա ակտիվության աճն ապահովելու համար, կազմակերպական միջոցների դիմեց տնտեսության ղեկավարությունն ամրապնդելու համար։ Նման սկզբունքային գնահատական է տրվել նաև կահույքի ֆաբրիկայի, շինանյութերի և շինարարական իրերի կոմբինատի և այլ կուսկազմակերպությունների աշխատանքին։



Կուսկազմակերպությունների ակտիվության հետագա աճի ապահովման գործում կարևոր նշանակություն ունի նրանց քարտուղարների և ընդհանրապես ընտրովի կուսակցական մարմինների կազմի բարելավումը։ Հոկտեմբերյանի շրջանի սկզբնական կազմակերպությունների 138 քարտուղարներից 86-ն ունեն բարձրագույն, 52-ը՝ միջնակարգ կրթություն։ Նրանց 35 տոկոսը կին է։ Շրջկոմում գործում է կուսակցական ակտիվի դպրոց, որտեղ ընդգրկված են կուսկազմակերպությունների քարտուղարներն ու նրանց տեղակալները, բյուրոների անդամները, կուսխմբերի կազմակերպիչները։ Կանոնավոր անցկացվող պարապմունքներում նրանք դեկուցումներ են լսում կուսակցական կյանքի բազմազան հարցերի վերաբերյալ։

Սկզբնական կուսկազմակերպության գլխավոր դեմքը նրա քարտուղարն է։ Եվ, բնականաբար, կազմակերպության գործունեության հաջողությունը պայմանավորված է նաև այն բանով, թե քարտուղարը կուսակցական աշխատանքի ինչպիսի փորձ ու անձնական հեղինակություն ունի կոմունիստների, աշխատավորական մասսաների շրջանում, ինչպես է ընկալում կուսակցության առաջադրած խնդիրները և պայքարում դրանց լուծման համար։ Գետաշենի կոլտնտեսության կուսկազմակերպության քարտուղար Օ. Մկրտչյանը տալիս է այդ ամենի լավագույն օրինակը։ Նրա մասին ասում են՝ իսկական կոմունիստ է, բարեխիղճ ու գործին նվիրված, կազմակերպչական ջիղ ունի, մեծ հեղինակություն է վայելում։ Իսկ կոլտնտեսության նախագահ Մ. Անտոնյանն այդ ամենին ավելացնում է. «Ես նոր մարդ եմ այստեղ, և քարտուղարը նեցուկ է ինձ, օգնում է ամեն ինչում։ Եվ շինարարական բրիգադի գործերն է լավ վարում։ Քիչ չէ. երեսուն տարի բրիգադավար է, տասը տարի՝ կուսկազմակերպության քարտուղար, անբասիր աշխատանքի համար էլ արժանացել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանի»։ Խանջյանի անվան և Արաքսի սովխոզների դիրեկտորներ Ն. Առաքելյանը և Մ. Սարգսյանը, Նորապատի կոլտնտեսության նախագահ Վ. Գևորգյանը կուսկազմակերպության քարտուղարի պարտականությունը կատարելիս են ձեռք բերել արտադրությունը կառավարելու արվեստ և այժմ հաջողությամբ ղեկավարում են իրենց վստահված տնտեսությունների գործերը։

Սկզբնական կուսկազմակերպությունն օժտված է լայն իրավունքներով, ունի բազում պարտականություններ, որոնց հստակ իրագործման ու կատարման հաստատուն երաշխիքը ինչպես ողջ կազմակերպության, այնպես էլ նրա յուրաքանչյուր անդամի ակտիվության բարձրացումն է։

---

# ԽԱՂԱՂ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԴԻՐՔԵՐՈՒՄ

**Ն. Վ. ՕԳԱՐԿՈՎ**
Զինված ուժերի գլխավոր շտաբի պետ—
ՍՍՀՄ պաշտպանության մինիստրի առաջին տեղակալ
Սովետական Միության մարշալ

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՆՇԱՆԱՎՈՐ պատմական իրադարձություն էր մեր կուսակցության, սովետական ժողովրդի, եղբայրական սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման կյանքում։ Նրա որոշումներում սահմանված են ՍՄԿԿ ներքին ու արտաքին քաղաքականության գլխավոր ուղղությունները, հիմնավորված է տասնմեկերորդ հնգամյակում և մինչև 1990 թվականը երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման համապարփակ, կոնկրետ ծրագիրը։ Կուսակցության գործն ընդունելով որպես իրենց հարազատ գործ, սովետական մարդիկ ամենուրեք ձեռնամուխ եղան կոմունիստական շինարարության՝ համագումարի կանխանշած հոյակապ պլանների պրակտիկ իրագործմանը։

XXVI համագումարը վերստին հաստատեց լենինյան խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսը և 80-ական թվականների համար առաջ քաշեց լայն ռեալիստական ծրագիր, որն ուղղված է խաղաղության ամրապնդմանը, լարվածության թուլացման խորացմանը, սպառազինությունների մրցավազքի սանձահարմանը, նոր համաշխարհային պատերազմի կանխմանը։ «Պաշտպանել խաղաղությունը՝ միջազգային տեսակետից այժմ մեր կուսակցության, մեր ժողովրդի, ինչպես նաև մոլորակի բոլոր ժողովուրդների համար չկա ավելի կարևոր խնդիր»,— համագումարում ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևը։

Չնայած այն բանին, որ իմպերիալիզմի մեղքով 70-ական թվականների վերջին—80-ական թվականների սկզբին միջազգային հորիզոնում խտացան ամպերը, Սովետական Միությունը հաստատակամորեն շարունակում է պայքարը պատերազմի սպառնալիքի վերացման համար, լարվածության թուլացման պահպանման ու խորացման համար, գործնականում զարգացնում է փոխշահավետ համագործակցությունը աշխարհի երկրների մեծ մասի հետ, այսինքն ակտիվորեն վարում է խաղաղության լենինյան քաղաքականությունը։ Այժմ ՍՍՀՄ-ն ու նրա դաշնակիցները, ավելի քան երբևէ, աշխարհում խաղաղության գլխավոր հենարանն են հանդիսանում։

Դրա հետ մեկտեղ սովետական մարդիկ միշտ հիշում են Վ. Ի. Լենինի պատգամն այն մասին, որ քանի դեռ գոյություն ունի իմպերիալիզմը, պատերազմական սպառնալիքի աղբյուրը պահպանվում է։ Ահա թե ինչու կուսակցությունն ու սովետական կառավարությունը մշտապես ուշադրության կենտրոնում



են պահում երկրի, նրա զինված ուժերի պաշտպանունակության ամրապնդման հարցերը։

## I

Վերլուծելով միջազգային իրադրությունը, ՍՄԿԿ XXVI համագումարը նշեց, որ վերջին տարիներին խիստ աճել է իմպերիալիզմի, և ամենից առաջ ամերիկյան իմպերիալիզմի ագրեսիվությունը։ «Արկածախնդրություն, իրենց նեղ շահադիտական նպատակների համար մարդկության կենսական շահերը խաղաքարտի վրա դնելու պատրաստակամություն,— համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ահա թե ինչն է հատկապես մերկ ձևով դրսևորվում իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների քաղաքականության մեջ»։

Իմպերիալիզմը հետզհետե ավելի է կորցնում աշխարհում իր դիրքերը, նրա տիրապետության ոլորտն անկասելիորեն նեղանում է։ Նա այլևս չի կարող, ինչպես նախկինում, վերահսկել ու առավել ևս իր հայեցողությամբ ուղղություն տալ համաշխարհային իրադարձությունների ընթացքին։ Միևնույն ժամանակ ամրապնդվում է սոցիալիստական երկրների ընկերակցությունը։ Տարեցտարի ուժեղանում է ազգային-ազատագրական շարժումը Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում։ Սոցիալական հակասությունների սրման հետևանքով աճում է դասակարգային պայքարը բուն կապիտալի երկրներում։ Խորանում են նաև միջիմպերիալիստական հակասությունները, ավելի կատաղի է դառնում շուկաների, հումքի ու էներգիայի աղբյուրների համար պայքարը։ Տեղի է ունենում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի հետագա խորացում։

Այդ պայմաններում իմպերիալիզմը ճգնում է ինչ գնով էլ լինի արգելակել մոլորակի առաջադիմական փոփոխությունների ընթացքը, ետ շրջել պատմության անիվը և իր համար ապահովել երբեմնի տիրապետությունն աշխարհում, դրա համար օգտագործելով ամեն միջոց ու մեթոդ։ Հանուն այդ, ասենք ուղղակի, պատրանքային նպատակի էլ Վաշինգտոնից տրվող հրամաններով այժմ ծավալվում է այսպես կոչված «գլոբալ հարձակումը» ընդդեմ սոցիալիզմի ու պրոգրեսի ուժերի։ Այդ կապակցությամբ նկատելիորեն ակտիվանում են լարվածության թուլացման և սպառազինությունների մրցավազքի սահմանափակման հակառակորդները, գլուխ են բարձրացնում ամեն կարգի ռևանշիստներ։

Հայտնի է, թե լարվածության թուլացման գործին ինչպիսի լուրջ վնաս հասցրեց Քարտերի վարչակազմը։ Բայց ավելի վտանգավոր ռեակցիոն կուրս է վերցրել ամերիկյան նոր վարչակազմը իշխանության գլուխ անցնելու առաջին իսկ օրերից։ Ընդ որում ռազմական-քաղաքական առումով արդեն բավական պարզորոշ դրսևորվում են մի քանի ուղղություններ։

Առաջին։ ԱՄՆ-ի ներկայիս ղեկավարությունը գործը տանում է դեպի Սովետական Միության հետ կնքված պայմանագրերի, ինչպես նաև սպառազինությունների սահմանափակման ու կրճատման բանակցությունների վիժեցում։ 1973 թվականին ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի միջև համաձայնագիր ստորագրվեց ջերմամիջուկային պատերազմը կանխելու վերաբերյալ, որին համապատասխան կողմերը պարտավորվեցին գործել այնպես, որպեսզի կանխվի ռազմական առճակատում հարուցելու ունակ իրավիճակների ծագումը։ Իսկ հիմա Վաշինգտոնի պաշտոնական գործիչները իրականում բանը տանում են դեպի այն, որպեսզի աշխարհը պահվի պատերազմի եզրին։ Դրա վկայությունն է № 59 տխրահռչակ դիրեկտիվը, որը հաճույքով սեփականացրեց Ռեյգանի վարչակազմը։

Նրանց ձեռք չի տալիս ՍՍՍ—1-ի վերաբերյալ գոյություն ունեցող պայմանավորվածությունը։ Փորձեր են արվում վիժեցնելու հակահրթիռային պաշտպանության սիստեմի սահմանափակման վերաբերյալ ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի միջև 1972 թվականին կնքված պայմանագիրը։ Պաշտպանության մինիստր Կ. Ուայնբերգերը ուղղակի հայտարարեց, թե ԱՄՆ-ը կարող է հակահրթիռային սիստեմների բնագավառում ամերիկացիների աշխատանքների արդյունքներից ելնելով՝ պահանջել վերանայել այդ պայմանագիրը։ Որոշակի նախապատրաստություն է տարվում նաև հարձակողական ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման բնագավառում որոշ միջոցառումների վերաբերյալ ժամանակավոր համաձայնագրերից հրաժարվելու նպատակով։ Այդ մասին,

մասնավորապես, հրապարակորեն հայտարարեցին ԱՄՆ-ի ռազմածովային ուժերի մինիստր Ջ. Լեմանը և պրեզիդենտի մերձավորագույն խորհրդական Է. Միզը։

Վարչակազմի շատ բարձրաստիճան անձինք, ներառյալ նաև պրեզիդենտը, բացեիբաց ասում են, թե իբր ՍՍՍ—2 պայմանագիրը ձեռնտու չէ ԱՄՆ-ին և այդ պատճառով պետք է արմատապես վերանայվի։

Վերջին տարիներին Միացյալ Նահանգները ընդհատեցին Հնդկական օվկիանոսի, զենքի վաճառքի սահմանափակման վերաբերյալ բանակցությունները, անտեսեցին ծովային իրավունքի մասին երկրների մեծամասնության կարծիքը։ Նրանք ամեն կերպ խոչընդոտում են միջուկային զենքի փորձարկման լրիվ ու համընդհանուր արգելման, քիմիական զենքի մշակման, արտադրության ու կուտակման արգելման և դրա պաշարների ոչնչացման, Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների կրճատման և մի շարք այլ պրոբլեմների առթիվ բանակցություններում համաձայնությունների ձեռքբերմանը։

Ինչպես երևում է Հռոմում ՆԱՏՕ-ի սեսիայի (1981 թ. մայիսի 4—5) կոմյունիկեից, ինչպես նաև նրա մասնակիցների հայտարարություններից, սեսիայի որոշումներում ամենից առաջ արտացոլում է գտել միջազգային լարվածության սրման և սպառազինության մրցավազքի ուժեղացման՝ ԱՄՆ-ի վարչակազմի գիծը։ Վաշինգտոնի ճնշման ներքո ՆԱՏՕ-ի երկրների ղեկավարները, անտեսելով իրենց երկրների ժողովուրդների ակնկալությունները, փաստորեն մերժեցին սպառազինությունների սահմանափակման վերաբերյալ ՍՍՀՄ-ի նոր արտաքին քաղաքական նախաձեռնությունները։ Նրանք կասկածի տակ են դնում ՆԱՏՕ-ի երկրների և ՍՍՀՄ-ի միջին հեռավորության նոր հրթիռամիջուկային միջոցները Եվրոպայում տեղաբաշխելու մորատորիումի, Եվրոպայում վստահության բուն միջոցառումների գոտու ընդլայնման վերաբերյալ սովետական առաջարկությունները։ ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի երկրները չհամաձայնվեցին նաև Եվրոպայում միջին հեռավորության միջուկային միջոցների սահմանափակման ու կրճատման առթիվ բանակցությունների անհապաղ վերսկսմանը, պայմանավորելով դրանք այնպիսի վերապահումներով, որոնք վկայում են ոչ այնքան բանակցություններին ԱՄՆ-ի ու նրա պարտնյորների պատրաստակամության, որքան դրանց վերսկսումը ձգձգելու և իրենց հրթիռները Արևմտյան Եվրոպայում տեղաբաշխելու պլանի իրագործման համար ժամանակ շահելու ձգտման մասին։ ՍՍՀՄ-ը, ինչպես հայտնի է, հայտարարեց ՍՍՍ-ի վերաբերյալ բանակցություններն անհապաղ սկսելու իր պատրաստակամությունը՝ պահպանելով հանդերձ այն ողջ դրականը, որ այդ բնագավառում ձեռք է բերվել մինչև հիմա։ ԱՄՆ-ի պետական քարտուղար Ա. Հեյգը ս.թ. հունիսի վերջի իր հեռուստատեսային ելույթում, անդրադառնալով ստրատեգիական սպառազինությունների նկատմամբ վերահսկողության հարցին, հայտարարեց, թե սովետա-ամերիկյան բանակցությունները կարող են սկսվել միայն «ինչ-որ տեղ եկող տարի»։

Ակնհայտ է դառնում, որ ԱՄՆ-ը ձգտում է փլուզել անցյալում ողջ ձեռքբերվածը և խափանել սպառազինությունների սահմանափակման ու կրճատման բնագավառում ողջ ծրագրվողը և դրանով իսկ իր համար սպառազինությունների չվերահսկվող մրցավազքի ճանապարհ բացել։

Երկրորդ։ ԱՄՆ-ը վարում է ՍՍՀՄ-ի և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու բացահայտ կուրս։ Այն ձգտում է իր օգտին փոխել ներկա պահին հաստատված մոտավոր ռազմական հավասարակշռությունը, որը, նշենք, քանիցս ընդունել և ընդունում են ամերիկյան պաշտոնական անձինք։ Այդ կուրսը մարմնավորվում է պրակտիկ գործերում, և ամենից առաջ՝ առանց այն էլ չափից ավելի ուռճացած ռազմական բյուջեների զգալի մեծացման, սպառազինությունների նոր ծրագրերի մշակման, աշխարհի տարբեր շրջաններում ռազմական նախապատրաստությունների ակտիվացման մեջ։

Այսպես, խաղաղ ժամանակի պայմաններում Պենտագոնի ռազմական ծախսերը հասել են առասպելական գումարի. ավելի քան 180 միլիարդ դոլար



1981 ֆինանսական տարում և ավելի քան 226 միլիարդ դոլար 1982 թվականի համար։ Իսկ առաջիկա հինգ տարում, մինչև 1986 թվականը, ԱՄՆ-ի ռազմական ծախսերը միայն պաշտպանության մինիստրության գծով կհասնի 1,5 տրիլիոն դոլարի, այսինքն՝ տարեկան միջին հաշվով 300 միլիարդ դոլար։ Իսկ ինչի՞ վրա կծախսվեն այդ միլիարդները։

Առաջին հերթին նախատեսվում է արագացնել ստրատեգիական հարձակողական ուժերի հետագա ավելացումը։ Դա «Թրայդենտ» հրթիռային նոր սուզանավերն են, «MX» միջմայրցամաքային բալիստիկ հրթիռները, «Շատլ» բազմանպատակային տիեզերական սիստեմը, ստրատեգիական ռմբակոծիչները, օդային, ծովային ու ցամաքային բազավորման ստրատեգիական թևավոր հրթիռները։ Պլանավորվում է ավելացնել նաև միջուկային ու սովորական մյուս սպառազինությունները և զգալիորեն մեծացնել ռազմածովային ուժերի նավակազմը, ստեղծել նոր հրթիռների մարտագլխիկների արտադրության համար նախատեսվող ճեղքող նյութերի ավելի մեծ պաշարներ։

Խոշոր հատկացումներ են տրամադրվում աշխարհի տարբեր շրջաններում ամերիկյան ռազմական ներկայության ապահովմանը։ Լայն պլանով աշխատանքներ են տարվում ԱՄՆ-ի սահմաններից դուրս նոր ռազմական բազաների ընդարձակման նպատակով. Հնդկական օվկիանոսի Դիեգո-Գարսիա կղզում, Եգիպտոսում, Քենիայում, Օմանում, Սոմալիում, Իսրայելում, Սաուդյան Արաբիայում, Պակիստանում, Ավստրալիայում և մի շարք այլ երկրներում։ Ավելի քան 150 խոշոր ռազմածովային ու ռազմաօդային բազաներ են տեղակայված Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների շուրջը։ Ընդհանուր թվով մոտ 500 հազար մարդուց բաղկացած ամերիկյան կանոնավոր զորքեր են պահվում 16 երկրներում։ Ագրեսիայի ու ազգային-ազատագրական շարժումները ճնշելու նպատակով զինված ուժերի մշտական խմբավորումներ են ստեղծվում Մերձավոր ու Միջին Արևելքում։ Եգիպտոսի և Իսրայելի միջև «զինադադարը» հսկելու ցուցանակի ներքո ԱՄՆ-ը պլանավորում է իր զորքերը տեղակայել Սինայի թերակղզում։ Ուժեղացված տեմպերով պահեստներ են կառուցվում ԳՖՀ-ում, Լյուքսեմբուրգում, Դանիայում, Մեծ Բրիտանիայում, Նորվեգիայում և Եվրոպայի մի շարք այլ երկրներում՝ կրկնակի բազավորման զորքերի համար ծանր զենքի ու տեխնիկայի լրացուցիչ պաշարներ տեղավորելու նպատակով։ Համաշխարհային օվկիանոսում երթևեկում են տրանսպորտի խմբեր, որոնք իրենց վրա կրում են սարքավորում՝ «արագ ծավալման ուժերի» միավորումների համար։

Ռազմական պատրաստությունների արագացումն իրականացվում է ոչ միայն ԱՄՆ-ի, այլև ամբողջությամբ վերցված ՆԱՏՕ-ի կողմից։ Վաշինգտոնի ճնշման ներքո արևմտաեվրոպական երկրները Հռոմի սեսիայում հաստատեցին ՆԱՏՕ-ի Արևմտյան Եվրոպայի «լրացուցիչ միջուկային սպառազինման» մասին հայտնի որոշումը (նրա տերիտորիայում «Պերշինգ—2» և թևավոր հրթիռների շուրջ 600 գործարկման կայանքների տեղաբաշխումը, որոնք ավելացնում են ՍՍՀՄ-ի նկատմամբ ԱՄՆ-ի ստրատեգիական պոտենցիալը)։ Մայիսին ԱՄՆ-ի պրեզիդենտը և ԳՖՀ-ի կանցլերը համատեղ հայտարարությամբ նշեցին, թե իրենք լի են այդ պրոբլեմը ամեն գնով լուծելու ձգտմամբ։ ՆԱՏՕ-ի զորքերը մեծ քանակությամբ նոր տանկեր, ինքնաթիռներ և այլ սպառազինություններ են ստանում։ Նախապատրաստության մեջ են պահեստային կազմավորումները, հատկապես ԳՖՀ-ում։

Ռազմական գերակշռության հասնելու կուրսը Վաշինգտոնի և ՆԱՏՕ-ի ստրատեգները քողարկում են ոչ այլ բանով, քան նույն այն գոյություն չունեցող «սովետական ռազմական սպառնալիքով», ինչպես նաև ԱՄՆ-ի իբր «ռազմականորեն ետ մնալով»։ Գործնականում լայն ճակատով ուղղակի ռազմական պատրաստություններ են տարվում, իրականացվում է նոր համաշխարհային պատերազմի նյութական նախապատրաստություն։

Երրորդ։ ԱՄՆ-ը իր պետական քաղաքականության աստիճանին է բարձրացրել անկախ պետությունների ներքին գործերին միջամտելը և ազգային-ազատագրական շարժումների դեմ ակտիվորեն պայքարելը։

Այն վիթխարի ջանքեր է գործադրում Կենտրոնական Ամերիկայի երկրներում նման շարժումները ճնշելու համար: Ուղղակի միջամտություն է կատարվում Սալվադորի ներքին գործերին: Մշտապես դավադրության թելեր են հյուսվում և քայքայիչ գործողություններ են ձեռնարկվում Նիկարագուայի դեմ: Ուժգնորեն զենք է մատակարարվում Գվատեմալայի զինվորական խունտային: Լատինական Ամերիկայում իր ագրեսիվ նպատակները վայելուչ պատրվակներով իրականացնելու համար Վաշինգտոնը փորձում է ԱՄՆ-ի, Գվատեմալայի, Հոնդուրասի, Պարագվայի, Ուրուգվայի ու Չիլիի կանոնավոր զորքերից ստեղծել այսպես կոչված միջամերիկյան ուժեր:

Չեն դադարում ուղղակի պրովոկացիաներն ու մշտական սպառնալիքները սոցիալիստական Կուբայի նկատմամբ: Շանտաժի ու սպառնալիքների օբյեկտ են դարձել նաև Մեքսիկան՝ ԱՄՆ-ի հարավային հարևանը և այդ ռեգիոնի մի շարք այլ երկրներ, որոնք չեն ցանկանում անտրտունջ ընթանալ ամերիկյան ագրեսիվ քաղաքականության ֆարվատերում:

ԱՄՆ-ի հեգեմոնիստական նկրտումների՝ ըստ կարևորության հաջորդ շըրջանը, ի դեպ, իրենց իսկ գնահատմամբ, Աֆրիկան է: Սպիտակ տան պաշտոնական անձինք բացեիբաց հայտարարել են, թե աջակցություն ցույց կտան ու զենք կմատակարարեն ՈՒՆԻՏԱ տեռորիստական խմբավորմանը Անգոլայում: Հարավ-Աֆրիկյան Հանրապետության օգնությամբ նրանք ստեղծել են վարձկանների խմբեր և ջանում են ամեն կերպ ապակայունացնել իրադրությունը Մոզամբիկում, ջախջախել ազգային-ազատագրական շարժումը Նամիբիայում: ԱՄՆ-ը առանձնահատուկ ուշադրություն է նվիրում Եգիպտոսին՝ ընդլայնելով այստեղ գոյություն ունեցող բազաները և ձգտելով նրա տերիտորիայում իր կանոնավոր զորամասերի մշտական տեղաբաշխման:

Ուժեղացված տեմպերով զինելով Իսրայելին և խրախուսելով նրա ագրեսիվ ավազակային գործողությունները, ԱՄՆ-ը ամեն կերպ մեծացնում է լարվածությունը Մերձավոր Արևելքում: Յոթանասունական թվականների ընթացքում ամերիկացիները Թել Ավիվին մատակարարել են ավելի քան 8,5 միլիարդ դոլարի սպառազինություններ ու ռազմական տեխնիկա:

Այժմ ամերիկյան իմպերիալիզմի հատուկ ուշադրության կենտրոնում է նաև Միջին Արևելքը: Ոչ այլ ոք, քան պրեզիդենտն անձամբ, հայտարարեց, թե ԱՄՆ-ը առաջիկայում ևս կզինի հակահեղափոխական բանդաները Աֆղանստանում՝ հիմնականում Պակիստանի միջոցով, որը դիտվում է իբրև հենակետային, բազային երկիր, իբրև Միջին Արևելքի ու Պարսկական ծոցի շրջանում հեգեմոնիստական նպատակների իրագործման պլացդարմ: Այդ նպատակներով ամերիկացիները մտադիր են ավելի քան 3 միլիարդ դոլարի ռազմատնտեսական օգնություն ցույց տալ Իսլամաբադին:

Չի կարող անհանգստություն չհարուցել նաև Հեռավոր Արևելքում ստեղծվող իրադրությունը: Չի կարելի հաշվի չառնել Պեկինի ղեկավարության շարունակվող բացահայտորեն չարամիտ հակասովետական կուրսը: ԱՄՆ-ի, Չինաստանի և միլիտարիզացման ուղիով ընթացող Ճապոնիայի ռազմաքաղաքական կապերի ընդլայնումը տևական ռազմական սպառնալիք է ստեղծում մեր արևելյան սահմաններին: ԱՄՆ-ի հավանությամբ Չինաստանը արհեստականորեն պահպանում է լարվածության օջախը Կամպուչիայում և Վիետնամի ու Լաոսի հետ ունեցած սահմաններում:

Այլ խոսքերով ասած, ամերիկյան իմպերիալիզմի շոշափուկները ձգվում են դեպի աշխարհի բոլոր շրջանները: Կատարվում են պրովոկացիաներ ու դիվերսիաներ, որոնք ամենից առաջ ուղղված են սոցիալիստական, ինչպես նաև զարգացող երկրների ու ազգային-ազատագրական շարժումների դեմ, ընդլայնվում եղած ռազմական պլացդարմներն ու բազաները, ստեղծվում նորերը: Եվ բոլոր այդ գործողությունները որոշվում են Պենտագոնի կողմից մշակվող այսպես կոչված «նոր ռազմական ստրատեգիայով»: Ըստ Կ. Ուայնբերգերի հայտարարության, Միացյալ Նահանգները պետք է պատրաստ լինեն մղելու ամեն մի պատերազմ և ամեն մի ռեգիոնում, որը ԱՄՆ-ի համար կենսական կարևորություն է ներկայացնում: Դրա հետ մեկտեղ նա խոստովանեց, որ ԱՄՆ-ը



շահեր ունի «գործնականում երկրագնդի յուրաքանչյուր շրջանում»: Մեկնաբանությունները, ինչպես ասում են, ավելորդ են:

ՍՍՀՄ-ի ու սոցիալիստական ընկերակցության մյուս երկրների, աշխարհի պրոգրեսիվ ուժերի դեմ իմպերիալիզմի կողմից ներկայումս կիրառվող զանազան ակցիաներն ու դիվերսիաները համաձայնեցված բնույթ են կրում, շաղկապված են մտադրության միասնությամբ և նպատակ ունեն աստիճանաբար, հետևողականորեն թուլացնել ու քայքայել սոցիալիզմը որպես սիստեմ: Իսկ վերջին հաշվով՝ հաստատել ամերիկյան իմպերիալիզմի համաշխարհային տիրապետությունը:

Եվ պատահական չէ, որ աշխարհի բոլոր երկրներում վիթխարի արձագանք առաջ բերեցին ՍՍՀՄ Գերագույն սովետի հինգերորդ նստաշրջանում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթն ու Սովետական Միության պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ «Աշխարհի պառլամենտներին և ժողովուրդներին» դիմումը, որոնցով կոչ է արվում գործադրել բոլոր ջանքերը՝ փակելու համար անսահման սպառազինումների և պատերազմական արկածախնդրությունների սիրահարների ճանապարհը, թույլ չտալու նոր համաշխարհային պատերազմ:

«ՍՍՀՄ Գերագույն սովետը սույն դիմումով հանդես է գալիս,— ասվում է փաստաթղթում,— երբ լրացել է մեր հայրենիքի վրա հիտլերյան ֆաշիզմի հարձակման 40 տարին: Սովետական ժողովուրդը գլուխ է խոնարհում պատերազմում ընկած իր քսան միլիոն հայրենակիցների պայծառ հիշատակի առջև: Երկրորդ համաշխարհային պատերազմը անհամար աղետներ ու տառապանքներ բերեց ամբողջ մարդկությանը: Մենք խորապես հարգում ենք բոլոր նրանց հիշատակը, ովքեր իրենց կյանքը տվեցին ագրեսիայի դեմ մղված պայքարում, հանուն աշխարհի խաղաղության:

Պատմությունը ահեղ դաս է տվել: Ժողովուրդները վերին աստիճանի թանկ վճարեցին այն բանի համար, որ չհաջողվեց կանխել պատերազմը, ժամանակին վանել կախված վտանգը: Չի կարելի թույլ տալ, որ ողբերգությունը կրկնըվի: Հարկավոր է և հնարավոր է անել ամեն ինչ՝ նոր համաշխարհային պատերազմ թույլ չտալու համար»:

Մոլորակի բոլոր ժողովուրդների կենսականորեն կարևոր շահերը պահանջում են ոչ թե պատերազմի եզրի հավասարակշռություն, այլ բոլոր միջոցներով խաղաղության ամրապնդում, անցում իրավահավասարության, ստեղծված ռազմական հավասարակշռությունը խախտելու և ուրիշներին իր կամքը թելադրելու փորձերից հրաժարվելու հիման վրա բանական, իրական բանակցությունների ուղու: Հենց դրան է ուղղված ՍՄԿԿ XXVI համագումարի ընդունած 80-ական թվականների խաղաղության ծրագիրը: Այն ընդգրկում է ինչպես հրթիռամիջուկային, այնպես էլ սովորական զենքի կրճատման միջոցառումներ, բովանդակում է գոյություն ունեցող կոնֆլիկտների ու ճգնաժամային իրավիճակների կարգավորման և նորերի կանխման կոնստրուկտիվ առաջարկություններ, տոգորված է լարվածության թուլացումը խորացնելու և բոլոր մայրցամաքների երկրների խաղաղ համագործակցությունը զարգացնելու ձգտմամբ:

Հետևողականորեն իրագործելով խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրս, մեր կուսակցությունն ու սովետական կառավարությունը դրա հետ մեկտեղ անշեղորեն հետևում են Վ. Ի. Լենինի պատգամին. «Ով մոռանում է մեզ շարունակ սպառնացող վտանգի մասին, որը չի դադարի, քանի գոյություն ունի համաշխարհային իմպերիալիզմը,— ով մոռանում է այդ մասին, նա մոռանում է մեր աշխատանքային հանրապետության մասին» (Երկեր, հ. 31, էջ 658): Լենինյան այս պատգամը, ինչպես երբեք, հրատապ է ժամանակակից իրադրությունում: Այդ պատճառով էլ ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը ստիպված են չթուլացող ուշադրություն նվիրել երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդմանը, սովետական զինված ուժերի մարտական պատրաստությունը պատշաճ մակարդակի վրա պահելուն:

## II

Խաղաղության լենինյան արտաքին քաղաքականությանը լիովին համապատասխանում է և սովետական ռազմական դոկտրինան՝ պատերազմի (որը

կարող է մեզ պարտադրել իմպերիալիզմը) էության ու բնույթի, երկրին ու զինված ուժերը հնարավոր ագրեսիայի ետ մղմանը նախապատրաստելու վերաբերյալ հայացքների գիտականորեն հիմնավորված սիստեմը։ «Մեր ստրատեգիական դոկտրինան,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— ունի խիստ պաշտպանական ուղղվածություն»։ Դրա հետ մեկտեղ այն ՍՍՀՄ-ի կամ նրա դաշնակիցների վրա ագրեսորի հարձակման դեպքում նախատեսում է սովետական զինված ուժերի վճռական գործողությունները, ուժեր, որոնք լրիվ ծավալով տիրապետում են ո՛չ միայն պաշտպանական, այլև ցամաքում, օդում և ծովում ժամանակակից հարձակողական գործողություններ վարելու արվեստին։

Նոր համաշխարհային պատերազմը, եթե այնուամենայնիվ իմպերիալիզմի ագրեսիվ ուժերին հաջողվի սանձազերծել այն, երկու հակադիր սոցիալական սիստեմների վճռական բախումը կդառնար։ Այն կընդգրկեր աշխարհի բոլոր մայրցամաքները և զինված ուժերի կոալիցիոն խմբավորումների կողմից կմղվեր ամենավճռական նպատակներով, զինված պայքարի միջոցների ողջ զինանոցի օգտագործմամբ։ Նրա հորձանուտի մեջ կընկնեին բազում հարյուր միլիոնավոր մարդիկ։ Անողոքությամբ ու հնարավոր ավերածությունների մասշտաբներով այն չի կարելի համեմատել անցյալի և ոչ մի պատերազմի հետ։ Արդի զենքի բուն էությունն այնպիսին է դարձել, որ, եթե այն գործադրվելու լինի, խաղաքարտի վրա կդրվի ողջ մարդկության ապագան։

Մշակելով ռազմական գործի տեսությունը, մարտ և օպերացիա վարելու եղանակներն ու ձևերը, սովետական ռազմական գիտությունը մեկնում է սոցիալ-տնտեսական կարգից, արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացման մակարդակից, ժողովրդի ու բանակի բարոյաքաղաքական վիճակից ռազմական արվեստի կախման մեջ լինելու վերաբերյալ մարքսիզմի դրույթներից, որոնք ստեղծագործորեն զարգացրել են Վ. Ի. Լենինը և ՍՄԿԿ-ն։

Ֆ. Էնգելսը դեռ XIX դարում գրել է. «Ոչ թե հանճարեղ զորավարների «մտքի ազատ ստեղծագործությունն» է հեղափոխականացնող ձևով գործել այստեղ, այլ լավագույն զենքի հայտնագործումը և զինվորանյութի փոփոխումը. հանճարեղ զորավարների ազդեցությունը լավագույն դեպքում սահմանափակվում է այն բանով, որ նրանք մարտը վարելու եղանակները հարմարեցնում են նոր զենքին ու նոր մարտիկներին» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 20, стр. 171)։

Դա օբյեկտիվ օրենք է։ Այն մեզնից պահանջում է մշտապես հետևել զինված պայքարի միջոցների զարգացմանը և ժամանակին անհրաժեշտ ճշգրտումներ ու փոփոխություններ մտցնել ռազմական գործողությունների վարման եղանակների, ինչպես և զորքերի կազմակերպական կառուցվածքի ու դրանց կառավարման համակարգի մեջ։

Այդ իմաստով մեր զինված ուժերի համար գործնական մեծ նշանակություն ունի այն դրույթը, որ XXVI համագումարում արտահայտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը. «...Կառավարման կազմակերպական կառուցվածքների կատարելագործումը քարացածություն չի հանդուրժում։ Տնտեսության կառավարման կենդանի, զարգացող օրգանիզմը չի կարելի հարմարեցնել կայունացած, սովորական ձևերին։ Ընդհակառակն, ձևերը պետք է համապատասխանեցվեն փոփոխվող տնտեսական խնդիրներին։ Միայն այսպես կարող է դրվել հարցը»։

Ռազմական արվեստն իրավունք չունի ետ մնալու զինված պայքարի միջոցների մարտական հնարավորություններից, մանավանդ ներկա էտապում, երբ գիտատեխնիկական առաջընթացի հիման վրա սպառազինությունների հիմնական սիստեմները փոփոխվում են գործնականում յուրաքանչյուր 10—12 տարին մեկ։ Այս պայմաններում քարացածությունը, հայացքների ոչ ժամանակին վերակառուցումը, պատերազմում զինված ուժերի կիրառման նոր եղանակների մշակման և հատկապես պրակտիկ յուրացման գործում լճացածությունը հղի են լուրջ հետևանքներով։ Այդ բանը կարելի է տեսնել մի շարք օրինակներով։

Այսպես, մեր ռազմական գիտությունը արդեն նախապատերազմյան տարիներին, անհամեմատ առաջ անցնելով բուրժուական ռազմական մտքից, մշա-



կեց խորը օպերացիայի առաջավոր տեսությունը՝ մասսայական, տեխնիկապես հագեցված բանակներով ակտիվ հարձակողական գործողություններ վարելու սկզբունքորեն նոր եղանակը։ Դրան համապատասխան 1932 թվականին մեզ մոտ աշխարհում առաջին անգամ սկսեցին ստեղծվել զրահատանկային զորքերի խոշոր միավորումներ՝ մեքենայացված կորպուսների ձևով։ 1936 թվականի մոտերքը արդեն չորս այդպիսի կորպուս էր կազմակերպվել, որոնք հետո վերակազմավորվեցին տանկայինի։ Սակայն հետագայում մի շարք օբյեկտիվ ու սուբյեկտիվ պատճառներով արվեցին ոչ ճիշտ հետևություններ, որոնք հիմնըված էին միայն Իսպանիայում տանկերի սահմանափակ օգտագործման փորձի վրա։ Ի վերջո ստեղծված կորպուսները 1939 թվականի մոտերքը կազմացրիվ արվեցին, իսկ իբրև օպերացիաներում հաջողության զարգացման էշելոն նորից նախատեսվում էր օգտագործել հեծելազորը։ Հետագայում այդ վիճակը շտկվեց, և 1942 թվականին մեզ մոտ արդեն ստեղծվել էին ոչ միայն տանկային կորպուսներ, այլև տանկային բանակներ, թեև դեռ պատերազմն սկսվելուց առաջ դրանք ունենալն ավելի լավ կլիներ։

Ինչ վերաբերում է հեծելազորին, ապա այն որպես զորատեսակ հաջողությամբ օգտագործվել է անցյալում։ Սակայն բանակում ավտոմատ զենքի երևան գալով ու լայն ներդրմամբ, տանկերի, հրետանու և հարվածելու այլ միջոցների արագ զարգացմամբ այն ամբողջովին սպառեց իրեն։ Բայց մի շարք երկրների բանակներում, այդ թվում և մեզ մոտ, դրա վրա ժամանակին ուշադրություն չդարձվեց, և հետևանքները պատերազմի սկզբից չհապաղեցին զգացնել տալ։

Կամ վերցնենք մի այլ օրինակ։ Հայտնի է, որ Հայրենական մեծ պատերազմի տարիներին ռազմական գործողությունների հիմնական ձևը ռազմաճակատային օպերացիան էր։ Ընդ որում ռազմաճակատը, որպես կանոն, հարձակվում էր միջին հաշվով 200—300 կմ լայնությամբ, 100-ից մինչև 300—400 կմ խորությամբ գծով։ Ռազմաճակատային օպերացիայի ավարտից հետո սովորաբար վրա էր հասնում դադարը, իսկ հաճախ էլ՝ ռազմաճակատի հաջորդ օպերացիայի նախապատրաստման տևական շրջանը։ Այդ ժամանակ դա միանգամայն անհրաժեշտ էր, արդարացված և համապատասխանում էր տվյալ պահին ունեցած հարվածելու միջոցներին։

Այժմ դրությունն այլ է։ Ռազմաճակատների հրամանատարության տրամադրության տակ են դրվել հարվածելու այնպիսի միջոցներ (հրթիռներ, հրթիռակիր ավիացիա և այլն), որոնց հնարավորությունները նշանակալիորեն գերազանցում են ռազմաճակատային օպերացիաների շրջանակները։ Շեշտակի մեծացել է զորքերի շարժունակությունը, փոխվել են զինված ուժերի տեսակների խոշոր միավորումների ու զորախմբերի կողմից ստրատեգիական և օպերատիվ շատ խնդիրների լուծման եղանակները։ Դրա հետևանքով զորախմբերի ու խոշոր միավորումների օգտագործման նախկին ձևերը շատ բանով արդեն դադարել են համապատասխանել նոր պայմաններին։ Դրա հետ կապված, որպես հնարավոր գալիք պատերազմի հիմնական օպերացիա պետք է դիտել, հավանորեն, ոչ թե արդեն ռազմաճակատայինը, այլ ռազմական գործողությունների առավել լայն մասշտաբի ձևը՝ ստրատեգիական օպերացիան պատերազմական գործողությունների թատերաբեմում։

Միանգամայն բնական է, որ արդի բարդ գործողությունների իրականացման ժամանակ նոր բովանդակություն է ձեռք բերում թիկունքային ու տեխնիկական ապահովման համակարգը։ Նման ապահովման մասշտաբները ոչ մի չափով համեմատելի չեն անցած պատերազմի գործողությունների հետ։ Այժմ նյութական միջոցների պահանջմունքները մեծացել են տասնյակ անգամներ։ Դրա հետ մեկտեղ պետք է հաշվի առնել, որ հարվածելու արդի միջոցների պայմաններում զորքերը մարտական գործողությունների ընթացքում կարող են մարտական տեխնիկայի ու սպառազինությունների մեծ կորուստներ կրել։ Այդ պատճառով բազմիցս մեծանում է դրանց նորոգման ծավալը, փոխվում է և դրա բնույթը։ Իսկ դա, իր հերթին, պահանջում է արդի օպերացիաների տեխնիկական ապահովման նոր, ավելի կատարյալ կազմակերպում։ Նման պայմաններում հատուկ նշանակություն է ձեռք բերում երկրի թիկունքի աշխատանքը, որը

## III

Խաղաղ պայմաններում զինված ուժերն իրենց կազմով լիովին ծավալված վիճակում պահելը, որն անհրաժեշտ է պատերազմի պարագայում, նպատակահարմար չէ։ Տնտեսապես դա ամեն մի պետության ուժերից վեր է, և բացի այդ դրա կարիքը չկա։

Մեր երկրում խաղաղ շինարարության պայմաններում, ասենք, մյուս երկրներում նույնպես, զինված ուժերի որոշակի մասը գտնվում է մշտական պատրաստության մեջ, այսինքն ամբողջովին կոմպլեկտավորված է անձնակազմով և ռազմական տեխնիկայով, իսկ մյուս մասը՝ արագ մոբիլիզացիոն ծավալման պատրաստության մեջ։ Եթե ագրեսորը պատերազմը սանձազերծի, անձնակազմի ու տեխնիկայի նախապատրաստված ռեսուրսները, որոնք կցված են միավորումներին ու զորամասերին, պետք է բացառիկ կարճ ժամկետներում լինեն նրանց մոտ։ Այդ պատճառով էլ անհապաղ մոբիլիզացիոն ծավալման համար զորքերի ու նավատորմի ուժերի մշտական պատրաստության խնդիրը պետական մեծ կարևորության նշանակություն է ձեռք բերում։

Անցած պատերազմներում, ինչպես հայտնի է, այս հարցը նման սրություն չի ունեցել։ Պետությունների տրամադրության տակ եղած հարվածելու միջոցները, զորքերի համեմատաբար ոչ բարձր շարժունությունն ու մանևրականությունը նույնիսկ անակնկալ հարձակման դեպքում, ըստ էության, չէին կարող խափանել բանակի մոբիլիզացիոն ծավալումը, իսկ առավել ևս՝ կանխորոշել պատերազմի ընթացքն ու ելքը։

Արդի պայմաններում վիճակը կտրուկ փոխվել է։ Արդեն երկրորդ համաշխարհային պատերազմում անակնկալության տարրը որոշակի դեր խաղաց։ Իսկ այժմ այն դառնում է ստրատեգիական նշանակության կարևորագույն գործոն։ Զինված ուժերը և ամբողջ ժողովրդական տնտեսությունը ժամանակին ռազմական դրության փոխադրելու, կարճ ժամկետներում դրանց մոբիլիզացիոն ծավալման հարցը նշանակալիորեն ավելի սուր է դրված։ Ահա թե ինչու զորքերին անձնակազմի ու տեխնիկայի նախապատրաստված ռեսուրսներ տրամադրելը կանխորոշում է դեռևս խաղաղ շրջանում հստակորեն պլանավորված միջոցառումների, տեղերում կուսակցական, սովետական և զինվորական մարմինների համաձայնեցված գործողությունների անհրաժեշտությունը։

Այժմ, ինչպես երբեք, պահանջվում է զինված ուժերի և ամբողջությամբ վերցված ժողովրդական տնտեսության մոբիլիզացիոն ծավալման համաձայնեցվածություն, հատկապես մարդկային ռեսուրսների, տրանսպորտի, կապի, էներգետիկայի օգտագործման, երկրի տնտեսական մեխանիզմի կայունության ու կենսունակության ապահովման գործում։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է մշտական որոնումը զենքի հիմնական տեսակները թողարկող ձեռնարկությունների արտադրական կապերի համակարգի կատարելագործման, պատերազմի պարագայում էներգա և ջրամատակարարմամբ ձեռնարկությունների ու միավորումների ինքնապահովվածության բարձրացման, անհրաժեշտ պաշարներով դրանց լրիվ ապահովման, սարքավորումների ու նյութերի ռեզերվի ստեղծման բնագավառում։ Պահանջվում է նաև ժողովրդական տնտեսության մոբիլիզացիոն պատրաստության բուն սիստեմի հետագա կատարելագործում՝ ելակետ ունենալով այն, որ զինված ուժերի, ժողովրդական տնտեսության և քաղաքացիական պաշտպանության մոբիլիզացիոն պատրաստության սերտ փոխկապվածությունը ամբողջությամբ վերցված երկրի պաշտպանունակությունը պատշաճ մակարդակի վրա պահելու կարևորագույն պայմանն է։

Նկատի առնելով ժամանակակից պատերազմի՝ շատ բանով փոփոխված պայմանները և մոբիլիզացիոն ծավալման բարդությունը, առաջադրված նպատակների ձեռքբերման համար բոլոր ուժերի միատեղումը անհնար կլինի առանց երկրի ու զինված ուժերի կենտրոնացված ղեկավարության կայուն համակարգի։ Այս առումով մենք որոշակի փորձ ունենք։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին ստեղծված պաշտպանության պետական կոմիտեն, ինչպես նաև մերձռազմաճակատային գոտու քաղաքների պաշտպանության կոմիտեները լիովին արդարացրին իրենց։ Միանգամայն բնական է, որ մեզ հարկավոր է այդ փորձը



հաշվի առնել։ Գալիք պատերազմում, եթե իմպերիալիստները այն պարտադրեն մեզ, պաշտպանական խնդիրների լուծման գործում նշանակալիորեն կմեծանան տեղական կուսակցական, սովետական և տնտեսական համապատասխան մարմինների դերն ու նշանակությունը։

Բանակի ու նավատորմի տեխնիկական հագեցվածությունը լուրջ պահանջներ է ներկայացնում նաև զորակոչային կազմի նախապատրաստման որակին։ Այսօր կիսագրագետ մարդուն պարզապես դժվար է զորամասերում ու նավերի վրա համապատասխան տեղ գտնել։ Ժամանակակից մարտական տեխնիկայի ու սպառազինությունների բարդ, մեծ մասամբ կոլեկտիվային օրինակները հպատակվում են միայն հանրակրթական ու տեխնիկական բավականաչափ պատրաստությամբ, իսկ հաշվի առնելով զինված ուժերի բազմազգ կազմը՝ նաև ռուսաց լեզուն լավ իմացող մարդկանց։

Այս առումով կարևոր դեր է խաղում նախնական զինպատրաստությունը, որն ընդհանուր զինապարտության մասին ՍՍՀՄ օրենքին համապատասխան պատանիները մինչև բանակ զորակոչվելն անցնում են դպրոցներում, տեխնիկումներում և ուսումնարաններում, ձեռնարկությունների, հիմնարկությունների, կոլտնտեսությունների, սովխոզների ուսումնական կետերում և ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպություններում։ Պրակտիկան ցույց է տալիս, որ այդպիսի ուսուցում անցած երիտասարդները ավելի արագորեն են ներգրավվում զինվորական ծառայության ընդհանուր ռիթմի մեջ, ավելի հաջող են տիրապետում մարտական տեխնիկային ու զենքին, դառնում մարտական ու քաղաքական պատրաստության գերազանցիկներ, բարձր կարգի մասնագետներ։

Զինված ուժերի ամրապնդման և նրանց մարտական պատրաստության բարձրացման համար մեծ նշանակություն ունեն նաև պահեստի սպաների, սերժանտների ու զինվորների պատրաստության հարցերը։ Սպառազինության և մարտական տեխնիկայի մշտական զարգացումն ու կատարելագործումը պահանջում են, որպեսզի նրանք ժամանակին և խոր ուսումնասիրեն դրանք, պատրաստվեն հմտորեն տիրապետել դրանց։

Այդ պատճառով էլ հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի կուսակցական և սովետական մարմինների, կոմերիտական և հասարակական կազմակերպությունների առջև խիստ կարևոր խնդիր է դրված՝ է՛լ ավելի բարձրացնել ինչպես զինապարտների պատրաստման որակի բարելավման, այնպես էլ զորակոչիկների նախնական ռազմական պատրաստության ու պաշտպանական-մասսայական աշխատանքի սիստեմի հետագա կատարելագործման համար պատասխանատվության մակարդակը։ Այստեղ հիմնական ուղղությունը ուսուցման կենտրոններում պլանային միջոցառումների անցկացումն է՝ առավել կատարյալ վարժական-նյութական հիմքի վրա։

Ներկայումս վիթխարի նշանակություն է ձեռք բերում մարդկանց սովետական հայրենասիրության և սոցիալիստական հայրենիքի պաշտպանության պատրաստակամության ոգով դաստիարակելու նպատակով տարվող գաղափարախոսական աշխատանքի ուժեղացումը։ Ընդ որում, մենք պետք է ելնենք ընկեր Լ. Ի. Բրեժնևի ցուցումներից այն մասին, թե «Աշխատավորության, ամենից առաջ երիտասարդ սերնդի գիտակցության մեջ սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների, սովետների երկրի համար, մեր հայրենիքի համար հպարտության գաղափարների, սոցիալիզմի նվաճումներին պաշտպան կանգնելու պատրաստակամության գաղափարների հաստատումը եղել է և մնում է կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը»։

Խաղաղ կյանքի 36 տարիներին փաստորեն աճել է սովետական մարդկանց երկու նոր սերունդ, որոնք սեփական փորձով չգիտեն, թե ինչ բան է պատերազմը։ Նրանց պատկերացմամբ խաղաղությունը հասարակության սովորական վիճակն է։ Միևնույն ժամանակ նոսրանում են Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների շարքերը, որոնք պատրաստակամորեն երիտասարդ սերնդին են հաղորդում իրենց մարտական ու կենսական փորձը։ Խաղաղության համար պայքարի հարցերը երբեմն ոչ թե դասակարգային դիրքերից են ընկալվում, այլ փոքր-ինչ հասարակացված ձևով. ամեն մի խաղաղություն լավ է, ամեն մի

պատերազմ՝ վառ։ Իսկ դա կարող է հանգեցնել անհոգության, բարեհոգության և ինքնահանգստացման, հնարավոր պատերազմի սպառնալիքի թերագնահատման, որը ներկա պայմաններում կարող է հղի լինել լուրջ հետևանքներով։

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման համապատասխան, ժողովրդի ռազմահայրենասիրական դաստիարակության խնդիրները վերջին ժամանակներս ավելի նպատակասլացորեն են լուծվում։ Սակայն, հաշվի առնելով միջազգային իրադրության բարդացումը, անհրաժեշտ է սովետական մարդկանց ավելի փաստարկված ու խոր կերպով հասցնել գոյություն ունեցող պատերազմական վտանգի վերաբերյալ ճշմարտությունը։ Իհարկե պետք չէ դրան դրամատիկ բնույթ տալ, բայց անպայման հարկավոր է ցույց տալ արդի միջազգային իրադրության լրջությունը։ Դա ո՛չ միայն բանակի և նավատորմի քաղմարմինների ու քաղաշխատողների, այլև կուսակցական ու սովետական մարմինների, բոլոր հասարակական կազմակերպությունների, մեր ողջ պրոպագանդիստական ապարատի խնդիրն է։ Այն բխում է երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդման վերաբերյալ լենինյան կուսակցության պահանջներից։

Աշխարհում իրադրությունը շարունակում է բարդ մնալ։ Իմպերիալիզմի, և ամենից առաջ ԱՄՆ-ի, քաղաքականությունը լարվածության թուլացումից դեպի «սառը պատերազմի» նոր հրատարակության շրջադարձի սպառնալիք է ստեղծում։ Այդ առնչությամբ երկրի պաշտպանունակության հետագա ամրապնդման, զգոնության ու զինված ուժերի պատրաստականության բարձրացման հարցերը մշտապես գտնվում են ոչ միայն զինվորական կադրերի, այլև կուսակցական ու սովետական մարմինների ուշադրության կենտրոնում։ Ինչպես հայտարարեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Եթե մեզ ստիպեն, ապա մարտնչող իմպերիալիզմի ամեն մի մարտահրավերի մենք կգտնենք արագ ու արդյունավետ պատասխան»։ Սովետական զինված ուժերը մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի ու սովետական կառավարության անդուլ հոգատարության շնորհիվ ունեն ամեն անհրաժեշտ բան և լի են իրենց հայրենասիրական ու ինտերնացիոնալ պարտքը պատվով կատարելու վճռականությամբ։

«Коммунист» № 10, 1981 г.

---



# ԻՍԿ ՔԱՐԱՎԱՆՆ ԱՌԱՋ Է ԳՆՈՒՄ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության հաղթանակից հետո լենինյան կուսակցության տնտեսական և սոցիալական քաղաքականությունն այնպես էր տարվում, որ Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերն ըստ կարելվույն ավելի արագ բարձրանային-հասնեին նրա կենտրոնի զարգացման մակարդակին, և այդ նպատակն իրականացվեց ամենակարճ պատմական ժամանակահատվածում։ Սովետական Միությունում այլևս գոյություն չունեն հետամնաց ազգային ծայրամասեր։ Անշեղորեն ամրապնդվում է մեր մեծ բազմազգ հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության պատմությունը դրա լավագույն հաստատումն է։

Ռուս և մյուս եղբայր-ժողովուրդների անշահախնդիր բազմակողմանի օգնության, նրանց հետ հզոր Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության մեջ միավորվելու, ՍՄԿԿ իմաստուն ղեկավարության շնորհիվ Սովետական Հայաստանը կարողացավ ոչ միայն բուժել դարավոր արյունաթոր վերքերը, հաղթահարել անասելի քայքայումը, սովը, հիվանդությունները, վերականգնել ու զարգացնել տնտեսությունը, այլև ֆիզիկապես ու հոգեպես վերածնել լիակատար սփռման ու մահացման եզրին գտնվող ժողովրդին։

Հանրապետությունում լուծվեցին նաև այնպիսի կարևոր և սուր կենսական պրոբլեմներ, ինչպես՝ առաջին անգամ վերջին դարերում ժողովրդի խաղաղ ու անվտանգ կյանքի ապահովումը, արտագաղթի դադարեցումն ու ազգի մեծամասնության կենտրոնացումը հայրենի երկրում, բազմադարյան օտարազգի ճնշման ու դասակարգային իրավազրկության հետևանք հանդիսացող աշխատավոր զանգվածների կուլտուրական հետամնացության հաղթահարումը, մայրենի լեզվով կուլտուրայի ու կրթության բուռն զարգացումը, նվաճողների կողոպտած կամ արտագաղթողների՝ իրենց հետ օտար երկրներ տարած կուլտուրական արժույթների ետ բերելն ու կենտրոնացումը հայրենիքում և այլն։

Այս բոլորը պայմանավորեց այն բացառիկ դերը, որը Սովետական Հայաստանն այսօր խաղում է պատմության ողբերգական հանգամանքների ստիպողությամբ հայրենի հողը լքած և աշխարհի ավելի քան 60 երկրներում հանգրվանած հայերի կյանքում։ Նշենք, որ այսօր հայերի ընդհանուր թիվը հասնում է 6 միլիոնի, որից ավելի քան 4 միլիոնն ապրում է Սովետական Միությունում։ Հայկական նշանակալի գաղութներ կան Լիբանանում, Սիրիայում, Թուրքիայում, Իրանում, Իրաքում, ԱՄՆ-ում, Արգենտինայում, Կանադայում, Ֆրանսիայում, Բուլղարիայում, Հունաստանում, Ավստրալիայում և այլ երկրներում։

Առանց չափազանցումից վախենալու կարելի է ասել, որ արտասահմանում ապրող աշխատավոր հայերը համակված են ազգային հպարտության զգացումով իրենց վերածնված ու ծաղկող հայրենիքի համար։ Բացառությամբ բախտա-

նրանց առաջադրանքներով գնում էին անիմաստ և անօգուտ զոհողության։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո դաշնակցությունը վերջնականապես դեն նետեց «հեղափոխականության» և «սոցիալիստականության» դիմակը, կանգնեց Ռուսաստանի հաղթանակած պրոլետարիատի, աշխատավոր հայերի դեմ պայքարի ուղու վրա, սերտ համաձայնության եկավ Անտանտի իմպերիալիստների և նույնիսկ թուրքական զինվորականության հետ։ Արտակարգ հանգամանքներում, 1918 թ. նա դարձավ «ազատ» և «անկախ» մարիոնետային Հայաստանի հանրապետության կառավարողը և իր քաղաքականությամբ երկիրն ու նրա ժողովրդին հասցրեց կործանման եզրին։

1920 թվականի մայիսին Հայաստանում բռնկեց ժողովրդական ապստամբություն՝ երկրի մի շարք շրջաններում հռչակելով սովետական իշխանություն։ Այդ հերոսական ելույթը դաժանորեն ճնշվեց դաշնակների պարագլուխների կողմից, իսկ նրա ղեկավարները գազանաբար սպանվեցին։ Բայց զոհերն իզուր չէին։ 1920 թվականի նոյեմբերին բազմաչարչար Հայաստանի վրա ծագեց ազատության արևը։ Ժողովուրդը տապալեց ատելի իշխանությունը, երկրից դուրս շպրտեց սնանկացած պոլիտիկաններին։ Սակայն դրանով նրանց սուտ ու եսասիրական հակաժողովրդական գործունեությունը չընդհատվեց։ Դաշնակները չհաշտվեցին պարտության հետ և 1921 թվականի փետրվարին կազմակերպեցին հակահեղափոխական խռովություն։ Զգալով իրենց դիրքերի խախուտությունը, խռովարարներն ուղղակի համաձայնության եկան Թուրքական զինվորականության հետ, ձգտելով հայկական տերիտորիայի մի մասի զիջումով ստանալ նրանց աջակցությունը։ Սակայն և այդ հակաժողովրդական ավանտյուրան ձախողվեց։

Վերջնականապես դուրս շպրտվելով Հայաստանի սահմաններից, դաշնակները կատաղի պայքար ծավալեցին սոցիալիզմի, սովետների երկրի, Սովետական Հայաստանի դեմ։ Ինչպես բացահայտ խոստովանում էր կուսակցության նախկին ղեկավարներից մեկը, դաշնակցությունը՝ իր կյանքը փրկելու և հետագա գոյությունն արդարացնելու համար ունի միայն մի միջոց՝ պայքար բոլշևիզմի դեմ, գործուն ու անողոք պայքար երկրի ներսում, պայքար ամեն կարգի զենքով ու ամեն հնարավոր միջոցներով առանց խտրության (տե՛ս Հովհ. Քաջազնունի, Հ. Հ. Դաշնակցությունը անելիք չունի այլևս: Թիֆլիս, 1927, էջ 72)։ Իր կուսակցության սնանկությունն ըմբռնած «անկախ» Հայաստանի նախկին վարչապետը չէր կարող կանխատեսել, որ շահագործող դասակարգերի մնացորդների վերացումից հետո երկրի ներսում տարվող այդ պայքարը կզրկվի դասակարգային հողից, իսկ սփյուռքահայության ճնշող մեծամասնությունը չի պաշտպանի դաշնակներին, որ նրանից երես կթեքեն նույնիսկ ռամկավարների ու հնչակյանների հայկական մանրբուրժուական կուսակցությունները։

Սովետական Հայաստանից վռնդվելուց հետո դաշնակցության մնացորդները անցան այլ երկրներ և փորձեցին իրենց ազդեցությանը ենթարկել առավել խոշոր հայկական գաղութները ԱՄՆ-ում, Ֆրանսիայում, Եգիպտոսում, Լիբանանում, Սիրիայում։ Նրա ղեկավարները ձգտում էին այդտեղ ընդարձակել իրենց քայքայիչ գործունեությունը, ստեղծելով իրենց բաժանմունքները, մամուլի օրգանները։ Նրանց հրատարակած թերթոնները առանց խղճի խայթի կեղծարարում են սոցիալիստական իրականությունը, մարքս-լենինյան գաղափարախոսությունը և արտատպում են բուրժուական մամուլի բոլոր հակասովետական հրապարակումները, հայրենիքի դավաճանների զրպարտիչ հերյուրանքները։

Դաշնակցությունը բլոկ է կազմում ամենամութ ուժերի հետ։ Բնորոշ փաստ է, որ նրա մի շարք ականավոր գործիչներ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ուղղակի կապեր հաստատեցին ֆաշիստական Գերմանիայի հետ, հույս ունենալով հիտլերականների օգնությամբ վերադառնալ հայրենիք և այնտեղ վերականգնել բուրժուական կարգերը։ Ֆաշիստական հրոսակների ջախջախումից հետո դաշնակցության լիդերները ծառայության մտան ամերիկյան իմպերիալիզմի մոտ։

Սկսելով Արևմտյան Հայաստանը օտարազգի լծից ազատագրելու կոչով, դաշնակցությունը վերջացրեց նրանով, որ օտարազգի իմպերիալիստների՝ բացահայտ ռասիստների ու ժողովուրդների ճնշողների հետ համատեղ դրսից



պայքար ծավալեց արդեն ազատ հայրենիքի դեմ։ Օրինաչա՞փ էվոլյուցիա։ Դա պայմանավորված է կուսակցության բուրժուաազգայնական էությամբ, որի նպատակը եղել ու մնում է հայ պրոլետարիատի անջատումը, առանձնացումը մյուս ազգերի պրոլետարներից, նրա ենթարկումը «իր» բուրժուազիային, անկախ նրանից, թե որտեղ է ապրում հայ աշխատավորը, սերտ համագործակցությունը իմպերիալիստական շրջանների հետ։

Գրքում համոզիչ կերպով բացահայտված են կուսակցության պարագլուխների երկերեսանիությունն ու դեմագոգիան, որոնք ձգտում էին հարմարվել XX դարի սկզբի Ռուսաստանի հեղափոխական իրականությանը, իրենց ցանցը գցել պրոլետարական և մանրբուրժուական մասսաներին։ Դաշնակցության ծրագիրը, որի մեջ անցյալ դարի վերջին ուշ նարոդնիկության գաղափարների ազդեցության տակ մտցվել էին դասակարգային պայքարի, աշխատավոր մասսաների շահերի պաշտպանության և այլ ֆրազներ, չէր արտացոլում կուսակցության քաղաքականությունը։ Պրակտիկ գործունեության մեջ նրա ղեկավարներն անց էին կացնում բուրժուական նացիոնալիզմ, ճգնում էին հայ աշխատավոր մասսաներին մեկուսացնել իրենց դասակարգային եղբայրներից՝ երկրի ներսում և արտասահմանում, դրանով իսկ մերժելով իմպերիալիզմի դարաշրջանում ազգային ու սոցիալական ազատագրության հիմնական պայմանը, ժխտում էին պրոլետարիատի կողմից «իր» բուրժուազիայի դեմ ելույթների անհրաժեշտությունը, քարոզում էին ազգի բոլոր դասակարգերի շահերի «միասնությունը»։

Դաշնակցության դասակարգային էության վերլուծությունը հեղինակին հնարավորություն է ընձեռել եզրակացնելու, որ նա արտահայտել է հայկական բուրժուազիայի (ընդսմին կովկասյան հայկական բուրժուազիայի, որը հանդիպում էր մյուս ազգերի զարգացող բուրժուազիայի ուժեղ դիմադրությանը) շահերը։ Կուսակցությունը բաղկացած էր տարբեր, հատկապես մանրբուրժուական խավերի ներկայացուցիչներից։ Այն ղեկավարում էին հայկական կապիտալիստների, վաճառականների, կուլակների ուղղակի դրածոները։ Իրականում դաշնակցություն կուսակցությունը միշտ կատարում էր իր իսկական տերերի առաջադրանքը։ Պատմության առանձին պահերին, մասնավորապես ռուսական առաջին հեղափոխության տարիներին, նրա դեպի ձախ կատարած քաղաքական զիգզագներն ըստ էության չէին փոխում նրա քաղաքականության բնույթը։ Ինչպես նշված է գրքում, հետագայում կուսակցության ռեակցիոնությունը ուժեղացավ, իսկ ներկա փուլում նա հավատարմորեն ծառայում է ամենասանձարձակ իմպերիալիստական շրջաններին։ Դաշնակցությունն «իր հիմնադրման օրվանից եղել է բուրժուաազգայնական կուսակցություն և նրա էվոլյուցիան կատարվել է միայն նրա բուրժուականության և ռեակցիոնության խորացման ուղիով» (էջ 19)։

Այդ կուսակցության գաղափարախոսությունը ո՛չ ինքնուրույն է, ո՛չ հետևողական ո՛չ էլ տրամաբանական։ Այն իրենից ներկայացնում է սոսկ տարբեր, երբեմն իրար տրամագծորեն հակադիր հասարակական հոսանքների իրար հետ չկապվող գաղափարների խառնակույտ։ Նրանում բացահայտորեն երևում են այնպիսի կողմեր, ինչպես սուբյեկտիվ իդեալիզմը, վոլյունտարիզմը, մարտնչող ազգայնականությունը, անհաշտ պայքարը մարքսիզմ-լենինիզմի դեմ։ Տեսության բնագավառում տարբեր «աստվածներին» երկրպագելը, եզրակացնում է հեղինակը, հետապնդել է «միևնույն նպատակը՝ բավարարություն տալ իրեն սնող դասակարգին, ամեն կերպ նրա շահերը ներկայացնել իբրև ամբողջ ազգի շահեր» (էջ 72)։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում դաշնակցության նացիոնալիզմի ռեակցիոն էության, ինչպես և վոլյունտարիզմի և սուբյեկտիվիզմի վերլուծությունը, որոնք դրսևորվել են «քննադատաբար մտածող» անհատների դերի խիստ չափազանցման, հասարակական զարգացման մեջ ժողովրդական մասսաների վճռական դերի ժխտման մեջ։

Պատմությունը բազմաթիվ վկայություններ է պահպանել այն վիթխարի վնասի մասին, որը հայ ժողովրդին բերել է կուսակցության կողմից նրա պարագլուխների առաջադրանքների իրականացումը։ Արդեն իսկ իր գործունեության առաջին ժամանակներում դաշնակցությունը ձգտում էր անշեղորեն կենսագործել սկզբունքի հասցված խելահեղ գաղափարը. որքան ավելի զոհեր տա

պայքարող ժողովուրդը, այնքան ավելի շատ կլինեն նրա փրկության շանսերը։ Կուսակցության պարագլուխները հույս ունեին այդ գնով նվաճել ցարիզմի և արևմտյան տերությունների բարյացակամ ուշադրությունը, որոնց ռազմական միջամտության հետ էին կապում արևմտյան հայության ազատագրության հույսերը։ Նրանք դեպի իրենց նեղդասակարգային նպատակների իրականացմանն էին գնում աշխատավորների ոսկորների վրայով, իսկ այժմ լկտիաբար հպարտանում են նրանով, որ իրենց իշխանության հասնելը 1918 թվականին ուղղակի հետևանք էր... ցեղասպանության, որը 1915 թվականին կազմակերպեց թուրքական ռեակցիան, այսինքն՝ հետևանք էր ավելի քան մեկուկես միլիոն հայերի՝ Արևմտյան Հայաստանի բնիկ ազգաբնակչության ավելի քան կեսի բնաջնջման։ «Կը կրկնենք և պիտի կրկնենք միշտ, խոստովանում է կուսակցության պաշտոնական օրգաններից մեկը, թե Հայկական Եղեռնին ծնավ Հայաստանի Հանրապետությունը» (տե՛ս «Յուսաբեր», 1968 թ., փետրվարի 3)։ «Այդ տողերի հեղինակները մտածե՞լ են արդյոք,— հարցնում է հեղինակը,— թե ում էր պետք համարյա մարդազուրկ ու օրապակաս այդ «Հանրապետությունը», որը պետք է ծնվեր միլիոնների դիակների, արցունքի ու տառապանքի գնով» (էջ 296, տե՛ս նաև էջ 57—68)։

Գրքում լիովին հիմնավոր եզրակացություն է արված. «Այդ կուսակցությունը երբեք չտատանվեց սոցիալիզմի ու կապիտալիզմի միջև՝ միշտ մնալով վերջինիս բանակում, դավանեց ու երկրպագեց մեռած ու կենդանի շատ ու շատ գաղափարախոսություններ, բայց իր հիմնադրման առաջին օրվանից թշնամական դիրքի մեջ մնաց մարքսիզմի նկատմամբ։ Սփյուռքում իր ավելի քան կեսդարյա գործունեության ընթացքում նա ծառայեց իմպերիալիստական բոլոր խմբավորումներին, ընդհուպ մինչև գերմանական ֆաշիզմին, բայց երբեք չհամագործակցեց արտասահմանյան դեմոկրատական ու հեղափոխական ուժերի հետ։ Դաշնակցությունը հայ բուրժուազիայի հարազատ զավակն էր և իր էվոլյուցիայով հասավ մինչև միջազգային իմպերիալիզմի ագենտի աստիճանի» (էջ 70)։

Սուր վիճաբանական ձևով հեղինակը մերկացնում է արդի դաշնակցական գաղափարախոսների հայացքները, իսկ ավելի ճիշտ՝ սուտ պնդումները։ Նրանք անամոթաբար աղավաղում են սովետական իրականությունը, բոլոր հնարավոր եղանակներով որոնում են մարտնչող հակակոմունիստների աստղթները, ձգտում են ամեն կերպ խոչընդոտել Սովետական Հայաստանի և արտասահմանյան հայության միջև օրեցօր ընդլայնվող ու ամրապնդվող կապերը։ Ինչպես Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVII համագումարում նշեց նրա Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը, «դաշնակցական գաղափարախոսությունը ուղղված է մարդկանց գիտակցությունը ազգայնամոլական գաղափարներով թմրեցնելու նպատակին, իսկ այդ կուսակցության պարագլուխների քաղաքականությունը՝ իմպերիալիզմի հակասովետական գործողությունների, նրա գաղափարախոսական դիվերսիաների ակտիվ պաշտպանության նպատակին։ Մենք միշտ անհաշտ պայքար ենք մղել և այսուհետև էլ կմղենք այդ հետադիմական ուժերի գաղափարախոսության դեմ, կմերկացնենք այն բոլոր փորձերը, որոնք նպատակ ունեն սփյուռքահայերի մեջ անվստահություն սերմանել Սովետական Հայաստանի նկատմամբ, նրանց կտրել մայր հայրենիքից»։

Դաշնակ պարագլուխների հորինվածքներում չկա մի որևէ թեզ, որը մեր փիլիսոփայական և պատմագրական գրականության մեջ ենթարկված չլիներ ջախջախիչ, գիտականորեն հիմնավորված քննադատության։ Դաշնակցության պարագլուխները եռանդով հանդես են գալիս Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության գաղափարների դեմ։ Նրանց գրվածքները ներթափանցված են վայրագ ատելությամբ պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիստական դեմոկրատիայի նկատմամբ, սովետական հասարակության դասակարգային ու տնտեսական հարաբերությունները նրանք ներկայացնում են աղավաղված, կոպիտ ձևերով։ Սակայն, «թերևս ոչ մի հարց այնքան չի զբաղեցնում ու այնքան չի գազազեցնում դաշնակցության տեսաբաններին,— արդարացիորեն նշում է հեղինակը,— որքան ազգային հարցի դրվածքը ՍՍՀՄ-ում։ Խեղաթյուրելով իրականությունը նաև այդ հարցում, դաշնակ գրչակները ոչ միայն քայ-



լում են իրենց ուսուցիչների հետքերով, այլև գտնվում են ավանգարդում և լուտանքների ու հերյուրանքների մեջ հաճախ գերազանցում են իրենք իրենց» (էջ 280)։

Իրենց գրոհների սուր ծայրը դաշնակների պարագլուխներն ուղղում են ազգային հարցում ՍՄԿԿ մարքս-լենինյան տեսության ու քաղաքականության հիմնական սկզբունքների դեմ։ Նրանք պնդում են, թե մարքսիզմ-լենինիզմը ժխտում է ազգն ու ազգությունը, իսկ ՍՄԿԿ-ն իբր նպատակ է դնում ռուսացնել բոլոր ազգերին ու ժողովուրդներին։

Հայտնի՞ են արդյոք դաշնակ գաղափարախոսներին ազգային հարաբերությունների բնագավառում մարքսիզմ-լենինիզմի հիմնադրույթները և ՍՄԿԿ ծրագրային դրույթները։ Ասենք, այն դրույթը, որ մարդու կողմից մարդու շահագործման վերանալու հետ միասին կվերանա նաև մի ազգի շահագործումը մյուսի կողմից, որ սոցիալիզմի ժամանակ լիակատար իրավահավասարությունը ներառում է բոլոր ազգերի ինքնորոշման իրավունքը, լեզուներից որևէ մեկի ամեն մի արտոնության ժխտումը, որ սոցիալիզմի օրոք ազգերի զարգացումն իրականացվում է նրանց եղբայրական բարեկամության ամրապնդման, նրանց ծաղկման ու մերձեցման ուղիներով։ Կամ այն դրույթը, որը ՍՄԿԿ XXVI համագումարում հռչակեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը. «Մեր երկրում հարգվում են ազգային զգացումները, յուրաքանչյուր մարդու ազգային արժանապատվությունը։ ՍՄԿԿ-ն պայքարել է և միշտ էլ վճռականորեն կպայքարի սոցիալիզմի բնույթին խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են շովինիզմը կամ նացիոնալիզմը, ամեն տեսակ նացիոնալիստական խեղաթյուրումների դեմ, լինի դա, ասենք, հակասեմիտիզմ թե սիոնիզմ։ Մենք դեմ ենք այն միտումներին, որոնք նպատակ ունեն արհեստականորեն ավելացնել ազգային առանձնահատկությունները։ Բայց մենք նույնքան էլ անթույլատրելի ենք համարում դրանց արհեստական ուռճացումը։ Կուսակցության սրբազան պարտքն է՝ աշխատավորներին դաստիարակել սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, միասնական սովետական մեծ հայրենիքին պատկանելու հպարտ զգացմունքի ոգով»։

Մարքսիզմ-լենինիզմի այդ և շատ ուրիշ համանման եզրակացություններ, անտարակույս, հայտնի են դաշնակներին։ Բայց նրանք ձևացնում են, թե իբր այդ եզրակացությունները գոյություն չունեն, քանի որ դա ձեռնտու չէ իրենց։ Ձեռնտու չէ, որովհետև ազգերի իրական ազատագրումը, նրանց լիակատար իրավահավասարությունը սոցիալիզմը կապում է բուրժուական կարգերի, մասնավոր սեփականության, մի ազգի կողմից մյուսների վրա գերիշխելու վերացման հետ, որովհետև այդպիսի իրավահավասարության կարևոր պայմանը բոլոր ազգությունների աշխատավորների ինտերնացիոնալ միավորումն է, նրանց եղբայրական փոխօգնությունը, նրանց սոցիալ-տնտեսական, քաղաքական և հոգևոր շահերի, բարոյաքաղաքական կերպարի սկզբունքային ընդհանրությունը։

Դաշնակցության գաղափարախոսները ոչ մի կերպ չեն կարողանում հաշտվել այն բանի հետ, որ Սովետական Միության տասնյակ ազգերի ու ազգությունների, այդ թվում և Հայկական ՍՍՀ-ի, հոյակապ նվաճումները (այդ փաստը նրանք, ատամները կրճտացնելով, երբեմն ստիպված են ընդունել) հնարավոր դարձան սոցիալիզմի ծնած ժողովուրդների եղբայրական համագործակցության և բարեկամության շնորհիվ։ Հնարավորություն չունենալով ըստ էության վիճարկելու հանրահայտ փաստերը, նրանք պնդում են, թե Հայկական ՍՍՀ-ն իբր պետություն չէ, այլ սոսկ «ՍՍՀՄ-ի նահանգ»։ Նույնիսկ Բրիտանական հանրագիտարանն է ընդունում, որ Սովետական Հայաստանը՝ ի տարբերություն Թուրքական Հայաստանի, ունի քաղաքական ինքնորոշում (տե՛ս Encyclopaedia Britanica. Vol. 2, 1965, p. 419), տասնյակ արտասահմանյան երկրներ ընդունում են սովետական հայկական պետության պաշտոնական և ոչ պաշտոնական ներկայացուցիչներին, իսկ հայ ժողովրդի «պաշտպանի ու շահերի արտահայտչի» դերին հավակնող դաշնակցությունը համառորեն փորձում է ստվերարկել ցերեկվա լույսը։

Գրքի հեղինակը ցույց է տալիս, որ Սովետական Հայաստանը ոչ միայն գո-

յուլթյուն ունի, այլև հաջողությամբ բազմաթիվ բարդ պրոբլեմներ է լուծում.
ամենից առաջ նա համամիութենական պլաններին համապատասխան հասել է
դինամիկ տնտեսական աճի։ Այժմ Սովետական Հայաստանը մեկ օրում ավելի
արտադրանք է թողարկում, քան ամբողջ 1913 թվականին։ Արդյունաբերական
արտադրանքի արտադրությունը 1980 թվականին 1928 թվականի համեմատու-
թյամբ աճել է համարյա 400 անգամ։ Սովետական բոլոր հանրապետություն-
ների օգնությամբ այստեղ հզոր էներգետիկ բազա է ստեղծվել (1980 թվականին
Հայաստանն արտադրել է ավելի քան 13 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներ-
գիա, որը բնակչության մեկ շնչի հաշվարկով համարյա համապատասխանում է
այնպիսի երկրի մակարդակին, ինչպիսին Ֆրանսիան է)։ Հանրապետությունում
գործում են մեքենաշինության և հաստոցաշինության, էլեկտրոնիկայի ու ռա-
դիոէլեկտրոնիկայի, սարքաշինության ու ավտոմատացման միջոցների, գունա-
վոր մետաղաձուլության ու քիմիայի, շինարարական ինդուստրիայի, թեթև ու
սննդի արդյունաբերության ավելի քան 660 ձեռնարկություններ ու միավորում-
ներ։ Հանրապետությունն այսօր արտադրում է արդիական հաստոցներ և ճըշգ-
րիտ էլեկտրոնային սարքեր, կոմպյուտերներ և ավտոմոբիլներ, էլեկտրական
մեքենաներ ու կոմպրեսորներ։ Հանրապետության տերիտորիայում գտնվող
ձեռնարկությունների արտադրանքն արտահանվում է աշխարհի ավելի քան 70
երկրներ։

Տնտեսական ու սոցիալական արմատական վերափոխումների շնորհիվ
հայ ազգը հետամնաց գյուղացիական ազգից վերածվեց բարձր զարգացած սո-
ցիալիստական ազգի, որը բաղկացած է արդիական բանվոր դասակարգից,
կոոպերացված գյուղացիությունից և ժողովրդական մտավորականությունից,
որոնց միջև եղած սահմաններն ավելի ու ավելի են ջնջվում։ Այն բարձր կրթու-
թյամբ բանվորների ու գյուղացիների ազգ է, գիտնականների ու արվեստագետ-
ների, գրողների ու կոմպոզիտորների ազգ, որը, ինչպես նշել է ընկեր Լ. Ի.
Բրեժնևը, բնութագրվում է բարձր կուլտուրայով, կուլտուրայով կենցաղում,
մարդկանց հետ շփվելիս, աշխատանքի կուլտուրայով, գիտական մտքի բարձր
թռիչքով և արվեստի վառ ինքնատիպությամբ։ «...Դա հայրենասերների ժողո-
վուրդ է, որը ջերմ սիրում է իր հայրենի երկիրը՝ Սովետական Սոցիալիստական
Հայաստանը», դա «հայրենասիրության ոգին սքանչելիորեն զուգորդում է սո-
վետական մարդու մի այլ, ոչ պակաս արժեքավոր, հատկության՝ ինտերնա-
ցիոնալիզմի հետ»։

Դաշնակցության գաղափարախոսների աղքատամիտ ըմբռնման համաձայն
ազգային զգացումն անհնարին է զուգակցել ինտերնացիոնալիզմի հետ։ Մինչ-
դեռ բանն այն է, որ այդպիսի զուգակցումը երկրի մասշտաբով իրագործելի է
միայն այն հասարակարգում, ուր հաղթահարվել է դասակարգային հակամար-
տությունը, այսինքն այնտեղ, ուր արդեն բացակայում են բուրժուազիան և
մյուս շահագործող դասակարգերը։ Իսկ դաշնակցության պարագլուխները ազգն
առանց բուրժուազիայի չեն պատկերացնում, և ինտերնացիոնալիզմն ու ժողո-
վուրդների բարեկամությունը նրանց համար համազոր են հայրենասիրության
և ազգի կործանմանը։ Դրա համար էլ նրանք փորձում են ամենայն կերպ նվա-
ղեցնել, նվաստացնել սոցիալիզմի նորարարական դերը, ՍՍՀ Միության՝ որպես
սովետական ժողովուրդների իրավահավասար միավորման դերը, ՍՄԿԿ, սովե-
տական իշխանության դերը հանրապետության հոյակապ նվաճումներում։

Անտարակույս, յուրաքանչյուր ժողովուրդ ինքն է կերտում իր պատմու-
թյունը, իր կյանքը, ինքն է ստեղծում իր արժույթները։ Սակայն ստեղծարար
աշխատանքի համար ցանկացած ժողովրդին պետք են բարենպաստ սոցիալ-
քաղաքական պայմաններ, որոնք շատ դարեր ի վեր հայ ժողովուրդը չի ունեցել։
Սովետական իշխանությունը, ազատագրված ժողովուրդների դաշինքը նրա հա-
մար ստեղծեցին այդ պայմանները և շղթայազերծեցին հայ ազգի ստեղծա-
գործ ոգին։

Հայ ժողովրդի «փրկիչ» կուսակցությունը տագնապի փող է հնչեցնում.
«Օգնեցե՛ք, ազգը ձեռքից գնո՛ւմ է», «ձուլվո՛ւմ է», «կործանվո՛ւմ է»... Բա-
րեբախտաբար, դաշնակցության սուբյեկտիվ տրամաբանությունից բացի կա
նաև իրերի, հանգամանքների, օբյեկտիվ իրականության շատ ավելի զորեղ



տրամաբանությունը, որի հետ երբեք հաշվի չնստեց և չի էլ ցանկանում նստել
այդ կուսակցությունը (էջ 285)։ Այդ են վկայում համոզիչ փաստերը։ Հայերի
ընդհանուր թվաքանակը մեր երկրում, բնակչության մարդահամարների տվյալ-
ների համաձայն, 1926 թվականի 1568 հազարից 1979-ին հասել է 4151 հազա-
րի, այսինքն ավելացել է 2,6 անգամ։ Տեղի է ունենում հայերի անընդհատ կենտ-
րոնացում և թվաքանակի աճ հայրենի հողի վրա։ Այսպես, 1926 թվականին
Հայկական ՍՍՀ-ում ապրում էր 743,6 հազար, իսկ 1979-ին՝ 2725 հազար հայ,
այսինքն 3,7 անգամ ավելի շատ։ Այնուհետև, 1979 թվականի մարդահամարի
ժամանակ Սովետական Միության հայության 90,7 տոկոսը մայրենի լեզու է
անվանել հայերենը։ Մի քանի հարյուր հազար հայեր, որոնք երկար ժամանակ
ապրում են ՍՍՀՄ մյուս ժողովուրդների մեջ, մայրենի են համարել այդ ժողո-
վուրդների լեզուները։ Սակայն նրանք համարյա բոլորն այս կամ այն չափով
գիտեն հայերեն։ Դաշնակցության գաղափարախոսներն անամոթաբար լռում են
այն մասին, որ «ամերիկյան դրախտում», ուր նրանք գործում են, հայերի ճըն-
շող մեծամասնությունը ոչ միայն չգիտե մայրենի լեզուն, այլև չի էլ կարող
նրանով կրթություն ստանալ, քանի որ պաշտոնական կրթությունն այնտեղ
տարվում է անգլերեն, իսկ գոյություն ունեցող հայկական դպրոցները (դրանք
շուրջ 16 են) մայրենի լեզու են սովորեցնում սոսկ մի քանի հազար մանուկների։
Ջնայած բնական մասնակի ազգամիջյան ինտեգրացիային (խառն ամուսնու-
թյուններ և այլն), որ տեղի է ունենում ժողովուրդների լիակատար իրավահա-
վասարության պայմաններում, ՍՍՀՄ-ում հայերի թվաքանակն անշեղորեն
աճում է, իսկ արտասահմանում վերջին 60 տարում այն չի ավելացել, թեև նոր-
մալ պայմաններում նա պետք էր այդ ժամանակահատվածում առնվազն կրկ-
նապատկվեր։ Իսկ ո՞ւր է կորել բնական աճը։ Այն լիովին ասիմիլացվել է։
Այսպիսին են փաստերը։

Դաշնակցության գաղափարախոսների ճամարտակությունները ՍՍՀՄ-ում
և Սովետական Հայաստանում հայոց լեզվի գործածության և գործառության
իբր թե կրճատման, ռուսաց լեզվի «բռնատիրության» մասին հերքվում են մեր
բուն իրականությամբ։ Ինչպես հայտնի է Սովետական Միությունում մայրենի
կամ այլ լեզու օգտագործելու հարցը ամեն մարդ որոշում է ինքնուրույն։ ՍՍՀ
Միությունում չկա համընդհանուր պարտադիր պետական լեզու, ամեն ազգ ու
ազգություն լիակատար իրավունք ունի կյանքի բոլոր ոլորտներում ազատ
օգտագործելու իր ազգային լեզուն։ Այսպես, Հայկական ՍՍՀ սահմանադրության
մեջ (հոդված 72) հայոց լեզուն հանրապետության պետական լեզու է հռչակված։
Դրա հետ մեկտեղ ապահովվում է ռուսերեն և այլ լեզուների ազատ օգտագոր-
ծումը, որոնցով հաղորդակցվում է բնակչությունը։

Դաշնակցության գաղափարախոսները «անհանգստացած են» նրանով, որ
ՍՍՀՄ-ում հայերի նշանակալի մասն ազատ խոսում է ռուսերեն։ Նրանց ըմբըռ-
նումով դա սահմանափակում է հայոց լեզվի գործածությունը և նպաստում
ազգային ոգու, ազգային մշակույթի «թուլացմանը»։ Մինչդեռ մայրենի լեզվի
հետ մեկտեղ նաև ռուսերենի կամավոր ուսումնասիրությունը դրական նշանա-
կություն ունի, քանի որ նպաստում է փորձի փոխադարձ փոխանակությանը և
յուրաքանչյուր ազգի ու ազգության հաղորդակից լինելուն համասովետական և
համաշխարհային մշակույթին։ Ռուսաց լեզուն բնականորեն դարձել է ՍՍՀՄ
բոլոր ժողովուրդների ազգամիջյան հաղորդակցության և համագործակցության
լեզուն։

Ազգային և համամիութենական մասշտաբով նշվել են Հայաստանի ակա-
նավոր ղավակների հոբելյանները— հայ գրերի ստեղծող Մեսրոպ Մաշտոցի
ծննդյան 1600-ամյակը, բանաստեղծ Սայաթ-Նովայի ծննդյան 250-ամյակը,
մեծ փիլիսոփա Դավիթ Անհաղթի ծննդյան 1500-ամյակը, կոմպոզիտոր Կոմի-
տասի, գեղանկարիչ Մ. Սարյանի, գրող Հ. Թումանյանի, բանաստեղծներ Ա.
Իսահակյանի, Ե. Չարենցի և շատ ուրիշների հոբելյանները։ Հայ մշակույթի
այդ և տասնյակ այլ ականավոր ներկայացուցիչների երկերի թարգմանությունն
ու հրապարակումը ռուսերեն հնարավորություն տվեց նրանց ստեղծագործու-
թյուններին հաղորդակից դարձնել ՍՍՀՄ բոլոր և աշխարհի շատ ժողովուրդ-
ների։

Այսօր հանրապետության բնակչությունը ոչ միայն գլխովին գրագետ է։ Վիճակագրության տվյալներով նրա 10 տարեկան և ավելի բարձր տարիք ունեցողների 71,3 տոկոսը ունի բարձրագույն ու միջնակարգ (լրիվ և թերի) կրթություն, որն ամենաբարձր ցուցանիշն է ՍՍՀՄ բոլոր հանրապետությունների մեջ։ Տաս հազար բնակչին ընկնող ուսանողների քանակով Հայաստանը վաղուց առաջ է անցել այնպիսի երկրներից, ինչպես Անգլիան, Ֆրանսիան, Ճապոնիան (տե՛ս էջ 283)։ Սովետական Հայաստանը դարձել է մայրենի լեզվով բարձրագույն կրթության կենտրոն արտասահմանյան շատ հայկական գաղութների հազարավոր պատանիների ու աղջիկների համար։ Գիտական ոչ մի օջախ չունեցող երկիրն այսօր դարձել է գիտության երկիր։ Սովետական Հայաստանում ներկայումս գործում են 100-ից ավելի գիտահետազոտական հիմնարկներ, որտեղ բեղմնավոր աշխատանք են կատարում 19 հազար գիտական աշխատողներ։ «Աստրոֆիզիկայի, մաթեմատիկայի, մեխանիկայի, ֆիզիկայի, հաշվողական տեխնիկայի, ատոմի միջուկի և կոսմիկական ճառագայթների, հնագիտության, պատմության և գիտության բազմաթիվ այլ ճյուղերում Հայաստանի գիտնականների կատարած աշխատանքը լայն ճանաչում է գտել ոչ միայն Սովետական Միությունում, այլև նրա սահմաններից դուրս» (էջ 284)։

Դաշնակցությունը և նրա գաղափարախոսները, նշվում է գրքում, չտեսան և շարունակում են չտեսնել, որ սոցիալիզմի պայմաններում ազգերի միջև հաստատված սկզբունքորեն նոր հարաբերությունների հիմքի վրա պատմության գիրկն անցան նրանց միջև եղած երբեմնի անվստահությունն ու թշնամանքը, հաստատվեց նրանց եղբայրական կուռ դաշինքը, որ այդ հիմքի վրա մեր երկրի բոլոր ժողովուրդները վիթխարի առաջընթաց թռիչք կատարեցին կյանքի բոլոր ասպարեզներում և մեր բազմազգ հայրենիքում, Լենինի խոսքերով ասած, ստեղծվեց «ազգային խաղաղության մի այնպիսի օրինակ, որը չի տեսնված բուրժուազիայի ժամանակ և անհնարին է բուրժուական հասարակարգում» (Երկեր, հ. 32, էջ 402)։

1920 թվականի նոյեմբերին հաջորդած առաջին տասնամյակներում, երբ նոր, իսկապես ժողովրդական իշխանությունը հերոսական ջանքեր էր գործադրում լրիվին քայքայված տնտեսությունը վերականգնելու, իմպերիալիստական պատերազմի, թուրքական զավթիչների և դաշնակցության անփառունակ կառավարման հասցրած սոսկալի վերքերը բուժելու համար, հանրապետությունը հատկապես կարիք ուներ նշանակալի, համակողմանի օգնության։ Այդ օգնությունն ստացվում էր առաջին հերթին Սովետական Ռուսաստանից։ Հայաստանի օգնության կոմիտեի միջոցով վերածնվող հայրենիքին որոշակի նյութական աջակցություն ցույց տվեցին նաև սփյուռքահայության լայն աշխատավորական մասսաները։ Հայրենական մեծ պատերազմի ժամանակ սփյուռքահայերը օգնում էին հերոսական սովետական ժողովրդին կարմիր բանակի համար տանկեր կառուցելու միջոցներ հավաքելով, հակահիտլերյան կոալիցիայի զինված ուժերի շարքերում մարտնչելով։

ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցումով մայրենի երկրի և սփյուռքի հարաբերությունները խորացան։ Այժմ արդեն զարգացած և տարեցտարի ծաղկող սոցիալիստական հանրապետությունն սկսեց օգնել ամբողջ աշխարհով մեկ սփռված հայրենակիցներին, Հայրենական պատերազմից առաջ և հետո իրականացրեց ավելի քան 250 հազար հայերի հայրենադարձությունը։ Այդ նպատակով ստեղծված են Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին կից արտասահմանից վերադարձող հայերի ընդունման և տեղավորման կոմիտե, ինչպես և հասարակական կազմակերպություն՝ Սփյուռքահայության հետ մշակութային կապերի կոմիտե։ Դրանք կազմակերպում են մայրենի լեզվով դասագրքերի հրատարակում արտասահմանի հայկական դպրոցների համար, սփյուռքահայ երիտասարդության ուսումնառությունը հայրենիքի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, հատուկ ռադիոհաղորդումների պատրաստումը, հատուկ լրագրի և ամսագրի թողարկումը, նպաստում են մշակույթին և տուրիստական խմբերի, ազգականների փոխադարձ այցելություններին և այլն։



Հետպատերազմյան շրջանում, երբ ֆաշիզմի նկատմամբ Սովետական Միության մեծ հաղթանակը աշխարհում անչափ բարձրացրեց նրա հեղինակությունը, հետևաբար և Սովետական Հայաստանի՝ որպես իմպերիալիստական ամենասանձարձակ ռեակցիայի ուժերի դեմ առաջադեմ մարդկության այդ պատմական ճակատամարտի մասնակցի հեղինակությունը, սփյուռքահայ աշխատավոր մասսաներն ավելի սերտորեն ամրապնդեցին իրենց կապերը իրենց սոցիալիստական հայրենիքի հետ։ Ինչպես հանրապետության կոմկուսի XXVII համագումարում հավաստեց Կ .Ս. Դեմիրճյանը, «Սովետական Հայաստանը միշտ էլ հոգատարություն է ցուցաբերում ճակատագրի կամքով օտարության մեջ սփռված աշխատավոր հայերի նկատմամբ։ Այդ հոգատարության փայլուն վկայությունն է արտասահմանյան հայերի շարունակվող հայրենադարձությունը։ Դառնալով Սովետական Միության լիիրավ քաղաքացիներ, նրանք իրենց արժանի ներդրումն են կատարում հանրապետության էկոնոմիկայի, կուլտուրայի և գիտության զարգացման գործում»։

Սովետական Հայաստանը բացառիկ հաջողությունների է հասել կյանքի բոլոր բնագավառներում։ Նրա գոյությունն ու համակողմանի առաջընթացը հայ ժողովրդի հետագա անշեղ զարգացման երաշխիքն են։

ՍՄԿԿ XXVI համագումարը, որը սահմանեց ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունները, խաղաղության պահպանման ու ամրապնդման պայքարի արդյունավետ միջոցառումները, Սովետական Հայաստանի առջև նոր լուսավոր հեռանկարներ է բացում։

Խղճուկ բախտախնդիրների մնացորդները դեռ ոռնում են։ Իսկ քարավանը քայլում է, անկանգ առաջ է քայլում։ Աշխարհում չկա այնպիսի ուժ, որն ընդունակ լինի կասեցնելու Սովետական Միության ժողովուրդների վերելքը դեպի կոմունիստական վաղվա լուսավոր գագաթները։

«Коммунист» № 9, 1981 г.

---

# ԱՆԴՐԿՈՎԿԱՍԻ ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ԳԱՂԱՓԱՐԱՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ ՄՈՒՆԻՑԻՊԱԼ ԿԱՄՊԱՆԻԱՅՈՒՄ

ՌՈՒՍԱՍՏԱՆՈՒՄ ՓԵՏՐՎԱՐՅԱՆ բուրժուադեմոկրատական հեղափոխության հաղթանակից հետո, երբ բոլշևիկյան կուսակցությունը, Լենինի գլխավորությամբ, սոցիալիստական հեղափոխության կուրս վերցրեց, նրա առջև իր ողջ սրությամբ ծառացավ աշխատավորական զանգվածների նվաճման հարցը:

1917 թ. ամռանը և աշնանը քաղաքային դումաների ընտրությունների ընթացքում, ղեկավարվելով պայքարի լեգալ հնարավորությունների մաքսիմալ օգտագործման լենինյան ցուցումներով, Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունները մասսաների նվաճման, սոցիալիստական հեղափոխության քաղաքական բանակի ստեղծման նպատակով հսկայական աշխատանք ծավալեցին:

Չնայած մունիցիպալիտետների գործունեության նեղ ոլորտին՝ բոլշևիկները ինչպես կենտրոնում, այնպես և ծայրամասերում կարևորեցին դրանք, այդ ոլորտի գործունեությունը համարեցին ճնշող դասակարգերի և նրանց կուսակցությունների քաղաքականությունը մերկացնելու, մասսաների պայքարը կազմակերպելու միջոց՝ հանուն պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման: Այլ դիրք բռնեցին բուրժուական և մանր բուրժուական համաձայնողական կուսակցությունները: Տեղական ինքնավարության մարմինները հակադրելով սովետներին՝ նրանք ամեն կերպ ջանացին ապացուցել, թե իբր մասսաները ռեֆորմների ճանապարհով կարող են հասնել լուրջ հաջողությունների և «հեղափոխական ինքնավարությունների» միջոցով աստիճանաբար անցնել սոցիալիզմի:

Վ. Ի. Լենինը խիստ քննադատեց համաձայնողական կուսակցությունների «մունիցիպալ սոցիալիզմը»՝ այն որակելով «քաղքենիական սոցիալիզմ»: Նա նշեց, որ համաձայնողականների դեմագոգիկ քարոզների տակ թաքնված են բուրժուազիայի և սոցիալ-շովինիստների ձգտումները՝ թուլացնել պրոլետարիատի դասակարգային պայքարը, ամեն գնով հասնել դասակարգային հաշտեցման և աշխատավորների ուշադրությունը հեղափոխության արմատական խնդիրներից շեղել տնտեսական մանր հարցերի վրա:

ՌՍԴԲ(բ)Կ մունիցիպալ ծրագրի հիմքում դրված էին լենինյան հետևյալ կարևոր դրույթները. «1) Ոչ մի աջակցություն իմպերիալիստական պատերազմին (ո՛չ փոխառությանը աջակցելու ձևով և ընդհանրապես ո՛չ մի ձևով): 2) Ոչ մի աջակցություն կապիտալիստների կառավարությանը: 3) Թույլ չտալ վերականգնելու ոստիկանությունը: Այն փոխարինել համաժողովրդական միլիցիայով» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 32, էջ 30): Լենինյան սկզբունքային այս դրույթները բոլշևիկյան մունիցիպալ ծրագիրն օժտեցին հստակ քաղաքական դիրքորոշմամբ:

Բոլշևիկները, մասսաներին դաստիարակելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, հաշվի առնելով Անդրկովկասում ստեղծված բարդ իրադրությունը, մունիցիպալ կամպանիայում առանձնակի ուշադրություն նվիրեցին բուրժուաազգայնական կուսակցությունների դեմ մղվող պայքարին: Կիրառելով ագիտացիայի և պրոպագանդայի տարբեր ձևեր ու եղանակներ՝ բոլշևիկները մասսաների առջև մերկացրին բուրժուաազգայնական կուսակցությունների և նրանց համախոհների հակաժողովրդական էությունը: Նրանք աշխատավորներին բացատրում էին լենինյան այն սկզբունքը, որ պրոլետարիատը առանց բոլոր ազգությունների բանվորների ամենասերտ և լիակատար դաշինքի չի կարող սոցիալիզմի համար պայքար մղել և պաշտպանել իր ամենօրյա տնտեսական շահերը (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 23, էջ 386—387):

Անդրկովկասի բոլշևիկները, ապրիլից սկսած, համառորեն պահանջում էին ցրել հին ցենզային դումաները և դրանք հանձնել աշխատավորների ձեռքը:

Ինքնավարությունների վերակազմման վերաբերյալ ժամանակավոր կառավարության հրապարակած օրենքից հետո (1917 թ. ապրիլի 15) սկսվեց ընտրական կամպանիան: Բոլոր քաղաքական կուսակցությունները և խմբերը եռանդուն կերպով ընդգրկվեցին ընտրական կամպանիայի մեջ:

Նախընտրական պայքարը հիմնականում ծավալվեց երեք կուսակցական խմբերի միջև: Վ. Ի. Լենինի բնորոշմամբ դրանք էին. «1) կ.-դ. և նրանցից աջ, 2) մանր բուրժուազիայի (նարոդնիկներ) և բուրժուազիայի ազդեցությանը ենթարկված բանվորների մի մասի (մենշևիկ-պաշտպանողականներ) կուսակցությունները և 3) հեղափոխական պրոլետարիատի կուսակցությունը (բոլշևիկներ)» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 31, էջ 311): Այդ հիմնական կուսակցություններից բացի, ինչպես կենտրոնում, այնպես էլ ծայրամասերում հանդես եկան «անկուսակցական խմբեր», որոնք իրենցից որոշակի ուժ չէին ներկայացնում և տատանվում էին կադետների, էսէռների և այլ բուրժուական կուսակցությունների միջև:

Թեկնածուների առանձին ցուցակներով քաղաքային դումաների ընտրություններին Բաքվում և Թիֆլիսում մասնակցեցին 12 կուսակցություններ և խմբեր, Ալեքսանդրապոլում, Ախալցխայում և Նոր-Բայազետում՝ 5, Երևանում՝ 9, Բաթումում և Սուխումում՝ 8, Գորիսում և Թելավում՝ 6, Գանձակում՝ 7, Կարսում և Շուշիում՝ 4: Անդրկովկասի քաղաքային բնակչությունը, հատկապես աշխատավորական խավերը, որոնք նախկինում զրկված են եղել ընտրական իրավունքից, փորձի և հմտության բացակայության պատճառով դժվարանում էին կողմնորոշվել քաղաքական այդ խայտաբղետ հորձանուտում: Մրցող բուրժուական և ազգայնական կուսակցությունները, որոնք տենդորեն նախապատրաստվում էին դումաների ընտրություններին, բոլորն էլ արտաքուստ հեղափոխականի սքեմ էին հագել, բայց ներքուստ պահպանել իրենց բուրժուաշովինիստական բուն էությունը: Եվ ահա 1917 թվականին, երբ գործնականում ծառացել էր մասսաներին հեղափոխության երկրորդ փուլին նախապատրաստելու հարցը, համաձայնողական կուսակցությունները իրենց «հեղափոխական» և «մարքսիստական» ֆրազներով ապակողմնորոշում էին աշխատավորներին, շեղում նրանց ճշմարիտ ուղուց:

Ինքնուրույն պլատֆորմներով և անկախ ցուցակներով հանդես եկան Բաքվի, Թիֆլիսի, Ալեքսանդրապոլի, Գանձակի և Շուշու բոլշևիկյան կազմակերպությունները: Նրանք հրաժարվեցին բլոկի մեջ մտնել համաձայնողական կուսակցությունների հետ, դրանով իսկ ավելի ամրապնդելով իրենց շարքերի միասնությունն ու համախմբվածությունը, իսկ դա մեծ դեր խաղաց սոցիալիստական հեղափոխության հասունացման համար պրոլետարական մասսաների ղեկավարի իրենց դերը հաջողությամբ կատարելու գործում: Բոլշևիկների մունիցիպալ կամպանիան Անդրկովկասում գլխավորեցին Ս. Շահումյանը, Ա. Ջափարիձեն, Մ. Ցխակայան, Ֆ. Մախարաձեն, Մ. Ազիզբեկովը: Իսկ տեղերում ՌՍԴԲ(բ)Կ մունիցիպալ քաղաքականությունը կենսագործողների մեջ աչքի ընկան Գ. Աթարբեկյանը, Պ. Արվելաձեն, Ռ. Դաշտոյանը, Ս. Էֆենդիևը, Մ. Իսրաֆիլբեկովը (Կադիրլի), Ն. Կոլեսնիկովան, Գ. Հայկունին, Աշ. Հովհաննիսյանը, Բ. Ղարիբջանյանը, Պ. Մակինցյանը, Ն. Նարիմանովը, Գ. Շահվերդյանը, Մ. Տորոշելիձեն և ուրիշներ: Նրանք մունիցիպալ կամպանիան վարեցին քաղաքական հունով՝ դրա հիմնական առանցքային խնդիրը դարձնելով իշխանության, պատերազմի և հողի հարցերը: Բոլշևիկյան կազմակերպությունները քաղաքային դումաների իրավասուների թեկնածուների ցուցակներում ընդգրկեցին առաջավոր բանվորների ու զինվորների, անվանի բոլշևիկների, մտավորականության լավագույն ներկայացուցիչների: Թիֆլիսի բոլշևիկների № 8 ցուցակի 120 թեկնածուներից 52-ը բանվորներ էին, 26-ը՝ զինվորներ, 42-ը՝ մտավորականներ, բանվորներն ու զինվորները միասին կազմում էին 65 տոկոս:

Ընտրական կամպանիան սկսվելուն պես՝ բոլշևիկները նշեցին, որ քաղաքային դումաների ընտրությունները տեղական գերատեսչական նշանակության իրադարձություն չեն, և որ պրոլետարիատի դասակարգային պայքարի հետագա հաջողությունների համար դրանք ունեն քաղաքական նշանակություն:

Նախընտրական կամպանիան կազմակերպելու, մասսաների շրջանում բոլշևիկյան պրոպագանդան ուժեղացնելու նպատակով ՌՍԴԲ(բ)Կ Բաքվի կոմիտեին կից ստեղծվեց մունիցիպալ խումբ[1], ապա՝ ընտրական հանձնաժողով, իսկ Թիֆլիսի կոմիտեին կից՝ կենտ-

[1] ՄԼԻ ադրբեջանական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 276, ց. 3, գ. 56, թ. 12 և հաջ.:

րոնական ընտրական կոմիտե, որը սկզբում տեղավորված էր Ծախվերդյանի բնակարանում (Կոչուբեյի փողոց, տուն 20), ապա «Կավկազսկի ռաբոչի» թերթի գրասենյակում («Кавказский рабочий», 1917, հուլիսի 5, 16, 20): Ընտրական կոմիտեում, ապա նաև ստեղծված շրջանային հանձնաժողովներում և ենթաշրջանային բյուրոներում ստուգվում և ճշտվում էին ընտրողների ցուցակները, հրավիրվում ագիտատորների խորհրդակցություններ, կազմակերպվում ժողովներ ու դասախոսություններ, մասսաներին պարզաբանվում, որ պրոլետարական ինտերնացիոնալիզմի միակ դրոշակակիրը բոլշևիկյան կուսակցությունն է:

Ընտրությունների նախապատրաստությունն ու անցկացումը Անդրկովկասում տեղի ունեցան դասակարգային սուր պայքարի պայմաններում: Պետրոգրադի հուլիսյան դեպքերից հետո հակահեղափոխությունը բացահայտ հարձակման էր անցել ու ամեն տեսակ զրպարտություն տարածել բոլշևիկյան կուսակցության ու նրա առաջնորդ Վ. Ի. Լենինի հասցեին:

Թիֆլիսի քաղաքային դումայի ընտրություններից մեկ օր առաջ մենշևիկյան «Բորբա» և «Էրթոբա» («Միասնություն») թերթերը լուտանքներ էին թափում բոլշևիկների հասցեին, կասկած հայտնելով, թե հազիվ գտնվի «ողջամիտ մի ընտրող, որը նրանց հանձնարարի քաղաքային տնտեսությունն ու հեղափոխական գործը» («Кавказский рабочий», 1917, հուլիսի 26): Այդ պայքարում աշխատում էին ետ չմնալ նաև դաշնակցականները: Հուլիսի 9-ին Ալեքսանդրապոլում կազմակերպված միտինգում դաշնակցականներ Նժդեհը և Տերտերյանը հանդես եկան բոլշևիկների դեմ («Պայքար», 1917, հուլիսի 26): Դաշնակցականներն ու վրաց ֆեդերալիստները ընտրություններին ջանում էին տալ ազգային բնույթ: Իսկ մուսավաթականները հատկապես մոլեգին ու անխնա պայքար մղեցին նավթահանքային շրջանները քաղաքին միացնելու բանվորների արդարացի պահանջի դեմ:

Բուրժուազգայնական կուսակցությունները ձգտում էին փոխել պայքարի սոցիալիստական էությունը, որպեսզի կարողանային օգտվել անգիտակից մասսաների քաղաքական տհասությունից: Միայն բոլշևիկներն էին, որ հետևողական կերպով և անխնա մերկացնում էին բուրժուազիայի հակաժողովրդական, հակահեղափոխական էությունը, պատռում մանրբուրժուական կուսակցությունների համաձայնողական դիմակը:

Մունիցիպալ կամպանիայում մասսաների վրա ներգործելու կարևոր միջոցներից մեկը բոլշևիկյան մամուլն էր, ամենից առաջ՝ բոլշևիկյան «Պրավդան», որտեղ պարբերաբար տպագրվում էին Վ. Ի. Լենինի հոդվածները, որոնք կարևոր նշանակություն ունեցան մասսաներին կուսակցության շուրջը համախմբելու, բուրժուական իշխանությունը տապալելու գործում: Բացի լրագրերից, բոլշևիկները տպագրում և տարածում էին ագիտացիոն գրականություն՝ բրոշյուրներ, կոչեր, թռուցիկներ և այլն:

Ուշագրավ է այդ օրերին բոլշևիկյան «Սոցիալ-դեմոկրատ» թերթում լույս տեսած «Քաղաքային ինքնավարությունը և դեմոկրատիան» հրապարակախոսական հոդվածը, որի հեղինակն է Ա. Կարինյանը: Այդ հոդվածը նա գրել է Ստ. Շահումյանի հանձնարարությամբ, իսկ հետո հրատարակել նաև առանձին գրքույկով (Բաքու, 1917 թ. հուլիս): Գրքույկում նա անխնա քննադատում է բուրժուազիային, ցույց տալով, որ վերջինս դումաները օգտագործել է իր դիրքերն ամրապնդելու, աշխատավոր ժողովրդին շահագործելու, հարստահարելու և նրա հաշվին իր գրպանները ուռճացնելու նպատակով: Որպեսզի դեմոկրատիան տիրական դիրք գրավի ինքնավարության մեջ, գրում է Ա. Կարինյանը, պետք է հեղափոխական բանվորության հետևողական և առաջավոր տարրերը եռանդուն ընտրական պայքար սկսեն: Սոցիալ-դեմոկրատիան պետք է լայնորեն տարածի իր ծրագիրը, արծարծի իր հիմնական սկզբունքները և համախմբի ժողովրդական տարրերը միջազգայնության դրոշակի շուրջը: Ընտրական պայքարը քաղաքական պայքար է: Ահա թե ինչու սոցիալ-դեմոկրատիան պետք է ամենալայն պրոպագանդա մղի («Սոցիալ-դեմոկրատ», 1917, հունիսի 4): Այս գրքույկը յուրատեսակ պատմական փաստաթուղթ է: Դա այն ոչ մեծաթիվ գրվածքներից մեկն է, որում պաշտպանվում էին ՌՍԴԲ(բ)Կ մունիցիպալ քաղաքականության լենինյան դրույթները:

Բոլշևիկ-ագիտատորները մասսաների առջև հանդես էին գալիս դասախոսություններով ու զրույցներով, պարզաբանում ՌՍԴԲ(բ)Կ մունիցիպալ ծրագիրն ու տակտիկան: Նրանք հանդես էին գալիս նաև զորանոցներում: «Կավկազսկի ռաբոչի», «Բակինսկի ռաբոչի», «Բանվորի կռիվը», «Սոցիալ-դեմոկրատ» թերթերը հաղորդումներ էին տպագրում դրանց մասին: Բոլշևիկները ժողովներում, միտինգներում, մամուլի էջերում աշխատավոր մասսանե-



րին կոչ էին անում ձայն տալ բանվորների և գինվորների շահերի իսկական պաշտպան բոլշևիկյան կուսակցության թեկնածուների օգտին: Նրանք մասսաներին պարզաբանում էին, որ միայն բոլշևիկյան կուսակցությունն է վճռական միջոցներ ձեռնարկում տնտեսական քայքայման դեմ, բանվորական վերահսկողություն սահմանում արտադրության և մթերքների բաշխման վրա:

Հեղափոխական ուժերի հաջողությունից վախենալով՝ Անդրկովկասյան հատուկ կոմիտեն շտապ կարգով Թիֆլիսից, Ալեքսանդրապոլից և այլ վայրերից հանել տվեց կայազորի բոլշևիկյան տրամադրություններով համակված զորամասերը, ռազմաճակատից փոխադրեց նորերը, որով նկատելիորեն նվազեց ընտրություններին բոլշևիկների հաջողության հավանականությունը: Ընտրություններից մեկ օր առաջ՝ հուլիսի 29-ին, Թիֆլիսի ընտրական կոմիտե են ներկայանում ռազմաճակատից Թիֆլիս ժամանած զորամասերի ներկայացուցիչները և կոմիտեից պահանջում իրենց մտցնել քաղաքային դումաների ընտրական ցուցակներում, սակայն վերջինս, պատճառաբանելով ցուցակների արդեն ավարտված լինելը, մերժում է: Իսկ երբ հիշյալ ներկայացուցչությունը կրկին դիմում է ընտրական կոմիտե և ի վերջո առանձին քվեատուփ դնելու իրավունք ստանում, այս անգամ էլ Անդրկովկասյան հատուկ կոմիտեն դա համարում է օրենքից ուղղակի շեղում և չի վավերացնում[1]:

Թիֆլիսի բոլշևիկյան քաղաքային կոմիտեի նախընտրական կոչերից մեկում շեշտվում էր զանազան կուսակցությունների մունիցիպալ ծրագրերում առաջ քաշված ռեֆորմները կյանքում իրականացնելու անհնարինությունը, «քանի դեռ շարունակվում է պատերազմը, որ առաջ է բերում պարենային ճգնաժամ, քանի դեռ իշխանության գլուխ կանգնած կառավարությունը պաշտպանում է կապիտալիստների և տնատերերի շահերը, քանի դեռ հեղափոխության թշնամիները հնարավորություն ունեն միլիցիայի անվան տակ վերականգնել հին, բնակչությունից կտրված ոստիկանությունը» (Основные положения муниципальной платформы РСДРП(б), Тифлис, 1917, стр. 5):

Կոչում մերկացվում էին կադետների և նրանց նման նորաթուխ «հանրապետականների», մենշևիկ-պաշտպանողականների, էսէռների քաղաքականությունը, որոնք, ընդհանուր ռեֆորմներ առաջադրելով հանդերձ, շարունակում էին օժանդակել ու աջակցել պատերազմին, դրանով իսկ խաբում էին ժողովրդին, նրան կերակրում կեղծ ու սին խոստումներով:

«Բանվորի կռիվը» հուլիսի 30-ին, ընտրության օրը բանվորներին զգուշացնում էր բուրժուական կուսակցություններից, միևնույն ժամանակ նրանց ուշադրությունը սևեռում իրենց կեղծ բարեկամների՝ էսէռների, մենշևիկների, դաշնակցականների և հնչակյանների պատճառած վնասների վրա, նշելով, թե նրանք վախենում են հեղափոխությունից և ձգտում բանվոր դասակարգին հաշտեցնել բուրժուազիայի հետ ու կարմիր դրոշակը փոխել «դասակարգերի համերաշխության» դրոշակով: Թերթը կոչ էր անում ձայն տալ բոլշևիկյան կուսակցության թեկնածուների օգտին, որը մրցող կուսակցությունների և խմբերի մեջ միակն է, որը համարձակ կռիվ է մղում բացահայտ և դիմակավորված թշնամիների դեմ:

Անդրկովկասի բոլշևիկները, ընտրական կամպանիա մղելիս, հանդիպեցին մի շարք դժվարությունների, որոնցից առավել աչքի զարնողը դրամական միջոցների սուր պակասն էր: «Ընկեր բանվորներ և զինվորներ» խորագրով կոչում նշվում էր, որ պրոլետարիատի կուսակցությունը, չքավոր գյուղացիության կուսակցությունը միջոցներ չունի նախընտրական կամպանիան նույնպես լայնորեն կազմակերպելու, ինչպես դա անում են իրենց հակառակորդները: «Բանականության ուժը վեր է ռեկլամի ուժից: Ոչ թե պլակատներով, այլ համոզմունքով պետք է ղեկավարվի ամեն մի բանվոր, զինվոր այս կամ այն ցուցակին ձայն տալիս»,— գրված էր կոչում («Кавказский рабочий», 1917, հուլիսի 27, 29): Դրամի պակասի պատճառով Գանձակի բոլշևիկները հրապարակեցին միայն մեկ նախընտրական կոչ: «Պատրաստ ունեինք երկու կարևոր կոչեր, բայց չկարողացանք 150 ռուբլի գտնել հրատարակելու համար»,— գրված է բոլշևիկյան «Բանվորի կռիվը» թերթին ուղարկված թղթակցության մեջ («Բանվորի կռիվը», 1917, սեպտեմբերի 10): Մինչդեռ համաձայնողական և ազգայնական կուսակցությունները Անդրկովկասյան քաղաքները ողողել էին նախընտրական կոչերով ու թռուցիկներով: Դրա հետ մեկտեղ մենշևիկներն ու էսէռները բանվորների և զինվորների սովետում ունեին իշխող դիրք, որը նույնպես օգտագործեցին նախընտրական նպատակների համար: Այնուամենայնիվ, չնայած միջոցների անբավարարությանը, մշտապես մղվող թշնամական ագիտացիային, բոլշևիկները չթուլացրին իրենց ջանքերը ընտրական կամպանիան նախապատրաստելու, լայն ագիտացիա մղելու համար: Բոլշևիկ-

[1] *Վրացական ՍՍՀ ՀՀԿՊԱ, ֆ. 2080, ց. 1, գ. 502, թ. 3 և հակ.:*

ագիտատորները, բանվորների ու զինվորների առջև հանդես գալով, բացահայտում էին տարբեր կուսակցությունների մունիցիպալ պլատֆորմների ռեակցիոն բնույթն ու իմաստը:

Ալեքսանդրապոլում բոլշևիկները մունիցիպալ կամպանիան մղում էին լայն պլանով, առաջադրելով ոչ միայն սոսկ մունիցիպալ պահանջներ, այլև հեղափոխության արմատական հարցեր: Դեպքերի անմիջական մասնակից, 1917 թ. կուսակցության անդամ Վ. Տարախչյանն իր անտիպ հուշերում վկայում է, որ, հրատարակելով հայերեն և ռուսերեն թերթեր (խոսքը «Նոր կյանք» և «Պրավդա ժիզնի» թերթերի մասին է), բրոշյուրներ ու թռուցիկներ, կազմակերպելով միտինգներ և ժողովներ, բոլշևիկները պարզաբանում էին կուսակցության լոզունգները՝ իշխանության, հաշտության, հողի, բանվորական վերահսկողության և այլ հեղափոխական խնդիրների մասին[1]:

Դումայի ընտրությունների կապակցությամբ ՌՍԴԲԿ միացյալ կազմակերպության Երևանի կոմիտեի հրապարակած դիմումում կոչ էր արվում հանուն հեղափոխության վերջնական նպատակի ձայն տալ սոցիալիստական բլոկի թեկնածուների օգտին: Շեշտվում է, որ «միայն և միայն նրանք կարող են պաշտպանել դեմոկրատիայի շահերը և բոլոր ազգությունների միջև եղբայրություն և համերաշխություն հաստատելու համար ստեղծել համապատասխան պայմաններ» («Известия Эриванского губернского комиссариата», 1917, հունիսի 14): Բոլշևիկները Երևանում բացատրական աշխատանք տարան առանձին կուսակցությունների պլատֆորմների մեջ խաբուսիկ նպատակով առաջ քաշված փքուն խնդիրների իրականացման անհնարին լինելու, ռեալ պայմանների բացակայության մասին, քանի դեռ իշխանությունը գտնվում է բուրժուազիայի ձեռքին, քանի դեռ շարունակվում է եղբայրասպան պատերազմը («Страж свободы», 1917, սեպտեմբերի 7, 10):

Մենշևիկները, էսէռները, դաշնակցականները և այլ կուսակցություններ ամեն տեսակի դժվարություններ էին հարուցում բոլշևիկների առջև, խոչընդոտում կոչերի և պլակատների տարածումը, կեղծում դրանք, հաճախ իսպառ ոչնչացնում: Դաշնակցություն կուսակցությունը, Նոր Բայազետում իրեն համարելով դրության տերն ու տիրականը, ամեն միջոց գործադրեց քաղաքային ինքնավարության ընտրություններին բոլշևիկներին վարկաբեկելու, նույնիսկ ընտրական կամպանիային մասնակցելու հնարավորությունից նրանց զրկելու համար («Պայքար», 1917, օգոստոսի 4):

Մասսաների նվաճման, նրանց հեղափոխական մոբիլիզացման համար ընտրական կամպանիայում Բաքվի բոլշևիկները մեծ նշանակություն էին տալիս նավթահանքային շրջանների միացմանը քաղաքին: Այդ հարցը նոր չէր և դրա շուրջը ծավալվել էր քաղաքական սուր պայքար: Բուրժուազիան համառորեն դիմադրում էր, լավ հասկանալով, որ ընտրական լայն սկզբունքը կթույլացներ իր դիրքերը դումայում և ժողովրդական լայն զանգվածներին հնարավորություն կտար ինքնավարությունն իրենց ձեռքը վերցնելու: Տարիներ շարունակ ինքնավարության մարմինները ծառայեցնելով իրենց նեղ դասակարգային շահերին՝ դումայի կապիտալիստ, տնատեր իրավասուներն անուշադրության էին մատնել ծայրամասերը, ուր տիրում էին խավարն ու տգիտությունը: Նրանք քաղաքի բյուջեի պակասը լրացնում էին ոչ թե հարուստների, այլ աշխատավորների հաշվին. բարձրացնում էին փոխադրամիջոցների, ջրի գինը, փողոցները թողնում անբարեկարգ վիճակում:

Բաքվի հին ցենզային դուման մինչև վերջ պայքարեց ծայրամասերը քաղաքին միացնելու բանվոր դասակարգի օրինական և արդարացի պահանջի դեմ:

Հունիսից մինչև օգոստոս, տարբեր ժամանակներում, նավթահանքային շրջանները քաղաքին միացնելու օգտին արտահայտվեցին բանվորական մի շարք ժողովներ ու միտինգներ: Այդ հարցի առթիվ բազմիցս ելույթներ ունեցավ Բաքվի պրոլետարիատի առաջնորդ Ստ. Շահումյանը, համակողմանի՝ տնտեսական, քաղաքական և կուլտուրական առումով հիմնավորելով նավթահանքային շրջանների միացման անհրաժեշտությունը: Քաղաքի և նավթահանքերի սերտ կապը արտահայտվում էր բոլոր ճյուղերում. ձեռնարկությունների գլխավոր գրասենյակները, արդյունաբերական միություններն ու կենտրոնական կազմակերպությունները, ինչպես նաև կուլտուրական հիմնարկությունների բաժանմունքները գտնվում էին քաղաքում: Կուսակցությունները նույնպես քաղաքում և նավթահանքերում կազմակերպորեն միավորված էին միևնույն կազմակերպությունների մեջ: Քննադատելով կադետական և մուսուլմանական ֆրակցիաների առաջարկած նախագծերը (նավթահանքային շրջանների համար կազմել առանձին ինքնավարություն և ստեղծել գավառային զեմստվո, դրան միացնելով նավթահանքային շրջաններ)՝ Շահումյանը մերկացրեց նավթահանքային շրջանների միացման դեմ մղվող պայքարի հակաժողովրդական էությունը. «...հին ցենզային դումայում,— նշում է Ստ. Շահումյանը,— պաշտպանում էին խմբային բուրժուական-ազգային շահերը, և հաճախ բախումներ էին ծագում տարբեր ազգությունների ներկայացուցիչների միջև: Դրանից տուժում էր դեմոկրատիան: Դուման ազգային պայքարի օջախ էր: Նոր դումայում՝ Բաքվի և նավթահանքերի դեմոկրատիայի մասնակցությամբ այդ ամենը չի լինի, և կփոխվի Բաքվի հասարակական կյանքի ընդհանուր բնույթը: Պայքարը կընդունի ավելի բարձր, դասակարգային ձև: Հեղափոխության պահանջն է՝ ունենալ դեմոկրատական դումա: Դրան կարելի է հասնել արդյունագործական դեմոկրատիայի մասնակցությամբ միայն: Նավթահանքերի շրջանի անջատումը քաղաքից բռնի կենդանահերձում կլիներ» (Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 3, էջ 234)

Ծայրամասերը քաղաքին միացնելու մասին որոշումներ ընդունեցին կոմիտեն, քաղաքային և շրջանային կազմակերպությունների ընդհանուր ժողովները, ինչպես նաև համաքաղաքային և միջշրջանային կոնֆերանսները: Հուլիսի 2-ին ՌՍԴԲ(բ)Կ Բաքվի միջշրջանային կոնֆերանսը որոշեց՝ ամեն ջանք թափել և ամեն միջոց ձեռք առնել ծայրամասերը քաղաքին միացնելու համար և կոչ արեց բանվորներին մասնակցել նախապատրաստվող ցույցերին՝ հեղափոխական ճանապարհով հանքային շրջանները քաղաքին միացնելու համար («Սոցիալ-դեմոկրատ», 1917, հուլիսի 9: «Кавказский рабочий», 1917, հուլիսի 5): Իսկ հուլիսի 11-ին բոլշևիկների և «Հումմեթ» սոցիալ-դեմոկրատական բոլշևիկյան կազմակերպության ընդհանուր ժողովն ընդունեց բանաձև, որով Բաքվի բանվորների ու զինվորների դեպուտատների սովետին առաջարկվում էր մոտ օրերս բոլոր շրջաններում կազմակերպել մանիֆեստացիաներ՝ պահանջելով ծայրամասերի միացումը քաղաքին («Սոցիալ-դեմոկրատ», 1917, հուլիսի 16):

Բաքվի և նավթահանքերի շրջանների բանվորները մինչև վերջ անհողդողդ կանգնեցին իրենց արդարացի պահանջը իրականացնելու դիրքերում:

«Բակինսկի ռաբոչի», «Սոցիալ-դեմոկրատ» բոլշևիկյան թերթերը հունիսից սկսած կոչ էին անում՝ պահանջել նավթահանքային շրջանների անհապաղ միացումը քաղաքին և նախապատրաստվել ընտրություններին: Մինչդեռ «Բաքու» և «Կասպի» բուրժուական թերթերը թեժ պայքար էին մղում միացման դեմ:

1 ՄԼԻ Հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 4009, ց. 2, գ. 10, թ. 3։



Բաքվի բոլշևիկները խոշոր աշխատանք ծավալեցին նաև աշխատավոր կանանց շրջանում, որոնք առաջին անգամ տղամարդկանց հետ համահավասար ընտրություններին մասնակցելու իրավունք ստացան: Բոլշևիկները կանանց ուշադրությունը սևեռեցին այնպիսի ցավոտ հարցերի վրա, ինչպիսիք են՝ պարենային, կրթության, բժշկական օգնության, բնակարանային, աշխատանքային բորսաների և այլն[1]:

Բաքվի բոլշևիկների պրոպագանդիստական լայն աշխատանքի մասին է վկայում դեպքերի մասնակից Ն. Կոլեսնիկովան, որն իր հուշերում գրում է. «Հիշում եմ մի մեծ նախընտրական ժողով, տեխնիկական ուսումնարանի շենքում: Բաքվի կոմիտեի հանձնարարությամբ ելույթ ունեցան Ա. Ջափարիձեն, Յա. Զևինը և ես: Արտաքուստ ժողովը կարծես թե վատ չանցավ, մեզ լսում էին, նույնիսկ ծափահարում, մեր պլատֆորմի դեմ հանդես չեկան, շատ թեկնածուների վերաբերյալ, որոնք հիշվում էին ցուցակում, ժողովականները հայտնեցին, որ գիտեն և բնութագրել պետք չէ նրանց: Սակայն մի ամբողջ շարք ռեպլիկաներից և հարցերից պարզ էր, որ ժողովին ներկա էին ոչ քիչ թվով հակառակորդներ, բայց բացահայտ ելույթ ունենալ չեն ուզում» (Колесникова Н. Н., Из истории борьбы за Советскую власть в Баку. Воспоминания, Баку, 1958, стр. 32—33):

Բաքվի քաղաքային դումայի ընտրությունները, որոնք հիմնականում անցան նավթահանքային շրջանները քաղաքին միացնելու պայքարի նշանաբանով, զգալի հաջողություններ բերեցին բոլշևիկներին: Դրանք նպաստեցին բանվոր դասակարգի քաղաքական ակտիվության բարձրացմանը: Առաջադրելով ծայրամասերը քաղաքին միացնելու հարցը՝ բոլշևիկները միաժամանակ հետևողական պայքար ծավալեցին զինվորներին, նավաստիներին, երկաթուղային ծառայողներին ընտրական ցուցակների մեջ մտցնելու, նրանց քաղաքականապես լուսավորելու, բնակչության շրջանում ՌՍԴԲ(բ)Կ մունիցիպալ քաղաքականությունը պարզաբանելու համար: Իրենց ուշադրությունը հիմնականում կենտրոնացնելով հեղափոխության առաջ քաշած՝ իշխանության, հաշտության և հողի հարցերի վրա, նրանք նշեցին իշխանությունը բուրժուազիայի ձեռքում գտնվելու և շարունակվող իմպերիալիստական պատերազմի պայմաններում տնտեսական վերակառուցման անհնարինու-

1 ՄԼԻ ադրբեջանական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 276, ց. 3, գ. 56, թ. 46—53։

թյունը: Բոլշևիկները ագիտացիա և պրոպագանդա մղեցին մամուլի, թռուցիկների, պլակատների միջոցով, լայնորեն օգտագործելով միտինգները, ժողովները, հրապարակային դասախոսությունները: Կուսակցական կազմակերպությունները ստեղծեցին ագիտացիոն հատուկ խմբեր, կազմեցին մունիցիպալ հանձնաժողովներ, պատրաստեցին ընտրողների և բոլշևիկ-իրավասուների թեկնածուների ցուցակներ: Բոլշևիկները մունիցիպալ կամպանիայում քաղաքական պայքարի մեծ փորձ կուտակեցին՝ կատարելագործելով պայքարի ձևերն ու եղանակները:

Ընտրական կամպանիան նպաստեց կուսակցության լոզունգների շուրջը աշխատավոր մասսաների համախմբմանը, նրանց քաղաքական դաստիարակությանը, ինչպես նաև համաձայնողական կուսակցությունների մեկուսացմանը:

ԳՈՀԱՐ ՄԱՆՈՒԿՅԱՆ

## Ի ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ

*1982 թվականի հունվարի 1-ից մեր ամսագրի մեկ համարի գինը սահմանվում է 25 կոպեկ: Ամսագրի մեկ տարվա բաժանորդագրության արժեքը կազմելու է 3 ռուբլի: Այս փոփոխությունը կապված է տպագրական թղթի արժեքի, պոլիգրաֆիական կատարման և մամուլը բաժանորդներին առաքելու ծախսերի ավելացման հետ:*




Վերստուգող սրբագրիչ՝ Մ. Բ. ՅԱՅԼՈՅԱՆ
Թողարկիչ՝ Մ. Պ. ԲՈՅՆԻԿՅԱՆ

Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 30.7.81—24.8.81: Ստորագրված է տպագրության՝ 31.8.81: ՎՖ 10342: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.832: Պատվեր 1852:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.


# Ինչ կարդալ

К. Маркс и Ф. Энгельс—**Сочинения.** Изд. второе. Т. 50. М., Политиздат, 1981.

*Սույն հատորով ավարտվում է այդ հրատարակությունը, որը գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատությունների մինչև այժմ կատարված բոլոր հրապարակումներից ամենալիակատարն է:*

*Հատորը բովանդակում է կապիտալի շրջանառության և վերարտադրության տեսության հարցերի վերաբերյալ մի շարք նոր տեսական դրույթներ, որոնք անանց նշանակություն ունեն մարքս-լենինյան տնտեսագիտական ուսմունքի համար: Զետեղված են Մարքսի և Էնգելսի նաև այլ աշխատություններ, այդ թվում՝ նրանց ավելի քան 100 նամակներ:*

*Վ. Ի. Լենին—* Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 28; «Հայաստան» հրատ., 1981:*

*Հատորում տեղ են գտել իմպերիալիզմի վերաբերյալ Լենինի 20 տետրերը:*

**Документы и материалы кануна второй мировой войны. 1937—1939.** Т. I. М., Политиздат, 1981.

*Հրատարակության մեջ զետեղված են 200-ից ավելի օտարերկրյա փաստաթղթեր, այդ թվում՝ Գերմանիայի արտաքին գործերի մինիստրության արխիվի նյութեր, որոնք սովետական զորքերը հայտնաբերել էին Բեռլին մտնելուց հետո: Առաջին հատորը բովանդակում է 1937 թվականի նոյեմբերից մինչև 1938 թվականի դեկտեմբերն ընդգրկող ժամանակաշրջանի նյութերը:*

*Ա. Ռուսով—* Դատ դատի դեմ: *Պատմվածք Բոգդան Կնունյանցի մասին: «Հայաստան» հրատ., 1981:*

*Գիրքը նվիրված է հեղափոխական, քիմիկոս, հրապարակախոս Բոգդան Կնունյանցին (1878—1911):*

*Գրքում հեղինակը գործողությունը անցյալ դարի իննսունական թվականների քիմիական լաբորատորիայից փոխադրում է ժամանակակից լաբորատորիա, Լեռնային Ղարաբաղից՝ Բաքու, Թիֆլիս, Մոսկվա, Պետերբուրգ, Լոնդոն, Ժնև, մենավոր բանտախցից՝ այն շոգենավի նավամբարը, որով ցմահ աքսորից փախչում է քսանութ տարեկան հերոսը, որը դատվել էր բանվորական դեպուտատների Պետերբուրգի առաջին սովետի գործով:*

*Գ. Բրուտյան—* Իմաստասիրություն Երկխոսություններում: *Գիրք 2: «Հայաստան» հրատ., 1981:*

*Գրքում հեղինակը արծարծում է փիլիսոփայության և բնագիտության ժամանակակից գիտական հրատապ խնդիրներ, նրանց շարադրման և պարզաբանման ընթացքում լայնորեն օգտվելով գեղարվեստական միջոցներից:*

*Գիրքը նախատեսված է փիլիսոփաների, ուսանողների, գրականագետների, լեզվաբանների համար:*

Н. Соловьев — **Семья в социалистическом обществе.** М., Политиздат, 1981.

*Գրքում փիլիսոփայական գիտությունների թեկնածու Ն. Յա. Սոլովյովը անդրադառնում է սովետական ընտանիքի ձևավորման, զարգացած սոցիալիզմի պայմաններում նրա սոցիալական դերի, անձնավորության ձևավորման վրա ընտանիքի ունեցած ազդեցության և այլ պրոբլեմներին:*

*Հեղինակը լուսաբանում է այն նվաճումները, որ ձեռք է բերել սովետական ընտանիքը զարգացման պրոցեսում, ինչպես նաև անդրադառնում է եղած դժվարություններին, նշում դրանց հաղթահարման ուղիները:*

*Գրքում օգտագործված են սոցիոլոգիական հետազոտության տվյալներ, վիճակագրական նյութեր:*

Գինը՝ 20 կ.
Индекс 77783
ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՍԻՐՏԸ՝ ԿԻՆԵՍԿՈՊԻ ՎՐԱ

ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրության մասնագետները ստեղծել են կարևոր, բայց հեշտությամբ վնասվող ներքին օրգանները՝ ուղեղը, սիրտը, աչքը զննող սարքերի սերիա, օգտագործելով տարասեռ հյուսվածքների սահմաններից ուլտրաձայնի անդրադարձվող հատկությունը: Այդ սարքերը թույլ են տալիս բժշկին, առանց հիվանդին նախապատրաստելու, էկրանի կինեսկոպի վրա մանրամասն զննելու հետազոտվող ներքին օրգանը:

«Էկրան» կարդիոսկոպը այդ զննողական սարքերից մեկն է: Պլաստմասսայից պատրաստված բարձիկը դրվում է հիվանդի կրծքին, և էլեկտրաճառագայթային խողովակի էկրանի վրա հայտնվում է աշխատող սիրտը: Բժիշկը տեսնում է, թե ինչպես է բանում այն, ինչպիսին են նրա մասերի երկրաչափական բնութագրերը, ինչպիսին է ներսրտային ստրուկտուրաների շարժման հետագիծը: Ցանկության դեպքում դինամիկ պատկերը կարելի է արտացոլել տեսամագնիտոֆոնի վրա:

## «ԿԱԲԱՐԸ» ԿԲԱՐՁՐԱՆԱ ԼԵՌՆԵՐ

Պելգրժիմով քաղաքի «Ագրոշին» գործարանի ինժեներները Պրագայի գյուղատնտեսության մեքենայացման գիտահետազոտական ինստիտուտի մասնագետների հետ մշակել են «Կաբար—132» գյուղատնտեսական ինքնագնաց նոր մեքենա, որը կարող է աշխատել լեռնալանջերում, նույնիսկ 22 աստիճան թեքության մարգագետիններում:

«Կաբար—132»-ն ավտոմատ կերպով թեքվում է տեղանքի թեքությանը համապատասխան, ընդ որում հետևի և առջևի սռնակները պատճենում են ռելիեֆի աննշան փոփոխությունն անգամ, իսկ վարորդի խցիկը բոլոր դեպքերում մնում է խիստ հորիզոնական դիրքում: Արտասահմանյան ֆիրմաների համանման մեքենաների խցիկը, որպես կանոն, թեքվում է ամբողջ մեքենայի հետ, և վարորդը ստիպված ժամեր շարունակ նստում է թեքված վիճակում, որը շատ հոգնեցուցիչ է:

«Կաբարի» համար պատրաստված են փոփոխվող կախովի գործիքներ՝ հնձիչ, խոտշրջիչ և բարդոցիչ, թփերը արմատահան անող գործիքներ: Լեհ մասնագետները «Կաբարի» համար այժմ պատրաստում են քիմիական պարարտանյութերը ցրող սարք:

«Կաբարի» խցիկի ստանդարտ սարքերից են կոնդիցիոներն ու ռադիոհաղորդիչը:

## ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆ, ՆՎԱԳԻՐ ԲԱՐՁՐ

Ճապոնական «Տոշիբա» ֆիրմայի ինժեներները ստեղծել են մագնիտաֆոններ և ստերեոձայնային նվագարկիչներ, որոնք հոսանքին միանում են տիրոջ հրամանով: Նման տեխնիկական սարքերը կարող են կատարել մինչև 20 բանավոր հրաման՝ «բարձր», «ցածր», «վերափաթաթել հակառակը», «վերացնել բարձր հաճախականությունները» և այլն: Սարքերը լսում են միայն իրենց տիրոջը, քանզի նրանց ձայնային ակուստիկ սիստեմը լարվում է ձայնի անհատական հատկանիշների վրա: Անորոշ հրամանի հաղորդման դեպքում սարքի ցուցատախտակին հեղուկ բյուրեղներով պատկերվում է հարցական նշան: Ի դեպ, կառավարման նոր համակարգը հետաքրքրել է արդյունաբերական ռոբոտներ թողարկողներին:

## ԱՐԱԳ ԵՎ ՀՈՒՍԱԼԻ

Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի գիտնականները ստեղծել են ВК2П45 երկպրոցեսորային հաշվիչ կոմպլեքս: Նրա հիմքում դրված են երկու սերիական EC1045 ԷՀՄ-երը, մշակված են ծրագրային և տեխնիկական միջոցներ, որոնք ապահովում են երկու պրոցեսորների աշխատանքը՝ մինչև 8 միլիոն բիտ ծավալով ընդհանուր օպերատիվ հիշողություն: Կոմպլեքսի արտադրողականությունը վայրկյանում մոտ 1.700 հազար օպերացիա է գիտական խնդիրներ լուծելիս և ավելի քան 1 միլիոն՝ պլանային-տեխնիկականի դեպքում: Նոր կոմպլեքսը նախատեսված է մասսայական արտադրության համար ժողովրդական տնտեսության այն ճյուղերում, որտեղ կա արագագործ և գերհուսալի հաշվիչ մեքենաների անհրաժեշտություն: